# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

6

ՀՈՒՆԻՍ, 1981
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.
**Выходит один раз в месяц на армянском языке**

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
**«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении**


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


*ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԸ Հերոս քաղաք Կիևում Հուշահամալիրի հանդիսավոր բացման առթիվ 1981 թ. մայիսի 9-ին . . . . 3*

*ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԸ Վրացական ՍՍՀ-ի և Վրաստանի կոմկուսի 60-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում 1981 թ. մայիսի 22-ին 8*

ԿԵՆՍԱԳՈՐԾՈՒՄ ԵՆՔ ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ

*Կ. Լ. ԴԱԼԼԱՔՅԱՆ— Կյանքին համաքայլ . . . . . . . . 15*

*Ա. Մ. ԷԿՄԱԼՅԱՆ— Գիտությունը և սոցիալական պրոգրեսը . . . 29*

*Գ. Հ. ԱՅՎԱԶՅԱՆ— Պետական կարգապահության դերը ժողովրդական տնտեսության մեջ . . . . . . . . . . . 36*

*Ա. Պ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ— Աշխատանքի բնույթի փոփոխումը սոցիալիզմի պայմաններում . . . . . . . . . . . 43*

*Գ. Ա. ՄԵԼՔՈՒՄՅԱՆ— Ճանապարհաշինություն. հաջողություններ և խնդիրներ . . . . . . . . . . . 51*

ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱՇԽԱՏՈՂԻ ԱՄԲԻՈՆ

*ՀՐԱՆՈՒՇ ՂԵՎՈՆԴՅԱՆ— Նոր-Նախիջևանի հայկական գաղութի մասնակցությունը Ռուսաստանի հեղափոխական-նարոդնիկական շարժմանը 56*

*Է. Մ. ԱՌԱՔԵԼՅԱՆ— Էջեր ազգային հարցի լուծման պատմությունից . . 64*

*Վ. Ա. ԽԱԺԱԿՅԱՆ— Ուսանող երիտասարդության ինտերնացիոնալ դաստիարակությունը . . . . . . . . . . 69*

ԱՌԱՋԱՎՈՐ ԲՆԱԳԾԵՐՈՒՄ

*ԱՆՈՒՇԱՎԱՆ ԴԵՎԿԱՆՑ— Բուժման գումարելիները . . . . . 74*

*ՏԱՆՅԱ ԹԱՆԴԻԼՅԱՆ— Կապույտ հորիզոնների ծաղիկը . . . . 84*

*Գ. Մ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ— Սպորտային փառքի աստիճաններով . . . 90*



ԵՐԵՎԱՆ ★ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ


РЕЧЬ ТОВАРИЩА Л. И. БРЕЖНЕВА на торжественном открытии мемориального комплекса в городе-герое Киеве 9 мая 1981 года . . . . . . . . 3

РЕЧЬ ТОВАРИЩА Л. И. БРЕЖНЕВА на торжественном заседании, посвященном 60-летию Грузинской ССР и Компартии Грузии 22 мая 1981 года . . . . . . . 8

**ПРЕТВОРЯЕМ В ЖИЗНЬ РЕШЕНИЯ XXVI СЪЕЗДА КПСС**

К. Л. ДАЛЛАКЯН — В ногу с жизнью . . . . . 15

А. М. ЭКМАЛЯН — Наука и социальный прогресс . . 29

Г. А. АЙВАЗЯН — Роль государственной дисциплины в народном хозяйстве . . . . . . . . 36

А. П. АЙРАПЕТЯН — Изменение характера труда при социализме . . . . . . . . . . . 43

Г. А. МЕЛКУМЯН — Дорожное строительство: успехи и задачи 51

**ТРИБУНА МОЛОДОГО НАУЧНОГО РАБОТНИКА**

ГРАНУШ ГЕВОНДЯН — Участие Нор-Нахичеванской армянской колонии в революционно-народническом движении России . . . . . . . . 56

Э. М. АРАКЕЛЯН — Страницы из истории решения национального вопроса . . . . . . . . 64

В. А. ХАЖАКЯН — Интернациональное воспитание студенческой молодежи . . . . . . . . 69

**НА ПЕРЕДОВЫХ РУБЕЖАХ**

АНУШАВАН ДЕВКАНЦ — Слагаемые лечения . . . 74

ТАНЯ ТАНДИЛЯН — Цветок голубых горизонтов . . 84

Г. М. КАРАПЕТЯН — Ступени спортивной славы . . 90






# ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԸ

## ՀԵՐՈՍ ՔԱՂԱՔ ԿԻԵՎՈՒՄ ՀՈՒՇԱՀԱՄԱԼԻՐԻ ՀԱՆԴԻՍԱՎՈՐ ԲԱՑՄԱՆ ԱՌԹԻՎ 1981 Թ. ՄԱՅԻՍԻ 9-ԻՆ

Թանկագին կիևցինե՛ր: Մեր երկրի պանծալի հերոս քաղաքների հարգելի պատվիրակնե՛ր:

Թանկագին ընկերնե՛ր:

Թույլ տվեք նախ և առաջ ձեզ հաղորդել ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, Գերագույն սովետի նախագահության, սովետական կառավարության սրտագին շնորհավորանքները այսօրվա իսկապես համաժողովրդական տոնի՝ Հաղթանակի օրվա առթիվ: *(Ծափահարություններ)*:

Մեր վիթխարի երկրում չկա մի անկյուն, չկա սովետական այնպիսի ընտանիք, որտեղ այդ տոնը չնշեն հոգեկան խորին հուզմունքով, սրբազան վշտով և հայրենասիրական մեծ հպարտության զգացումներով: Այո՛, վառոդաբույր այդ տոնն ամենքիս համար, ինչպես երգում է ասվում, ուրախություն է արցունքն աչքներիս:

Եվ ճիշտ է, որ հենց այսպիսի օր է բացվում այս հոյակապ հուշահամալիրը՝ ի հիշատակ սովետական ժողովրդի Հայրենական մեծ պատերազմի: Ինձ, մի մարդու, որը պատերազմի ճամփաներով անցել է սկզբից մինչև վերջ, Սովետական Ուկրաինայի և նրա փառապանծ մայրաքաղաքի ազատագրության մարտերի մասնակցիս, այսօրվա հանդիսավոր արարողությունը հուզում է մինչև հոգուս խորքը:

Քառասուն տարի առաջ սկսվեց Հայրենական մեծ պատերազմը: Նրանք, ովքեր տարիքով մեծ են, երևի, լավ են հիշում 1941 թվականի հունիսի 22-ի ամառային պարզ օրը: Այն օրը, երբ իմպերիալիզմի ամենամութ ուժերը՝ արյունարբու ֆաշիզմի ուժերը, մեր երկրի վրա տեղացին պատերազմի փոթորկալի կրակը: Նրանք չէին թաքցնում իրենց նպատակները: Նրանք ուզում էին ոչնչացնել սոցիալիզմը: Նրանք ուզում էին աշխարհագրական քարտեզից ջնջել բուն այն երկիրը, որի ժողովուրդը համարձակվել էր թոթափել կապիտալի լուծը: Նրանք ուզում էին, որ ամբողջ մարդկության վրա երկար ժամանակներով իջներ մոլագարության, սադիզմի, լկտի սոլդաֆոնական ագիտության մռայլ խավարը:

Իր ուխտադրուժ ագրեսիային ֆաշիզմը պատրաստվում էր երկար ժամանակ: Հենվելով համաշխարհային ռեակցիայի աջակցության վրա՝ նա իր բռունցքում հսկայական ուժ կենտրոնացրեց: Իր դաշնակիցների հետ միասին նա տիրեց գրեթե ամբողջ Եվրոպային և Ասիայի զգալի մասին: Եվ Արևմուտքում այն ժամանակ շատերին թվում էր, թե ոչինչ չի կարող դիմագրավել նրա ճնշմանը:

Բայց սովետական ժողովուրդը վճռականապես պատնեշեց ֆաշիստական ժանտախտի ճանապարհը: Համախմբվելով Լենինի կուսակցության շուրջը՝ նա պաշտպանեց իր երկիրը, իր ազատությունը, իր կենսական իդեալները: Սովետական մարդկանց տոկունությունն ու հերոսությունը բեկեցին իրադարձությունների ընթացքը:

Ֆաշիզմի դեմ մղված պայքարում մենք միայնակ չէինք: Մենք հիշում ենք մեր անվեհեր զինակիցներին՝ պարտիզաններին, դիմադրության հերոսներին հիտլերականների օկուպացրած շատ երկրներում: Մենք հիշում ենք հակահիտլերյան կոալիցիայի մեր դաշնակիցների զինվորներին: Բայց մենք չենք կարող մոռանալ նաև այն ակնհայտ փաստը, որ պատերազմում գլխավոր ծանրությունը սովետական մարդուն վիճակվեց:

Մայր հայրենիքը կորցրեց իր քսան միլիոն որդիներին ու դուստրերին: Նրանք կարող էին աշխատանքի հերոսներ դառնալ գործարաններում ու դաշտերում, դառնալ ինժեներներ կամ գիտնականներ, բանաստեղծներ կամ տիեզերագնացներ, մի խոսքով, մարդկանց մեծ երջանկության կերտողներ: Բայց բախտը այլ կերպ տնօրինեց: Նրանց վիճակվեց իրենց կյանքը տալ հանուն սովետական մարդկանց երջանկության: Եվ նրանք տվեցին այն: Տվեցին, որպեսզի իրենց ընկերները, իրենց երեխաներն ու թոռները կարողանան իրագործել մտադրվածը, որպեսզի մարդիկ խաղաղ ապրեն:

Կռվելով ռազմաճակատում, պատերազմի հերոսները գիտեին, զգում էին, որ իրենց թիկունքին կանգնած է ամբողջ երկիրը, ամբողջ ժողովուրդը: Ռազմաճակատն ու թիկունքը միասնական ամբողջ էին: Եվ նրանք, ովքեր մարտերի տարիներին կանգնած էին աշխատանքային հերթափոխի, արեցին հնարավորը, որպեսզի մոտեցնեն հաղթանակը:

Այս հոյակապ հուշարձանը, որը մենք այսօր բացում ենք, բոլոր նրանց, բոլոր հաղթողների հուշարձանն է:

Դա երախտապարտ հիշատակի տուրք է նրանց, ովքեր կռվեցին հանուն հայրենիքի, կյանքի ու երջանկության, հանուն Եվրոպայի և մյուս մայրցամաքների ժողովուրդներին ֆաշիստական ստրկությունից փրկելու:

Դա շնորհակալության և խորին հարգանքի տուրք է նրանց, ովքեր թիկունքում հաղթանակի զենքն էին կռում:

Անմահ է նրանց սխրանքը, ովքեր պայքարեցին և հաղթեցին ֆաշիզմին: Այդ սխրանքը դարեդար կապրի: *(Ծափահարություններ)*:

Պատերազմը վաղուց է վերջացել: Բայց մեր հիշողության մեջ հնչում են զոհված հարազատների, համագյուղացի բարեկամների ձայները: Մենք տեսնում ենք նրանց դեմքերը, մեր ձեռքերն զգում են նրանց ամուր ձեռքսեղմումները: Մենք հիշում ենք, թե ինչի մասին էին խոսում նրանք, ինչի մասին էինք մենք միասին երազում:

Մահն անզոր է նրանց հանդեպ, քանի որ նրանք ապրում են մեր սրտերում, մեր գործերում և սխրանքներում: Նրանք մեզ հետ են աշխատանքային և տոն օրերին: Նրանց պայծառ դիմագծերը, նրանց անկոտրում բնավորությունը, մեր հեղափոխական իդեալների հաղթանակի նկատմամբ նրանց անկեղծ հավատը մենք պարզորոշ տեսնում ենք պատերազմից հետո ծնված-մեծացած սերունդների մեջ:

Քառասունհինգի անմոռանալի հաղթական գարնանը մենք՝ ճակատայիններս, հավատում էինք, որ այդ համաշխարհային պատերազմը վերջինն է: Մենք հավատում էինք, որ այլևս երբեք մեր երեխաները չեն լսի պայթյունների դղրդյունը և օդային տագնապի ականջ ծակող ոռնոցը, չեն տեսնի, թե ինչպես է արյուն թափվում, ինչպես է դժոխային բոցերի մեջ կործանվում իրենց հայրական տունը: Այդ հավատը մեզ ուժ էր ներշնչում թշնամու դեմ վճռական գոտեմարտում: Այդպես էին մտածում միլիոնավոր ու միլիոնավոր մարդիկ մեր երկրում և բոլոր մայրցամաքներում: Նրանք, ո՛չ, չպետք է հուսախաբվեն: Սովետական երկիրը դրա համար արել և անում է այն ամենը, ինչ իր ուժերը ներում են:

Սովետական ժողովուրդը ցույց տվեց, որ ինքը կարողանում է լավ օգտագործել խաղաղության բարիքները: Իրականացան ճակատայինների, պատերազմական տարիների սարսափների ու զրկանքների միջով անցած բոլոր մարդկանց երազանքներն այն մասին, թե որքա՜ն հզոր ու հիասքանչ կլինի մեր երկիրը հաղթանակից հետո:

Դրա կենդանի վկայություններից մեկը ձեր գեղեցկատես Կիևն է, հերոս



քաղաքը, որը վերածնվեց փլատակներից և ավելի գեղեցիկ է, քան երբևիցե: Իսկ մեզանում դեռ քանի՜-քանի այդպիսի քաղաքներ կան, որոնք մոխիրներից հառնել են սովետական մարդկանց կամքով: Նոր կյանքի նշանները կարելի է տեսնել մեր երկրում ամենուրեք: Դրանցից են թե՛ Վոլգայի ու Դնեպրի, Ենիսեյի ու Անգարայի հիդրոկայանների կասկադները, ԿամԱԶ-ի մասնաշենքերը, թե՛ տայգայի՝ մինչև օրս անմատչելի թավուտ անտառները ճեղքած-անցած Բայկալ—Ամուր մայրուղին: Դա Տյումենի նավթն ու գազն է, մարդկանց խաղաղ կյանքին ծառայող տիեզերական հրթիռները և ատոմը, միլիոնավոր բարեկարգ բնակելի շենքերը, նոր դպրոցները, համալսարաններն ու թատրոնները, հարմարավետ մանկապարտեզները:

Մեր կոմունիստական շինարարության հետագա երթուղին հստակորեն նախանշված է ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումներում:

Բայց նախանշվածն իրագործելու համար մեզ խաղաղություն է պետք:

Իսկ միջազգային ասպարեզում կատարվող իրադարձություններն ավելի ու ավելի համառորեն են հիշեցնում, որ խաղաղությունը այնպիսի բարիք չէ, որ ինքնաբերաբար է տրվում: Ցավոք, դա այդպես չէ: Խաղաղությանն սպառնում են, և սպառնում են լրջորեն: Խաղաղության համար պետք է պայքարել:

Նրանց թվում, ովքեր այսօր որոշում են կապիտալիստական երկրների քաղաքականությունը, քիչ չկան ողջամիտ մարդիկ: Նրանք հասկանում են, որ սոցիալիստական աշխարհի հետ ունեցած հարաբերություններում ուժին ապավինելը, պատերազմին ապավինելը մեր ժամանակներում խելահեղություն է, որ կա միայն մի խելացի ճանապարհ՝ խաղաղ գոյակցությունը, փոխշահավետ համագործակցությունը:

Բայց բուրժուական աշխարհում կան նաև այնպիսի պետական գործիչներ, որոնք, դատելով ըստ ամենայնի, սովորել են մտածել միայն ուժի և թելադրանքի կատեգորիաներով: Սովետական Միության հանդեպ ռազմական գերազանցության հասնելը նրանք փաստորեն համարում են իրենց գլխավոր քաղաքական հավատամքը: Միջազգային պրոբլեմները բանակցությունների և փոխշահավետ համաձայնագրերի միջոցով լուծելը նրանց մոտ, ըստ երևույթին, գտնվում է մտավորապես տասներորդ տեղում, երբ նրանք այդ մասին առհասարակ լրջորեն մտածում են:

Նրանց թվում կան նաև այնպիսիները, որոնք ուղղակի հայտարարում են, թե խաղաղությունը, իբր, ամենակարևորը չէ, կան նաև խաղաղությունից ավելի կարևոր բաներ:

Լա՛վ խորհեցեք, ընկերնե՛ր: Կարելի՞ է արդյոք պատկերացնել ավելի հրեշավոր դիրքավորում, ավելի անպատկառ արհամարհանք ժողովուրդների, այդ թվում նաև սեփական ժողովրդի ճակատագրի նկատմամբ, հարյուր միլիոնավոր մարդկանց կյանքի նկատմամբ:

Չէ՞ որ փաստ է, որ պատերազմ վարելու միջոցները, մասսայական ոչնչացման միջոցներն այժմ այնպիսի հուժկու թափ են ստացել, որ դրանց գործադրումը հարցականի տակ կդներ շատ ժողովուրդների և ավելին՝ ժամանակակից ողջ քաղաքակրթության գոյությունը:

Ուստի նախահարված տալ պատերազմական արկածախնդրությունների սիրահարների քաղաքականությանը, հանդես գալ ընդհանուր խաղաղության ամրապնդման օգտին՝ դա այսօր նշանակում է ոտքի ելնել ի պաշտպանություն մարդկության բուն կյանքի, ի պաշտպանություն այն ամեն վեհի, վսեմի, անգնահատելիի, ինչ ստեղծել են մարդիկ հազարամյակների ընթացքում:

Ես արդեն չեմ ասում այն մասին, թե որքան անհեթեթ են ամեն տեսակ դիտավորությունները՝ սպառնալիքների, տնտեսական շրջափակման կամ ռազմական ագրեսիայի օգնությամբ խանգարելու սոցիալիստական երկրների զարգացմանը կամ ազգային ազատության ու սոցիալական արդարության համար ժողովուրդների պայքարին: Երկրորդ համաշխարհային պատերազմը և դրանից հետո անցած երեք ու կես տասնամյակները բավականաչափ պարզորոշ ցույց

տվեցին. նման մեթոդները ո՛չ միայն օգուտ չեն բերում իմպերիալիստներին, այլև տալիս են նրանց ակնկալած արդյունքներին հակառակ արդյունքներ: Բայց, ինչպես երևում է, պատմության դասերը օգտակար են լինում ոչ բոլորի համար:

Դե, իսկ ինչ վերաբերում է Սովետական Միությանը, ապա մեր քաղաքականության վերաբերյալ հերյուրանքներ, զրպարտություն ու սպառնալիքներ մենք առաջին անգամ չէ, որ լսում ենք: Մեզ չեն կարող վախեցնել: Մեր նյարդերն ամուր են, մենք լավ կոփվածք ենք ստացել: *(Երկարատև ծափահարություններ):* Մենք սպառազինությունների մրցավազքի կողմնակիցներ չենք, մենք դրա հակառակորդներն ենք: Մենք կարող էինք միանգամայն այլ կիրառություն գտնել այն միջոցների համար, որ կլանում է այդ մրցավազքը: Բայց եթե մեզ ստիպեն, ապա ռազմատենչ իմպերիալիզմի ամեն մի մարտահրավերին մենք արագ և արդյունավետ պատասխան կգտնենք: *(Երկարատև ծափահարություններ):* Քանզի մեր առաջին, ամենասրբազան պարտքն է ապահովել մեր երկրի և նրա դաշնակիցների անվտանգությունը, ապահովել հուսալի խաղաղություն սովետական ժողովրդի համար: *(Ծափահարություններ):*

Հետպատերազմյան տարիների փորձը համոզում է, որ պատերազմը կարելի է կանխել: Ի՞նչ վտանգներ ասես չծագեցին երեք ու կես տասնամյակում: Եղավ «սառը պատերազմ»: Եղան վտանգավոր և, կարելի է ասել, օրհասական պահեր: Բայց իմպերիալիստներին չհաջողվեց մարդկությանը հրել անդունդը:

Մենք կարողացանք մեր կշռով, մեր քաղաքականությամբ ազդել միջազգային կլիմայի վրա, մեղմել դրա խստությունը: Ամբողջ մեկ տասնամյակ միջազգային հարաբերությունները զարգանում էին լարվածության թուլացման նշանաբանով: Դա 70-ական թվականների ամենաարժեքավոր նվաճումն է: Դա Սովետական Միության, սոցիալիզմի եղբայրական երկրների, արդիականության բոլոր ողջամիտ ուժերի հաստատակամ համատեղ ջանքերի արգասիքն է:

Վախ և կանխակալ կարծիք, կեղծիք և ատելություն՝ ահա խաղաղության վատթարագույն թշնամիները: Հենց դրանք էլ սերմանում են իմպերիալիստական ռեակցիան՝ ուժեղացնելով միջազգային լարվածությունը:

Այժմյան իրադրության մեջ ավելի, քան երբևիցե, պահանջվում են շրջահայացություն ու սթափություն և դրա հետ մեկտեղ ազնիվ, համարձակ ջանքեր հանուն համաձայնության, հանուն միջազգային վստահության:

Ընկերնե՛ր: ՍՄԿԿ վերջին համագումարը հաստատեց՝ Սովետական Միության միջազգային քաղաքականության գերագույն նպատակը խաղաղությունն է: Համագումարի առաջ քաշած նախաձեռնությունների կոմպլեքսը մարդիկ անվանեցին խաղաղության ծրագիր 80-ական թվականների համար: Եվ մենք քաջ գիտենք, որ նոր պատերազմի քարոզիչների վտանգավոր դիտավորությունների դեմ մղվող պայքարում, կայուն խաղաղության պայքարում մեր կողմն են ողջ երկրագնդի ժողովուրդները: *(Ծափահարություններ):*

Ծրագիր առաջադրելը, իհարկե, գործի սկիզբն է և ոչ թե վերջը: Ողջ աշխատանքը, ողջ պայքարը դեռ առջևումն է: Մենք չենք հավակնում մենաշնորհ ունենալ խաղաղության ամրապնդման գործում: Մենք կողմնակից ենք ծավալուն երկխոսության, և ամեն մի կոնստրուկտիվ գաղափար միշտ ըմբռնման կարժանանա մեր կողմից:

Որտեղ էլ վարվեն բանակցությունները, ինչպիսի պրոբլեմի էլ դրանք նվիրվեն, մենք անկյունաքարը դարձրել ենք և կդարձնենք խաղաղության և խաղաղ համագործակցության շահերը:

Մենք հանդես ենք եկել և հանդես կգանք իմպերիալիստների կողմից ստեղծվող ճգնաժամերը, ռազմական կոնֆլիկտների օջախները վերացնելու օգտին, հայտարարված և չհայտարարված պատերազմները դադարեցնելու օգտին:

Միջազգային իրադրությունը կարող է ավելի վատ կամ ավելի լավ լինել, բայց շատ կարևոր է չշեղվել ճիշտ ուղուց: Մենք հաստատակամորեն կաշխատենք նվազեցնել լարվածության շիկացումը, պահպանել լարվածության թուլացումը, ապահովել դրա հետագա զարգացումը: Սա է հիմնական հարցը:

Մեր մտադրությունները մաքուր են և ազնիվ: Մեր հզորությունը մեծ է: Բայց մենք երբեք այն չենք գործադրի ի վնաս ժողովուրդների, այն ծառայում է և կծառայի խաղաղության գործին: *(Երկարատև ծափահարություններ):*

Մյուս պետությունների ազատությունն ու անվտանգությունը մեր սեփական ազատության և անվտանգության էական պայմանն են: Միաժամանակ, մեր ազատությունն ու անվտանգությունը մյուս երկրների ազատ և անկախ զարգացման անհրաժեշտ պայմանն են:

Մեծ է այն ժողովուրդը, որը մշտապես զգում է կենդանի կապը իր պատմության հետ, որը կարող է իր պատմական ավանդույթներից վերցնել ողջ լավագույնը և դա դարձնել այսօրվա սեփականությունը: Սովետական ժողովրդին լիովին ներհատուկ է այդ հրաշալի հատկանիշը: Այս հուշահամալիրի բացումը ևս դրա մի վկայությունն է: *(Ծափահարություններ):*

Վստահ եմ, որ դնեպրյան զառիթափում կանգնեցված այս վիթխարի հուշահամալիրը թանկ կլինի սովետական բոլոր մարդկանց համար: Այն միշտ կխորհրդանշի կյանքի հաղթանակը մահվան նկատմամբ, բանականության հաղթանակը խելահեղության նկատմամբ, բարու հաղթանակը չարի նկատմամբ: *(Երկարատև ծափահարություններ):*

Փա՜ռք սովետական ժողովրդին, հերոս ժողովրդին, հաղթող ժողովրդին: *(Բուռն, երկարատև ծափահարություններ):*

Թո՛ղ աշխարհում խաղաղությունը հաղթանակի: *(Բուռն, երկարատև ծափահարություններ):*

# ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԸ

## ՎՐԱՑԱԿԱՆ ՍՍՀ-Ի ԵՎ ՎՐԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ 60-ԱՄՅԱԿԻՆ ՆՎԻՐՎԱԾ ՀԱՆԴԻՍԱՎՈՐ ՆԻՍՏՈՒՄ 1981 Թ. ՄԱՅԻՍԻ 22-ԻՆ

Թանկագին ընկերնե՛ր:

Պանծալի հոբելյանի՝ Վրացական ՍՍՀ-ի և Վրաստանի կոմկուսի 60-ամյակի առթիվ ուրախ եմ ձեզ և հանրապետության բոլոր աշխատավորներին ամենաանկեղծ, սրտագին շնորհավորանքները հաղորդել ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և Մինիստրների խորհրդի կողմից: *(Բուռն, երկարատև ծափահարություններ)*:

Ձեր տոնը սովետական բոլոր մարդկանց, սովետական ժողովուրդների ամբողջ մեծ ընտանիքի տոնն է: Մեր երկրում ամենուրեք գիտեն՝ Վրաստանը աշխարհի սքանչելի անկյունն է, որտեղ ապրում է սրտաբաց մի ժողովուրդ, որը վաղուց ի վեր գնահատում է մարդկային ազնվությունը, ոգեշունչ աշխատանքը, մարտական արիությունը և հավատարիմ բարեկամությունը: *(Երկարատև ծափահարություններ)*:

Վրաստանի պատմական ճակատագիրը դյուրին չի եղել: Հարյուրամյակներ շարունակ նա ենթարկվել է օտար նվաճողների ասպատակություններին, որոնք ամայացրել են երկիրը: Բայց ձեր նախնիների սերունդները նույնքան անսասան են դուրս եկել, որքան Կովկասի ժայռերը: Նրանք պաշտպանել են իրենց անկախությունը, ստեղծել ու պահպանել ինքնատիպ, շատ տեսակետներից եզակի ազգային մշակույթ: *(Ծափահարություններ)*: Դրանում բարերար դեր խաղացին Վրաստանի կամավոր միանալը Ռուսաստանին, դարեդար խորացող բարեկամությունը ռուս մեծ ժողովրդի հետ: *(Երկարատև ծափահարություններ)*:

Վրաց ժողովրդի լավագույն որդիները Հոկտեմբերյան հեղափոխության ակտիվ մասնակիցները էին, խիզախորեն կռվում էին քաղաքացիական պատերազմի ռազմաճակատներում, իսկ Հայրենական մեծ պատերազմի դժնդակ տարիներին Վրաստանի որդիներն ու դուստրերը անձնվիրաբար ոտքի ելան պաշտպանելու սովետական հայրենիքը: Նրանցից 270 հազարը՝ հանրապետությունից ռազմաճակատ մեկնածների գրեթե մեկ երրորդը, իրենց կյանքը տվեցին ագրեսորի դեմ մղված պայքարում: Այդ մարդկանց հիշատակը սրբազան է: *(Ծափահարություններ)*:

Սոցիալիզմը Վրաստանին բերեց իսկական ազատություն, արթնացրեց նրա ժողովրդի խորքային ստեղծագործական ուժերը: Ինչպես մեր բոլոր հանրապետությունները, նա սովետական իշխանության տարիներին անճանաչելիորեն կերպարանափոխվեց:

Փաստորեն նոր ստեղծվեց հանրապետության արդյունաբերությունը՝ մետալուրգիական, ավտոմոբիլային, մեքենաշինական, քիմիական և ուրիշ շատ ճյուղեր, իսկ վերջերս ձեր լիառատ երկրամասը ուրախացրեց նաև սեփական նավթի հայտնաբերումով: Այսօր Վրաստանը ըստ էության ինդուստրացման նոր կարևորագույն փուլ է ապրում, ընդ որում՝ տեխնիկական ամենաբարձր մակարդակով: *(Ծափահարություններ)*:



Նորույթի նույն պատկերն ենք տեսնում գյուղատնտեսության մեջ: Դուք տասներորդ հնգամյակում հասաք թեյի, ցիտրուսային կուլտուրաների, խաղողի, պտուղների և բանջարեղենի ռեկորդային բերքի, երկրում ուշադրությամբ են հետևում հանրապետությունում կատարվող հետաքրքրական փորձերին: Ես նկատի ունեմ գյուղատնտեսական մթերքների արտադրության ու մթերման կառավարման կատարելագործումը, աշխատանքի խթանումը, հանրային և անձնական տնտեսությունների միջև կոոպերացումը:

Իսկ վերցրեք Վրաստանի գիտությունը, կուլտուրան, արվեստը: Հանրապետության գիտնականները կատարել են ոչ քիչ թվով ակնառու հայտնագործություններ: Սովետական Վրաստանի գրականության, գեղանկարչության, երաժշտության մեջ, թատրոնում, կինոյում, ճարտարապետության մեջ կան հիանալի ստեղծագործություններ, որոնք հարստացրել են սովետական բազմազգ կուլտուրան: Գեղարվեստական ստեղծագործության նկատելի թռիչքով նշանավորվեցին վերջին տարիները: Եվ այստեղ, իհարկե, դեր է խաղում Վրաստանի կոմկուսի Կենտկոմի գործունեությունը, որը կուլտուրայի վարպետների հետ կատարվող աշխատանքում ճիշտ տոն է գտել, օգնում է նրանց, ակտիվորեն նպաստում նրանց ստեղծագործական որոնումներին: *(Ծափահարություններ)*:

Սովետական բոլոր մարդիկ Վրաստանը ճանաչում են որպես մեր համամիութենական առողջարան: Նրանք ձեզանից շնորհակալ են ջերմ հյուրընկալության համար, այն բանի համար, ինչ դուք անում եք հանուն միլիոնավոր աշխատավորների առողջության պահպանման: *(Ծափահարություններ)*:

Այժմ երկրի ընդհանուր սեփականության մեջ հանրապետության ներդրումը, ամբողջությամբ վերցրած, մշտապես աճում է: Տասը տարում արդյունաբերական արտադրանքի արտադրությունը կրկնապատկվել է, իսկ գյուղատնտեսական արտադրանքի տարեկան միջին արտադրությունն աճել է մեկ ու կես անգամ: Տնտեսական ու սոցիալական զարգացման հիմնական ցուցանիշներով տասներորդ հնգամյակի առաջադրանքները կատարվել են ժամկետից շուտ: Դրանք, ընկերներ, լավ նվաճումներ են: *(Ծափահարություններ)*:

Վրաստանը հաստատուն մեկնարկ է վերցրել նաև նոր, տասնմեկերորդ հնգամյակում: Ձեր հոբելյանի առթիվ դուք առաջադրանքից ավելի տվեցիք 80 միլիոն ռուբլու արդյունաբերական արտադրանք: Շնորհավորում եմ ձեզ այդ հաջողության առթիվ: *(Երկարատև ծափահարություններ)*:

Ուրախալի է նշել, որ Սովետական Վրաստանում տիրում է իսկական ինտերնացիոնալ բարեկամության մթնոլորտ: Վրացիներն ու ռուսները, աբխազներն ու ուկրաինացիները, օսերը, հայերն ու ադրբեջանցիները, հույներն ու քրդերը՝ ավելի քան յոթանասուն ազգությունների աշխատավորներ ձեռք-ձեռքի տված աշխատում են ի բարօրություն հանրապետության և ամբողջ սովետական ժողովրդի: *(Երկարատև ծափահարություններ)*: Ձեր հանրապետության փորձը մեր կուսակցության լենինյան ազգային քաղաքականության ճշտության ևս մի համոզիչ հաստատումն է: *(Ծափահարություններ)*:

Ձեր նվաճումները հանրապետության հարյուր հազարավոր աշխատավորների համառ աշխատանքի արգասիքն են: Դրանք նաև Վրաստանի կոմկուսի Կենտկոմի, ընկեր Շևարդնաձեի գլխավորած Կենտկոմի բյուրոյի կազմակերպչական ու քաղաքական գործունեության արգասիքն են, մի մարդու, որի եռանդը, գործի նկատմամբ ստեղծագործական մոտեցումը և սկզբունքայնությունը մենք ամենքս գիտենք ու գնահատում ենք: *(Երկարատև ծափահարություններ)*:

Մենք բոլորս հիշում ենք, թե իր ժամանակին ինչպիսի բացասական երևույթներ կային հանրապետությունում: Դրանք հիշատակվեցին կուսակցության Թբիլիսիի քաղկոմի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, ուղղակի Վրաստանի կոմունիստներին և աշխատավորներին հասցեագրված՝ Կենտկոմի մի շարք այլ փաստաթղթերում: Այդ փաստաթղթերի նպատակն էր, նախ և առաջ, արմատապես բարվոքել հանրապետությունում տիրող իրադրությունը, ամրապնդել նրա տնտեսական պոտենցիալը, օգնել աշխատավորներին ավելի հաջողությամբ լուծելու կոմունիստական շինարարության խնդիրները:

Հանրապետության կուսակցական կազմակերպությունը ճիշտ հետևություններ արեց այդ քննադատությունից: Դուք կարողացաք սկզբունքային և անզի-

չում պայքար ծավալել բացասական երևույթների դեմ, կուսակցական և պետական կարգապահության ամրապնդման, կադրային ճիշտ քաղաքականության համար: Շատ բան է արված՝ հաստատելու դրական պրոցեսները հանրապետության տնտեսական ու սոցիալական կյանքում: *(Ծափահարություններ)*: Հարկավոր է այսուհետ ևս անդուլ կերպով հոգ տանել այն մասին, որ Վրաստանում բարոյական մթնոլորտը մաքուր լինի, ինչպես ձեր լեռնային օդը, իսկ երիտասարդությունը լավ իմանա ու շարունակի ավագ սերունդների, անձնվեր աշխատավորների և հայրենիքին անսահմանորեն նվիրված հայրենասերների լավագույն ավանդույթները: *(Ծափահարություններ)*:

Սովետական Վրաստանի առաջավոր մարդիկ մեր ընդհանուր փառքն ու պարծանքն են, և նոբելյանի օրը երկիրը նրանց համաժողովրդական շնորհակալություն է ասում: *(Ծափահարություններ)*:

Իհարկե, ընկերնե՛ր, ամբողջ ասվածը չի նշանակում, թե ձեզ մոտ աշխատանքում լուրջ պրոբլեմներ ու թերություններ չկան: Ցավոք, բավական կան թե՛ մեկից, թե՛ մյուսից: *(Աշխուժություն դահլիճում)*:

Մոտակա տարիներս Վրաստանը պետք է առաջ շարժվի տնտեսական զարգացման մի քանի էական ցուցանիշներով: Դուք, օրինակ, ետ եք մնացել գյուղատնտեսական մթերքների, հատկապես մսի, կաթի, ձվի արտադրությամբ: Արդյունաբերության մեջ ձեզանում դեռևս մեծ են կադրերի հոսունությունն ու աշխատաժամանակի կորուստները: Դուք պետք է ավելի արագ յուրացնեք նոր կարողությունները: Առավել արագ տեմպերի են սպասում մի շարք ձեռնարկությունների վերակառուցումը, նորաստեղծ նավթարդյունաբերության, մարգանեցի, պղնձի հանքաքարի հանույթի կարողությունների զարգացումը: Քիչ բան չպետք է արվի նաև բնակարանային և մի շարք այլ սոցիալական պրոբլեմների լուծման համար: Ձեզանում շատ կարևոր խնդիր է աշխատանքային ռեսուրսների ավելի լրիվ օգտագործումը: Այդ ռեսուրսները հարկավոր է ավելի ակտիվորեն ներգրավել ինչպես հանրապետության ներսում, այնպես էլ նրա սահմաններից դուրս տնտեսական համգույթային խնդիրները լուծելու գործում:

Դուք հարց եք դնում երկաթուղագիծ կառուցելու ուղիղ Կովկասյան լեռնանցքով: Այդ գաղափարը վաղուց կա: Նման շինարարության դժվարությունները հսկայական են: Բայց չէ՞ որ պակաս դժվարություններ չի առաջացնում ճանապարհի բացակայությունը: Ըստ երևույթին, եկել է ժամանակը ընդհուպ զբաղվելու այդ ինժեներական շատ բարդ, բայց տնտեսական կարևոր խնդրով: *(Երկարատև ծափահարություններ)*:

Վրաստանի էկոնոմիկայի հետագա վերելքը պահանջում է բարձրացնել նրա գյուղատնտեսության ինտենսիվությունն ու մասնագիտացումը: Ընդհանուր-միութենական պարենային ծրագրի իրականացման գործում ձեր ավանդը հարկ կլիներ մեծացնել: Այս բնագավառում դուք ռեզերվներ ունեք:

Սեղմ ժամկետներում ժողովրդին հուսալիորեն ապահովել սննդամթերքներով և գյուղատնտեսական հումքով՝ ահա մի խնդիր, որ այժմ կուսակցությունն առաջադրել է ամբողջ երկրի մասշտաբով: Մենք պետք է այն լուծենք և անպայման կլուծենք: *(Ծափահարություններ)*: Այժմ պարենային ծրագիրը ձևավորվում է: Այն ոչ թե կաբինետային հաշվարկների արդյունք է, այն պետք է հենվի տնտեսության փորձի ու հնարավորությունների վրա: Ուստի շատ կարևոր է, որ կոլտնտեսությունները, սովխոզները, շրջանները, մարզերը, բոլոր հանրապետությունները կոնկրետ կերպով որոշեն, թե ինչպիսին կարող է լինել իրենց առավելագույն, ընդգծում եմ՝ առավելագույն ավանդը առաջնահերթ կարևորություն ունեցող այդ գործում: Պետք է լավ մտածել, թե ինչպես հասնել այն բանին, որ կապիտալ ներդրումների յուրաքանչյուր ռուբլին, պարարտանյութերի յուրաքանչյուր տոննան լրիվ փոխհատուցվեն դաշտերի, այգիների և ֆերմաների արտադրանքի անով:

Թե՛ կոլտնտեսությունները, թե՛ սովխոզները, գյուղատնտեսության մեջ զբաղված բոլոր մարդիկ ինչպես հարկն է պետք է շահագրգռված լինեն, որպեսզի ընդհանուր-միութենական սեղանին ավելի շատ լինեն իրենց մթերքները: Շահագրգռված լինեն թե՛ բարոյապես, թե՛ նյութապես: Հմտորեն օգտագործել տեղական ռեսուրսները, երբությամբ հաշվի առնել տվյալ գոտու կլիմայական



և մյուս առանձնահատկությունները, ճշտորեն որոշել կուլտուրաների հավաքակազմը՝ այս ամենը ավելի լավ կարելի է անել տեղում: Պետք է կանոն դարձնել՝ չխանգարել տեղական նախաձեռնությանը, այլ խրախուսել այն, եթե, իհարկե, այն չի հակասում համապետական շահին: *(Երկարատև ծափահարություններ)*:

Պարենային ծրագրի կարևորագույն բաղկացուցիչ մասը, իհարկե, անասնապահությունն է: Զուր չէ, որ XXVI համագումարն այն անվանեց հարվածային ճակատ: Բայց ահա ձեր հանրապետությունում այդ բնագավառում ձեռք բերված արդյունքները առայժմ, ցանկալի կլիներ, որ ավելի լավ լինեին: Նախրի մթերատվությունը բավականաչափ արագ չի աճում: Ուստի ճիշտ է, որ դուք հիմա վերցրել եք Վրաստանը բարձր զարգացած անասնապահության հանրապետություն դարձնելու կուրս: *(Ծափահարություններ)*: Անասնապահության վերելքի հիմնական խնդիրը կերի բազայի ամրապնդումն է: Այդ իմաստով ներկա հնգամյակը զգալի չափով պետք է դառնա կերի հնգամյակ:

Գյուղատնտեսությունը մեկուսացած չէ էկոնոմիկայի մնացած ոլորտներից: Գյուղատնտեսական մթերքների արտադրությունն այժմ ապահովվում է ոչ միայն դաշտերում ու ֆերմաներում կատարվող աշխատանքով, այլև հարյուրավոր գործարանների ու ֆաբրիկաների աշխատանքով, տրանսպորտի անբասիր կազմակերպումով: Ուստի պարզ է, ընկերներ, յուրաքանչյուր մինիստրություն, միավորում, ձեռնարկություն, հաշվի առնելով պարենի պրոբլեմի լուծման կուսակցության առաջադրած խնդիրը, իր պլաններում պետք է նախատեսի դրան օժանդակելու կոնկրետ միջոցներ: Ես նկատի ունեմ գյուղատնտեսությանը տեխնիկայի, հանքային պարարտանյութերի, վառելանյութի, արտադրության այլ միջոցների մատակարարումների աճի, գյուղատնտեսական մթերքների վերամշակման, գյուղում արտադրական և կուլտուր-կենցաղային շինարարության ընդլայնման ցուցանիշները:

Հատկապես ուզում եմ կանգ առնել ևս մի հարցի վրա, որը վերաբերում է թե՛ քաղաքին, թե՛ գյուղին: Դա պայքարն է նյութական ռեսուրսների ռացիոնալ խնայողական օգտագործման համար, պայքարը ամեն տեսակ կորուստների դեմ: Մենք անչափ շատ արտադրանք ենք կորցնում այն պատճառով, որ դեռ չենք սովորել լավ պահպանել ժողովրդական բարիքը: Կորցնում ենք արտադրության մեջ առանձին մարդկանց անփութության պատճառով, կոնստրուկտորների սխալների պատճառով, այն պատճառով, որ ձեռնարկությունների այս կամ այն ղեկավարին պակասում է պետական մոտեցումը, կորցնում ենք արտադրանքի փոխադրումներն ու պահպանումը վատ կազմակերպելու պատճառով:

Լուրջ ուշադրություն պետք է նվիրել կոլտնտեսություններում և սովխոզներում աճեցված ամբողջ բերքի ժամանակին և լրիվ վերամշակումը կազմակերպելուն: Այստեղ կարևոր է կոլտնտեսությունների և սովխոզների բոլոր ղեկավարների, գյուղի բոլոր աշխատավորների հոգատար մոտեցումն ու նախաձեռնությունը: Դա համապատասխան մինիստրությունների, բոլոր կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների կարևորագույն խնդիրներից մեկն է: Հարկավոր է գործն այնպես կազմակերպել, որ չկորչի, բառիս բուն իմաստով, ոչ մի կիլոգրամ հացահատիկ, միրգ և բանջարեղեն: *(Երկարատև ծափահարություններ)*:

Կորուստները իրենք իրենց չեն առաջանում, դրանք ունեն կոնկրետ մեղավորներ: Մենք թույլ ենք պատասխան պահանջում այդ մեղավորներից: Մյուս կողմից՝ մենք դեռ անբավարար ենք խրախուսում նրանց, ովքեր կարողանում են տնտեսել հումքը, վառելիքը, էներգիան, ովքեր կարողանում են խնայել պետության յուրաքանչյուր կոպեկը: Իսկ դա պետք է անել, անպայման պետք է, ընկերներ: Զուր չէ, որ մեր տնտեսությունը ժողովրդական է անվանվում:

Նրա ամբողջ զարգացումը ենթարկված է ժողովրդի բարօրությանը: Մենք ի վիճակի ենք փակելու կորուստների բոլոր ուղիները, եթե այդ գործի համար ոտքի հանենք մեր բոլոր կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպություններին, ամբողջ ժողովրդին: Կորուստների դեմ

թյունների կողմից: Բայց նրանք, չգիտես ինչու, ձևացնում են, թե մոռանում են այդ մասին: Եթե արևմտյան պետությունները այժմ պատրաստ չեն ասելու, թե ինչպիսին կլինի վստահության միջոցների գոտու ընդլայնման ուղղությամբ իրենց համաչափական քայլը, ապա նրանք կարող էին պատասխան տալ ոչ թե Մադրիդում, այլ անմիջականորեն բուն կոնֆերանսում:

Այժմ Արևմտյան Եվրոպայի երկրներում աճում է շարժումը ընդդեմ ամերիկյան նոր հրթիռների տեղաբաշխման, հանուն Սովետական Միության հետ բանակցությունների շուտափույթ սկսման: Պետական շատ գործիչներ այնտեղ հասկանում են լարվածության թուլացումը պահպանելու անհրաժեշտությունը: Եվ ավելի ու ավելի է աճում նրանց թիվը, ովքեր գիտակցում են, որ բանակցություններից հրաժարվելու քաղաքականությունը, ռազմական ուժին ապավինելը ողջամտությունից հրաժարվելու քաղաքականություն է:

Մեծ Ռուսթավելին ավելի քան ութ դար առաջ ասել է. «Մարդիկ, մի պարծեցեք ուժով: Թողեք զվարճանքը հիմար... Չէ որ մի փոքր կայծը հերիք է մեծ անտառը վառելու համար»: *(Ծափահարություններ)*: Լավ կլիներ, որ այդ իմաստուն կոչը լսեին, նրան հետևեին բոլոր երկրների, բոլոր մայրցամաքների մարդիկ այսօր, երբ արդեն երևում է մեր դարագլխի երրորդ հազարամյակի շեմքը: *(Երկարատև ծափահարություններ)*:

Թանկագին ընկերնե՛ր: Ձեր տոնը հրաշալի է, ձեր հոբելյանը դուք արժանավայել եք նշում: Ձեր հոբելյանական հանդիսությունները, կարելի է ասել, տոգորված են ժողովուրդների բարեկամության, աշխատանքային լավ խանդավառության ոգով, ձեռք բերածի հպարտությամբ և ապագայի մեծ պլաններով: Եվ դա շատ լավ է: *(Ծափահարություններ)*: Չէ որ առջևում մեզ բոլորիս մեծ ու լարված աշխատանք է սպասում:

Իսկ ի՞նչ մաղթել ձեզ ապագայի համար: Գործեցեք ավելի համարձակորեն, աշխատեցե՛ք ավելի համառորեն, այսուհետ ևս բարձրացրեք Սովետական Վրաստանի հեղինակությունը: Սովետական մարդիկ վստահ են, որ ձեր արևաշող հանրապետությունը դեռ շատ անգամ երկրին կուրախացնի աշխատանքային նոր հաղթանակներով: *(Բուռն, երկարատև ծափահարություններ)*:

Նոր հաջողություններ ձեզ, ընկերնե՛ր, և անձնական մեծ երջանկություն: *(Երկարատև ծափահարություններ)*:

Կեցցե՛ քառակի շքանշանակիր Սովետական Վրաստանը: *(Բուռն, երկարատև ծափահարություններ)*:

Եղբայրական ողջո՜ւյն Վրաստանի կոմունիստներին: *(Բուռն, երկարատև ծափահարություններ)*:

Կեցցե՛ սովետական ժողովուրդների անխախտ բարեկամությունը: *(Բուռն, երկարատև ծափահարություններ: Բոլորը ոտքի են կանգնում: Նիստի մասնակիցները վանկարկում են՝ «Փա՜ռք ՍՄԿԿ-ին», «Բարեկամություն», «Խաղաղություն», հնչում են «Ուռա՜» բացականչություններ)*:

---

Կենսագործում ենք ՍՄԿԿ XXVI

համագումարի որոշումները

# ԿՅԱՆՔԻՆ ՀԱՄԱՔԱՅԼ

**Կ. Լ. ԴԱԼԼԱՔՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի քարտուղար

ԳՈՐԾԱՐԱՐ ԵՎ ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ մթնոլորտում անցավ հանրապետության գրողների VIII համագումարը: Խորիմաստ, հետաքրքրական խոսակցություն ծավալվեց սովետահայ գրականության զարգացման ուղիների, մեր հարուստ ու բազմաբովանդակ կյանքում գրողի տեղի ու դերի մասին: Լուրջ, սկզբունքային խոսակցություն, որ վկայում է մեր գրականության կետ-նպատակի հստակությունը, նրա մշակների ակտիվ կենսագիրքորոշումը, հայրենիքին, ժողովրդին, կուսակցությանը առավելագույնս օգուտ բերելու ձգտումը:

Հայաստանի գրողների համագումարը տեղի ունեցավ ՍՄԿԿ պատմական XXVI համագումարի առաջ բերած աշխատանքային ու քաղաքական համաժողովրդական վերելքի պայմաններում: Կուսակցության Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցումը, որով համագումարում հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևը, ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմի ակնառու փաստաթուղթ է, ծանրակշիռ ավանդ կոմունիստական շինարարության տեսության ու պրակտիկայի մեջ: Նրանում խոր ու համակողմանի վերլուծված են երկրի ներքին կյանքը, ժամանակակից միջազգային իրադրությունը, կանխորոշված են սովետական պետության զարգացման հեռանկարները և նշված ուղիները:

«Կազմելով ապագայի մեր պլանները,— նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— մենք մեր առջև դնում ենք ամենից առաջ երկու գլխավոր պարզ ու հստակ նպատակ— ժողովրդի բարօրությունը և կայուն խաղաղությունը»:

Ամեն ինչ հանուն մարդու, հանուն մարդու բարօրության: Մեր կուսակցության այս գլխավոր նպատակը մոտ ու հասկանալի է սովետական յուրաքանչյուր մարդու:

Հայաստանի աշխատավորները ջերմորեն հավանություն են տալիս կուսակցության բարձրագույն համաժողովի որոշումներին և ձեռնամուխ են եղել դրանց կենսագործմանը:

Խոշոր իրադարձություններով էր հագեցած ինչպես մեր մեծ հայրենիքի, այնպես էլ Սովետական Հայաստանի հասարակական-քաղաքական կյանքը անցած հնգամյակում: Ընդունվեցին մեր երկրի և հանրապետության նոր սահմանադրությունները: Սովետական ժողովուրդների ինտերնացիոնալ բարեկամության և եղբայրության անմոռանալի, հուզիչ հանդիսության վերածվեց Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման 150-ամյակի տոնակատարությունը: Տնտեսական և կուլտուրական շինարարության մեջ ձեռք բերած հաջողությունների համար և ի նշանավորումն այդ հոբելյանի՝ Սովետական Հայաստանը պարգևատրվեց Լենինի երրորդ շքանշանով: Հսկայական խանդավառությամբ ու ոգևորությամբ, հայրենասիրական ավյունով նշվեց Հայկական ՍՍՀ-ի և Հայաստանի կոմունիստական կուսակցության 60-ամյակը:

Մեզանում բարի ավանդույթ են դարձել արվեստի և գրականության գոր-

ծիչների հետ հանրապետության ղեկավարության հանդիպումները։ Համագումարի նախօրյակին այդպիսի մի հանդիպում տեղի ունեցավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանի հետ, որը գրողների միության վարչության անդամներին հանգամանորեն պատմեց մեր գործերի ու անելիքների մասին, ծանոթացրեց առաջիկայի կոնկրետ ծրագրերին։ Նման հանդիպումները հնարավորություն են ընձեռում մեր գեղարվեստական մտավորականությանը՝ հենց սկզբնաղբյուրից ստանալու իրենց հետաքրքրող հարցերի պատասխանները, ավելի մոտ կանգնելու հանրապետության գործերին։

ՍՄԿԿ XXVI համագումարը մեկ անգամ ևս շեշտեց, որ մեր հետագա առաջընթացը առավել չափով պայմանավորված է հասարակության մտավոր ու բարոյական պոտենցիալի առավելագույն օգտագործումով։ Հիրավի, նոր հասարակարգի կառուցման բարդ խնդիրները կարող են իրականացնել միայն հոգեկան հարստությունը, բարոյական անաղարտությունն ու ֆիզիկական կատարելությունն օրգանապես միաձուլող, լայն մտահորիզոն ունեցող մարդիկ։

Մեր երկրում, մարդկության պատմության մեջ առաջին անգամ, ստեղծված են բոլոր պայմանները անհատի համակողմանի զարգացման, սովետական մարդու բարոյական կատարելացման, նրան մարդասիրական լավագույն ավանդույթներով, ամենաազնիվ իդեալների ոգով դաստիարակելու համար։

«Եվ այն բանում, որ սովետական հասարակության հոգևոր կյանքը դառնում է առավել բազմազան ու հարուստ,— ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXVI համագումարում,— աներկբայելի վաստակ ունեն նաև մեր կուլտուրայի, մեր գրականության ու արվեստի գործիչները»։

Մեր հասարակության մեջ բարձր է գնահատվում գրողի անկեղծ, ոգևորիչ խոսքը։ Մարդու վրա կարևոր ներգործություն է ունենում ամենաառաջավորի, կոմունիստականի հաստատման դիրքերից իրականության ճշմարտացի, կատարյալ գեղարվեստական արտացոլումը։ Մեր գրականությունն անխզելիորեն կապված է ժողովրդի կյանքի հետ, տոգորված է ժողովրդի շահերով։ Սոցիալիստական հասարակարգում գրողը միաժամանակ հասարակական հեղինակավոր գործիչ է, իր ստեղծագործություններով մեր կենսագործունեության բոլոր բնագավառներին ակտիվորեն միջամտող, կյանքի բազմազան պրոցեսներին զգայունորեն արձագանքող մարդ և արվեստագետ։ Ահա թե ինչու խիստ կարևոր է, որպեսզի գրողն օժտված լինի իրականությունը ճիշտ ընկալելու սուր զգացողությամբ։

Այս բանը, սակայն, հնարավոր է միայն այն դեպքում, երբ գրողը ապրում է իր ժողովրդի հոգսերով, նրա ուրախությամբ ու մտահոգությամբ, թափանցում ժողովրդական կյանքի ընդերքը։

Ի՞նչ են ակնկալում այսօր կուսակցությունը, ժողովուրդը գրականությունից։ Ժամանակակից գրողից պահանջվում է մեր կյանքում տեղի ունեցող սոցիալ-տնտեսական վիթխարի փոփոխությունների իմաստավորում, քաղաքացիական շահագրգռություն մեր սոցիալական ու հոգևոր կյանքի արմատական հարցերի լուծման գործում։

Վերջին հնգամյակում գրվել և հրատարակվել են շատ գրքեր, ուր զգացվում է մեր գրողների քաղաքացիական ակտիվությունը, նրանց պատրաստակամությունը՝ պայքարելու կոմունիստական բարոյականության սկզբունքների ամեն կարգի խախտումների դեմ։ Ընթերցողի վրա հատկապես ուժգին են ներգործում այն գրքերը, որոնցում ցայտուն արտացոլված են մարդու հոգու հերոսականության ակունքը, ինքնազոհաբերման նրա պատրաստակամությունը հանուն կոմունիստական իդեալների։

Իրականության մեջ մենք հաճախ ենք հանդիպում մեր օրերի իսկական հերոսների, իրենց արտասովոր գործերով աշխարհը զարմացնող սովորական մարդկանց։ Բացեք մեր սոցիալիստական հայրենիքի տարեգրության ցանկացած էջը, և դուք կտեսնեք խիզախումներն ու սխրանքները սովետական մարդու՝ լինի նա բանվոր դասակարգի, սոցիալիստական գյուղացիության, թե սովետական մտավորականության ներկայացուցիչ։ Այդ մարդիկ մարմնավորում են սոցիալիստական հասարակության անդամի լավագույն հատկանիշները—ինտերնացիոնալիզմ և հայրենասիրություն, գաղափարական համոզվածություն և գիտակցականություն, աշխատասիրություն, ստեղծագործական արիություն, առաջ ընթանալու անշեջ ձգտում։



Մենք ուզում ենք գրականության մեջ տեսնել մեր ժամանակակիցների մեծ աշխարհը—խելացի, մտավոր կարողություններով օժտված հերոսների, նրանց, ում սխրանքներով, քաջությամբ, բուռն հայրենասիրությամբ և հետևողական ինտերնացիոնալիզմով հիանում է ողջ մոլորակը, մարդիկ, որոնք, ինչպես ասել է բանաստեղծը՝

Եթե ուզեն՝ արևներին նոր տեմպ կտան
ու նոր ուղի...
Եթե ուզեն՝ արեգակներ կշպրտեն
երկինքն ի վեր...

Վերջին տարիներին սովետահայ գրականությունը հաջողությամբ է լուծել մեր ողջ գրականությանը բուռն կյանքի առաջադրած գլխավոր խնդիրը—արդիականության, սոցիալիստական հասարակության մեջ տեղի ունեցող կարևոր պրոցեսների մարմնավորման խնդիրը։ Նոր գրքերով են նշանավորվել հանրապետության ականավոր արձակագիրների ու պոետների՝ Սերո Խանզադյանի, Հովհաննես Շիրազի, Սարմենի, Գևորգ Էմինի, Սիլվա Կապուտիկյանի, Համո Սահյանի, Աղավնու, Վահագն Դավթյանի, Հրաչյա Հովհաննիսյանի, Վարդգես Պետրոսյանի, Մարո Մարգարյանի, Անահիտ Սահինյանի, Պերճ Զեյթունցյանի, Մկրտիչ Սարգսյանի, Հրանտ Մաթևոսյանի, Մուշեղ Գալշոյանի, Ռազմիկ Դավոյանի, Լյուդվիգ Դուրյանի, Զորայր Խալափյանի, Հովհաննես Ղուկասյանի, Գրիգոր Տեր-Գրիգորյանի, Արամայիս Սահակյանի, Հովհաննես Մելքոնյանի, Ժորա Հարությունյանի և ուրիշների ստեղծագործական որոնումները։

Սովետական մարդկանց հոգևոր գեղեցկությունը, վեհությունն ու սխրանքն արտացոլելու ձգտում, նրանց բարոյական նախապատրաստում կոմունիստական իդեալների հաստատման համար ծավալված ակտիվ պայքարին— այս է սովետահայ գրականության՝ մեր իրականությանը նվիրված լավագույն ստեղծագործությունները բնորոշող գաղափարագեղարվեստական ուղենիշը։

Շարունակելով և զարգացնելով առաջավոր ավանդույթները, մեր գրողներն իրենց լավագույն երկերով դարձել են վեհ իդեալների իրականացման ամենագործուն մասնակիցները։ Եվ ամեն անգամ, երբ հանրագումարի ենք բերում հանրապետության աշխատավորների հերոսական գործերը, նրանց հոծ բազմության մեջ մտովի տեսնում ենք ժողովրդական մեր մտավորականությանը և նրանց շարքում՝ մեր գրողներին, որոնք գեղարվեստական խոսքի ուժով կատարում են շնորհակալ և հայրենանվեր աշխատանք։

Քիչ բան չեն արել մեր գրողները։ Բայց կարո՞ղ ենք արդյոք հանգստանալ, գոհանալ ձեռք բերածով։

Սովետահայ գրականության ոլորտում վերջին տարիներս սակավաթիվ են հանրապետության աշխատավորության, մասնավորապես բանվոր դասակարգի կյանքին վերաբերող ստեղծագործությունները։ Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման համար ծավալված համաժողովրդական պայքարի ավանգարդում ընթացող ժամանակակից աշխատավորի՝ բանվորի, գյուղացու կյանքը ինչպես հարկն է չի արտացոլված վերջին տարիների արձակում։ Այս մասամբ բացատրվում է նրանով, որ հանրապետության ոչ բոլոր գրողներն են հաղորդակցվում մեր օրերի իրական հերոսների հետ, մոտիկից ծանոթ չեն արտադրական առաջավոր կոլեկտիվների կյանքին։ Գրողը պարտավոր է խորապես հասկանալ այն ամենը, ինչ կատարվում է շուրջը, ճանաչել իր ապրած իրականությունը և քաջատեղյակ լինել նրա առաջմղիչ ուժերին։

Մեր երկրում բուն աշխատանքն է վճռում մարդու տեղը հասարակության մեջ։ Աշխատանքի նկատմամբ վերաբերմունքը մարդու սոցիալական ակտիվության, քաղաքացիական հասունության հիմնական ցուցանիշն է։ Աշխատանքով է ստեղծվում մեր ընդհանուր հարստությունը։ Եվ գրականության առավել հրատապ խնդիրներից մեկը աշխատանքի, արարման գեղեցկության արտացոլումն է, բոլորին, առաջին հերթին երիտասարդությանը այն համոզմունքով համակելը, որ աշխատանքի մարդը գեղեցիկ է և վեհ։

Գրականությունը պետք է ակտիվորեն միրճվի ժողովրդի կյանքի մեջ, գրողը պետք է գործուն մասնակցություն ունենա կոմունիստական շինարարության կենսական խնդիրների լուծմանը:

Հարուստ ու բազմազան են այն ձևերը, որոնց օգնությամբ կարելի է խոսքի վարպետներին մասնակից դարձնել տնտեսական ու կուլտուրական շինարարության կոնկրետ խնդիրների լուծմանը: Դրան կարող են նպաստել և՛ գրականության օրերը հանրապետության շրջաններում, և՛ գրողների վարչության արտագնա պլենումները արդյունաբերական խոշոր կենտրոններում, որոնք կվերածվեն ստեղծագործական լուրջ հաշվետվությունների, ուր հնարավոր կլինի քննարկել գրական կյանքի հասարակական նշանակություն ունեցող հարցերը:

Մենք այսօր չենք կարող գոհանալ նրանով, ինչ արել են մեր գրողները գործարանների ու դաշտերի աշխատավորների հետ ստեղծագործական կապերի ամրապնդման բնագավառում: Չեն օգտագործվել կյանքի բոլոր երևույթներում խորամուխ լինելու, այն ըմբռնելու հնարավորությունները: Մինչդեռ վերջին տասնամյակում տեղի ունեցող մեծագործությունների մասշտաբայնությունն արժանի է ոչ միայն ուշադրության, այլև վառ վերակերտման՝ մեր գրողների ստեղծագործության մեջ:

Երբ թերթում ենք կենտրոնական գրական ամսագրերի ու լրագրերի էջերը, աչքի է զարնում գրողներին աշխատանքի մարդկանց հետ կապող ձևերի ու միջոցների առատությունը: Այդ նաև արտադրական կոլեկտիվների հետ գրողների ունեցած սերտ բարեկամությունն է, որն օգնում է լրացնելու նրանց պատկերացումները արդի գիտատեխնիկական հեղափոխության մասին, բացահայտում ժամանակակից բանվորի, արտադրության հրամանատարի բնավորության նոր գծերը, նրանց արտադրական ու անձնական ունակությունների նրբերանգները, ծառայում իբրև կենսափորձի դպրոց:

1967-ին, Եղիշե Չարենցի ծննդյան 70-ամյակի տոնակատարության ժամանակ, Հայաստանի բուռն զարգացող նոր քաղաքներից մեկը կոչվեց պոետի անունով: Հանրապետության գրողների կազմակերպությունն զգալի հետաքրքրություն ցուցաբերեց այս իրադարձության նկատմամբ: Մի քանի տարի առաջ գրողների միության և Չարենցավանի գործիքաշինական գործարանի կուսակցական բյուրոների նախաձեռնությամբ նույնիսկ հրավիրվում էին կուսակցական համատեղ ժողովներ: Առանց չափազանցության կարելի է ասել, որ նման համագործակցությունն ամրապնդում էր գրողների կապը կյանքի հետ, դարձնում նրանց մասնակիցը այն ամենի, ինչով ապրում էին հանրապետության երիտասարդ քաղաքի բանվորները: Այդ կապն այսօր թուլացել է:

Շատ ձեռնարկություններ կան Երևանում, հանրապետության ուրիշ վայրերում, և հնարավոր էր նրանց հետ հաստատել սերտ համագործակցություն՝ կնքել պայմանագրեր ստեղծագործական համագործակցության վերաբերյալ, կուլտուրական շեֆություն ստանձնել:

Վերջերս Երևանում գործարկվեց մետրոպոլիտենի առաջին գիծը, շահագործման հանձնվեց Արփա—Սևան համաժողովրդական կառույցը:

Հազվադեպ էին գրողների այցելություններն այդ կառույցները, իսկ գրական փոխհատուցը՝ հույժ համեստ: Մինչդեռ կառուցողները՝ մեր երկրի գրեթե 30 ազգությունների ներկայացուցիչները, հրաշքներ էին գործում: Նրանք շրջեցին Արփա գետի հունը, թունել կառուցեցին Սևանը փրկելու համար:

Համոզված ենք, որ Երևանի մետրոպոլիտենի, Արփա—Սևան հիդրոտեխնիկական կառույցի և հանրապետության այլ հարվածային կառույցների մասին դեռևս գրքեր կգրվեն, երգեր կհյուսվեն: Բայց մի՞թե մինչև օրս դրանք արժանավույնս չպիտի գրավեին հանրապետության գրողների կազմակերպության, նրա գրական օրգանների ուշադրությունը:

Ինչո՞ւ ենք այսպես հանգամանորեն անդրադառնում աշխատանքի ու գրականության դաշինքին: Որովհետև հենց ինքը՝ այդ դաշինքն է մեր գրականության գլխավոր կոչման—ժողովրդի կոմունիստական դաստիարակության ասպարեզում կուսակցության հավատարիմ օգնականը լինելու խնդրի յուրատեսակ թե՛ հողը և թե զինանոցը:

Մեր գրականության մեջ իրենց արժանի տեղը պետք է գրավեն գիտատեխնիկական հեղափոխությանն առնչվող խնդիրները: Այս պրոբլեմներում ճիշտ կողմնորոշվելու համար գրողները պետք է ունենան խոր և լուրջ գիտելիքներ, քանի որ, ինչպես հայտնի է, հնարավոր չէ հավաստիորեն և համոզիչ գրել հերոսի ներաշխարհի, նրան հետաքրքրող պրոբլեմների մասին, առանց խորապես թափանցելու դրանց էության մեջ: Խոսքը, անշուշտ, տեխնիկայի և տեխնիկական առաջընթացի գովերգման մասին չէ, այլ այն իրականության խոր իմացության, որի համայնապատկերի վրա գործում է աշխատանքի մարդը: Տեխնիկան նոր պայմաններ է ստեղծում, նոր հարաբերություններ մարդկանց միջև, մարդու և բնության միջև, հետևաբար և գրողին թելադրում է մարմնավորել նոր հոգեբանությունը:

Պոեզիայի մասին ասուլիսներ, զանազան քննարկումներ մեզանում բավականին շատ են սկսել գումարվել: Համագումարում ևս լուրջ խոսակցություն եղավ նրա արդի վիճակի, ուղեգրած ճանապարհի, զարգացման հեռանկարների վերաբերյալ: Ու երբեմն հնչում են կասկածներ պոեզիայի քաղաքացիության իրավունքի վերաբերյալ՝ գիտության առաջընթացի պայմաններում, ելնելով այսպես կոչված նորարարամոլության ձախավեր փորձից: Գիտությունն այստեղ որևէ մեղք չունի: Համեմատեցեք, օրինակ, Վ. Համբարձումյանի կամ Գ. Գուրզադյանի «Օրիոն» սարքով հայտնագործած տիեզերքը Անաքսիմենեսի տիեզերքի հետ: Որքա՜ն ավելի վեհ, բազմապիսի ու խորունկ է այն, որքա՜ն ավելի բանաստեղծական: Գիտությունը բնավ էլ բանաստեղծության դահիճը չէ, այլ հոգատար դայակը: Զախորդ, բովանդակազուրկ մոդեռնիզմը բանաստեղծություն չէ, այլ բանաստեղծության վիժում, զարտուղություն:

Աշխատանքի մարդ՝ չի նշանակում ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության անօգնական մի ուղեկից, առավել ևս՝ չի նշանակում տեխնիկայի կամ մեքենայի կցորդ: Աշխատանքի մարդը հոգով հարուստ, ուրախացող ու տխրող, հաղթող ու երբեմն էլ, ինչու չէ, նաև հաղթվող մարդ է, որն իր ուժը, եռանդը, միտքն ու հոգին նվիրաբերում է երկրի ու ժողովրդի բարգավաճմանն ու դրանով իսկ՝ լուսավոր ապագային:

Մեր գրականությունը միշտ հարուստ է եղել գյուղին, գեղջկական աշխատանքին նվիրված հետաքրքրական ստեղծագործություններով, որոնք աչքի էին ընկնում գյուղական կյանքի մեջ թափանցելու խորությամբ, հայ գյուղի կենցաղի հեղափոխական վերափոխումների գեղարվեստական լուծումներով:

Ինչո՞վ են աչքի զարնում արդի հայկական գյուղը ներկայացնող շատ ստեղծագործություններ: Առաջին հերթին այն տպավորությունն է ստեղծվում, որ գրողներից ոմանք պարզապես ճիշտ պատկերացում չունեն այսօրվա գյուղի մասին:

Գյուղական արձակի նույնիսկ հաջողված երկերում, որոնք հենց իրենց՝ հեղինակների և որոշ քննադատների վկայությամբ, իբր ներկայացնում են ժամանակակից կյանքը, իրականում պատկերված է քսան, երեսուն, քառասուն, լավագույն դեպքում՝ հիսնական թվականների կյանքը՝ իր այն ժամանակվա պրոբլեմներով:

Մինչդեռ հարկ է, որպեսզի գրողների՝ գյուղի մասին գրած ստեղծագործություններում արծարծվեն այն պրոբլեմները, որոնք կենսահույզ են ժամանակակից գյուղի համար— գյուղատնտեսական արտադրության հետևողական փոխադրումը ինդուստրիալ ռելսերի վրա և արդյունաբերության զարգացումը գյուղական վայրերում, որոնք հանգեցնում են արտադրական հարաբերությունների կատարելագործման, գյուղի սոցիալական զարգացման արագացման, որը բերում է կենցաղի և կացութաձևերի որակական փոփոխություններ, կուլտուրական կյանքի մակարդակի բարձրացում և բազմաքանակ ու բազմազան ինֆորմացիայի մուտքը գյուղ— այս ամենը բավականին ներազդում են գյուղում ապրող և աշխատող մարդկանց հոգեբանության վրա և կարիք ունեն խոր վերարտադրման և գեղարվեստական արտացոլման:

Աշխատավորական զանգվածների եռանդը, քաղաքների ու գյուղերի աշխատավորների ամենօրյա աշխատանքը արտացոլվում են ո՛չ միայն ստեղծագործական մեծ կտավներում, վեպերում, այլև հրապարակախոսության ու ակնարկային գրականության մեջ:

Հրապարակախոսությունը վերլուծական մտքի արվեստ է, և այդ մտքի ճըշգըրտությամբ ու ակտիվությամբ էլ արտահայտվում է հրապարակախոսի սուր վերաբերմունքը իրականության նկատմամբ, գրողի հոգևոր ու գործնական մասնակցությունը մեր կյանքին, մեր հայրենիքի հաջողություններին ու նվաճումներին։

Հրապարակախոսական ակնարկը միշտ էլ կարևոր տեղ է գրավել սովետահայ գրականության մեջ։ Մեր կյանքի իրադարձությունները նրա նշանակությունը բարձրացրել, հասցրել են մեծ կտավի մակարդակի։ Կուսակցականություն, անմիջական հրապարակայնություն, անհանդուրժողականություն ամեն մի խորթ երևույթի նկատմամբ, իրադարձություններին մեծ եռանդով միջամտելու, նոր կյանքի կառուցմանը մասնակցելու ակտիվ ձգտում — այս հատկություններն են միշտ բնորոշել սովետահայ ակնարկը։

Ծանոթանալով մեր գրական ամսագրերում հրապարակված շատ ակնարկների՝ ամենից առաջ նկատում ենք, որ մեզ մոտ շատ քիչ են խորիմաստ, մեծ զգացմունքով և փիլիսոփայական ընդհանրացումներով, գեղարվեստական-հրապարակախոսական և գեղարվեստական-արտահայտչական վարպետությամբ օժտված ակնարկները։ Դրանց մեծ մասի բովանդակությունը սահմանափակվում է փաստի հաղորդմամբ և լուսաբանմամբ։ Ժամանակակից հայկական հրապարակախոսական ակնարկը ինչպես հարկն է առնչված չէ երկրի, հանրապետության տնտեսական, կուլտուրական կյանքի հետ։ Մինչդեռ ակնարկային ստեղծագործական տեսադաշտը պետք է օրեցօր ընդլայնվի։ Այդ են պահանջում, ամենից առաջ, մեր երկրի կյանքում տեղի ունեցող վիթխարի իրադարձությունները։ Գրողը, ակնարկագիրը պետք է կարողանա ո՛չ միայն անմիջականորեն արձագանքել այդ իրադարձություններին, այլև արծարծել ժամանակի առանցքային խնդիրները և իմաստավորել դրանք սոցիալ-փիլիսոփայական առումով։

Տեսնել, ուսումնասիրել, կշռադատել ու ընդհանրացնել կյանքի այսօրվա տիպական երևույթները — հենց այս է գրողի, հրապարակախոսի, ակնարկագրի կարևոր խնդիրներից մեկը։

Կոմունիստական կուսակցությունը չի թաքցնում մեր կյանքում առկա դըժվարություններն ու թերությունները։ «Կուսակցությունը ողջունում է լավագույն ստեղծագործություններին հատուկ քաղաքացիական պաթոսը, անհաշտվողականությունը թերությունների հանդեպ, արվեստի ակտիվ միջամտությունը այն հարցերի լուծմանը, որոնցով ապրում է մեր հասարակությունը»,— նշված է համագումարի փաստաթղթերում։ Ավելին, այդ թերությունների ճշմարտացի, շիտակ քննադատությունն օգնում է մեզ վերացնելու դրանք։ Վերջին հնգամյակում մեր գրողներն ստեղծել են ոչ քիչ թվով գրքեր, որոնցում զգացվում է կոմունիստական բարոյականության սկզբունքների, մեր կյանքում դեռևս տեղ գտած բացասական երևույթների, ամեն տեսակ խախտումների դեմ պայքարելու նրանց ցանկությունը, նշավակելու մեր հասարակության էությանը խորթ երևույթները՝ ընչաքաղցությունը, կաշառակերությունը, մասնավոր-սեփականատիրական միտումները, բյուրոկրատիզմը և անտարբերությունը մարդու նկատմամբ։

Կուսակցությունը միաժամանակ վճռականորեն հանդես է գալիս ընդդեմ իրականության միակողմանի, մակերեսային արտացոլման, ընդդեմ կյանքից վերցված պատառիկների բացարձակացման և այն բանի, երբ պրոցեսը չի դիտվում իր ողջ դիալեկտիկական բարդության և միասնության մեջ։

Գեղարվեստական ստեղծագործությունը պարզ ու հասարակ պրոցես չէ, յուրաքանչյուր արվեստագետ իր առանձնահատուկ ուղիով է մոտենում իրականության իմաստավորմանը, ուստի մեր կուսակցությունը միշտ հետևում է լենինյան խորհրդին՝ բոլոր հնարավորություններն ստեղծել արվեստագետի տաղանդի, նրա մտքի և երևակայության, անհատական հակումների լիակատար դրսևորման համար։

Այս ամենը, իհարկե, չի նշանակում, թե մենք հանդուրժողական վերաբերմունք կցուցաբերենք գեղարվեստական խոտանի, գաղափարախոսական խոտո-



րումների, հետամնացության և գավառականության կնիքը կրող ստեղծագործությունների նկատմամբ։ Մենք առաջիկայում ևս անհաշտ կլինենք պատմական երևույթները, իրադարձություններն ու անհատներին պատկերելիս դասակարգային կողմնորոշիչները կորցնելու, երևույթների կամայական մեկնաբանությունների, արվեստագետի դիրքավորման անորոշության հանդեպ, այն փորձերի հանդեպ, երբ ստեղծագործական աշխատանքի բարդության և յուրօրինակության «որոնումների» քողի տակ սովետական արվեստի ու գրականության մեջ սպրդում են մեզ համար խորթ հայացքներ։

Մի առիթով Մարքսը դիպուկ նկատել է, թե «բոլոր մեռած սերունդների ավանդույթները որպես մղձավանջ ճնշում են գործադրում ապրողների ուղեղների վրա»։ Այս դիտողությունն առավել հստակ, թերևս, հասցեագրված է հնացած, հետադիմական ավանդույթներին կառչած մնալու կոչերին, իբրև ազգային գոյատևությունն ապահովելու միջոց։ Պատմության հազարավոր տարիների հոլովույթում նման կոչը կարող էր արդարացվել փոքր ազգերի համար, երբ իր ավանդույթների պատյանի մեջ ներփակվելը անցյալում այլազան միջամտություններից խուսափելու որոշակի միջոց էր։

Բայց արդեն իսկ XIX դարում դա հնացած միջոց էր համարվում։ Այս աշնանը մենք հանդիսավոր նշելու ենք Հարություն Սվաճյանի ծննդյան 150-ամյակը։ Ահա թե ինչ էր գրում նրա «Մեղու» սրանից ավելի քան հարյուր տարի առաջ.
«... Հիմա քաղաքակրթությունը աշխարհը նվաճելու ուխտը ըրած, ահավոր և զորեղ թռիչներ առած, ամեն կողմ կհարձակի, ամեն երկրի կը տիրե, իրեն դեմ կենալ ուզողը կը կործանե ի գետին։ Ազգ մը, եթե կուզե ասկե ետև ալ ապրիլ՝ կամա ակամա անոր առջև խոնարհելու է, թեպետ լավագույն կըլլա իրեն համար կամավ անոր հնազանդիլը կամ զանի ինքը հրավիրելը... ասկե ետև գոնե աշխատինք զանի ընդունելու»։

Այսօր որևէ ազգի համար իր պատյանի մեջ ներփակվելը միայն նրա թուլության նշանն է։ Ուժեղ, հզոր մշակույթի տեր ժողովուրդը, ընդհակառակն, պիտի լայնորեն բացի իր սիրտն ու դուռը աշխարհին, պիտի առաքի և ընդունի մշակութային արժեքներ, դրանով առավել ևս ինքնահաստատման հասնի, առավել ևս զարգացնի իր մշակույթը, արվեստը, գրականությունը։

Կուսակցականությունը և ժողովրդայնությունը, արվեստի բարձր մակարդակը մեզանում միշտ էլ եղել են գեղեցիկ արվեստների ստեղծած արժույթների գնահատման գլխավոր չափանիշը։ Գեղարվեստական ձևի ինչպիսի պրոբլեմներ, ստեղծագործական ինչպիսի տարբեր եղանակներ էլ քննելու լինենք, այս հարցերը պետք է առաջին պլան մղվեն, քանի որ տաղանդը, ստեղծագործական ձևերն անբաժանելի են արվեստագետի գաղափարական դիրքորոշումից, կյանքի իմացությունից, նրա աշխարհայացքից։

Մեր օրերում կուսակցականության սկզբունքն այժմեական է ամենից առաջ նրանով, որ այն օգնում է գրականությանն ավելի խոր ու համակողմանի արտացոլելու իրականությունը, լենինյան շիտակությամբ բացահայտելու կյանքի ճշմարտությունը, ստեղծագործություններում քննարկելու, արծարծելու և լուծելու մեր ժամանակի ամենաէական խնդիրները։

Արվեստագետի քաղաքացիական պարտքն է՝ բոլորանվեր ծառայել դարաշրջանի առաջավոր գաղափարներին, արմատավորել դրանք ժամանակակիցների գիտակցության մեջ, նպաստելով դրանց իրականացմանը, կոմունիստական գալիքի հաղթանակին։

Անդրե Մորուան մի հետաքրքրական միտք է արտահայտել, որ կուզենայի վերաշարադրել մեր օրինակով։

Կա գրականություն, և կա «սև գրականություն», «խավարի գրականություն», ինչպես Հիչկոկի ֆիլմերը։ Կյանքն էլ իր հերթին կամա թե ակամա ընդօրինակում է արվեստը, գրականությունը։ Կարդալով, օրինակ, Սահինյանի «Ծարավը», երիտասարդ մարդն իրեն պատրաստ է զգում լավ, բարի գործերի, իսկ որևէ «սև» կամ սևացնող վեպ ծալելուց հետո մատնվում է հուսահատության։ Եվ դա ոչ այն պատճառով, որ Սահինյանը լռել է կյանքի սարսափների, ստո-

րության և հանցագործությունների մասին։ Այլ որովհետև մարդու ստրկության կողքին նա պատկերել է մարդու վեհությունը։

Հենց այստեղ է, որ ընդհուպ հասնում ենք էթիկայի և էսթետիկայի շաղկապման դարավոր պրոբլեմին։

«Էսթետիկան,— ասում է Լ. Ն. Տոլստոյը,— էթիկայի արտահայտությունն է։ Այսինքն՝ արվեստն արտահայտում է այն զգացումները, որ ապրում է արվեստագետը։ Եթե զգացումները լավն են, վեհ, ապա արվեստը ևս կլինի լավը, վեհ և, ընդհակառակն։ Եթե արվեստագետը բարոյական մարդ է, ուրեմն և նրա արվեստն էլ կլինի բարոյական...»։

Առաջավոր արվեստագետների ստեղծագործությանը բնորոշ հատկանիշը միշտ եղել է պատասխանատվությունը հասարակության առջև։ Իր տաղանդը մարդկության ամենալուսավոր գաղափարների իրականացմանը նվիրած գրողի համար չկա ավելի պատվավոր խնդիր, քան խոսքի ուժով աշխարհի մեծ վերափոխմանը մասնակից լինելը։

Սովետական գրականության և արվեստի լավագույն ստեղծագործություններում քաղաքացիականությունն ամբողջովին վեր է ածվում արվեստագետի և ժողովրդի շահերի միաձուլման։ Գրողի՝ ժողովրդի առջև ունեցած խոր պատասխանատվությունը պարտավորեցնում է նրան կոմունիստաբար, ամենայն օբյեկտիվությամբ գնահատել տարբեր, հաճախ հակասական, հասարակության զարգացման ընթացքի վրա ներազդող գործոնները։

Սրանից 60 տարի առաջ մեր ժողովուրդը կանգնած էր պատմության ճամփաբաժանի վրա, ու նրա առջև ծառացել էր «լինել թե չլինելու» ճակատագրական հարցը։ Իրերի բերումով նա հասել էր մի կացության, որը Մարքսը մի այլ առիթով այսպես է բնութագրել. «Ազգին, ինչպես և կնոջը, չի ներվում անճարակության այն պահը, երբ առաջին պատահած արկածախնդիրը կարող է բռնանալ նրա նկատմամբ»։

Մեր ժողովուրդը կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ իմաստություն ունեցավ ոտք դնելու միակ ճիշտ, պատմական հետագա ընթացքով հաղթանակի առաջնորդող ուղին։

Մեծ Հոկտեմբերի հաղթանակի շնորհիվ մեր ժողովուրդը մեկընդմիշտ որդեգրեց զարգացման սոցիալիստական հունը։ Եվ ահա եղբայրական բազում ժողովուրդների հետ այժմ կոմունիզմ ենք կառուցում։ Անսասան է մեր հիմքը, անխորտակ մեր ուժը։ Իսկ դաշնակցության բեկորները այժմ էլ լծված են մնում իմպերիալիզմի մարտակառքին։ Եվ որքա՜ն լուտանք են նրանք թափել մեր գրականության խոշորագույն հեղինակությունների հասցեին։ Որևէ կուսակցության մասին դատում են ոչ թե ըստ նրա առանձին անդամների բարի խոսքերի, կամ նույնիսկ այս կամ այն օղակի պատեհապաշտական քայլերի, այլ ըստ նրա վարած պրակտիկ քաղաքականության։ Իսկ դրանց էությունը միշտ նույնն է՝ հակակոմունիզմը։

Ուրեմն, բոլորիս պարտքն է, հետևելով Հայաստանի կոմունիստական կուսակցության XXVII համագումարի որոշումներին, հետևողականորեն պայքարել բուրժուական, այդ թվում՝ դաշնակցական գաղափարախոսության դեմ։ Ոչ մի կոմպրոմիս գաղափարախոսական մարզում։

Մեր խնդիրն է ճշմարտացի իմաստավորել այն, ինչ տվել է մեր երկրին ու ժողովրդին սովետական իշխանությունը վաթսուն տարիների ընթացքում։ Դա նշանակում է խորապես ըմբռնել սոցիալիզմի ստեղծարար էությունը, տեսնել լենինյան կուսակցության, նրա իմաստուն ազգային քաղաքականության, մեր ժողովրդի հեղափոխական վերակերտող վիթխարի գործունեությունը, խորամուխ լինել նոր մարդու ձևավորման պրոցեսի մեջ, ըմբռնել նրա հայրենասիրության ու պրոլետարական ինտերնացիոնալիզմի, կոմունիզմի հաղթանակի նկատմամբ անսահման հավատի սկզբունքները։

Գրողի կոչումն է՝ արվեստի միջոցներով ուսումնասիրել կյանքի ողջ բազմազանությունը, խորատեսությամբ նկատել ու եռանդով պաշտպանել նորը, առաջավորը։ Նա չի կարող և չպետք է շրջանցի հասարակությանը հուզող, լուծման կարոտ հարցերը։ Այստեղ է, որ ակնբախորեն երևան է գալիս կուսակցա-



կան արվեստագետի և «անկախության» կեցվածք ընդունած նիհիլիստի տարբերությունը։

Այսօր, գաղափարական անզիջում պայքարի պայմաններում, երբ արևմուտքի պրոպագանդիստական մեքենան ամեն կերպ ջանում է նսեմացնել սոցիալիզմի նվաճումները, մեր գրականությունը, ինչպես միշտ, պետք է գտնվի գաղափարական պայքարի առաջին գծում։ Ժամանակը պահանջում է արվեստագետից վճռականորեն ու հետևողականորեն պայքարել բուրժուական գաղափարախոսության դեմ, նպաստել մեր մարդկանց կոմունիստական համոզմունքների, գաղափարական կայունության, սովետական հայրենասիրության ու պրոլետարական ինտերնացիոնալիզմի զարգացման ամրապնդմանը։

Խորապես ըմբռնելով, որ գաղափարախոսությունների խաղաղ գոյակցությունն անհնար է, ինչպես անհնար է դասակարգային հաշտությունը բուրժուազիայի և աշխատավորության միջև, սովետական գրողները մշտապես ղեկավարվել ու ղեկավարվում են Վ. Ի. Լենինի հետևյալ ցուցումով. «Հարցը դրված է միայն այսպես, բուրժուական կամ սոցիալիստական գաղափարախոսություն։ Միջինը այստեղ չկա... Ուստի և սոցիալիստական գաղափարախոսության ամեն մի նսեմացում, ամեն մի հեռացում դրանից, այդպիսով իսկ նշանակում է բուրժուական գաղափարախոսության ուժեղացում»։

Առանձին հեղինակներ, հասարակական ու քաղաքական բարդ խնդիրներ, փաստեր ու իրադարձություններ գնահատելիս գիտական և գեղարվեստական ստեղծագործություններում երբեմն նահանջում են դասակարգային չափանիշներից, որն ակամայից հանգեցնում է դրանցում սոցիալիստական հասարակության գաղափարախոսությանը խորթ հայացքների դրսևորման։

Դիպուկ է ասել ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXVI համագումարում, հաշվետու զեկուցման մեջ. «...Գաղափարազրկության դրսևորումները, աշխարհայացքային անորոշությունը, առանձին պատմական իրադարձությունների և դեմքերի դասակարգային հստակ գնահատականից նահանջելը, ունակ են վնաս հասցնելու անգամ շնորհալի մարդկանց ստեղծագործությանը։ Մեր քննադատները, գրական հանդեսները, ստեղծագործական միությունները և առաջին հերթին դրանց կուսակցական կազմակերպությունները պետք է կարողանան ուղղել նրանց, ովքեր շեղվում են։ Եվ, իհարկե, ակտիվորեն, սկզբունքորեն հանդես գալ այն դեպքերում, երբ երևան են գալիս մեր սովետական իրականությունը արատավորող ստեղծագործություններ։ Այստեղ մենք պետք է անհաշտ լինենք։ Կուսակցությունը անտարբեր չի եղել և չի կարող լինել մեր արվեստի գաղափարական ուղղվածության նկատմամբ»։

ՍՄԿԿ XXVI համագումարը նորովի շեշտեց սովետական բոլոր մարդկանց հայրենասիրության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով, ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրության ու բարեկամության անսասան հավատարմության ոգով դաստիարակելու անհրաժեշտությունը։

Սովետական գրականության կարևորագույն խնդիրներից է ինտերնացիոնալ դաստիարակությունը։ Անհրաժեշտ է վառ ու համոզիչ ցույց տալ, որ ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամությունն ու փոխօգնությունը այդ գաղափարների ու սկզբունքների կենդանի մարմնավորումն են, որ հայ ժողովուրդը սոցիալ-տնտեսական և կուլտուրական առաջընթացի գագաթներն է բարձրանում մեր երկրի եղբայրական ժողովուրդների համերաշխ ընտանիքում, տարբեր ազգերի ու ազգությունների զավակների հետ ուս-ուսի։

Հիանալի ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXVI համագումարում. «Մեր երկրում հարգվում են յուրաքանչյուր մարդու ազգային զգացումները, ազգային արժանապատվությունը։ ՍՄԿԿ-ն պայքարել է և միշտ վճռականորեն կպայքարի սոցիալիզմի բնույթին խորթ այնպիսի դրսևորումների դեմ, ինչպիսին են շովինիզմն ու նացիոնալիզմը, ամեն կարգի նացիոնալիստական շեղումների դեմ... Մենք դեմ ենք այն միտումներին, որոնց նպատակն է արհեստականորեն վերացնել ազգային առանձնահատկությունները։ Բայց մենք նույնքան էլ անթույլատրելի ենք համարում դրանց արհեստական ուռճացումը։ Կուսակցության սրբազան պարտքն է (իսկ մենք կավելացնենք՝ ու նաև գրողների) աշխատավորներին դաստիարակել սովետական հայրենասիրության և

սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, միասնական սովետական մեծ հայրենիքին պատկանելու հպարտ զգացումի ոգով»։

Կուսակցության XXVI համագումարը առանձնահատուկ ուշադրություն նվիրեց էկոնոմիկայի՝ որպես ժողովրդատնտեսական միասնական կոմպլեքսի դինամիկ և համամասնական զարգացմանը, միութենական հանրապետությունների կենսագործունեության բոլոր բնագավառների համաչափ աճին։

Կատարելագործելով ժողովրդատնտեսական միասնական կոմպլեքսը՝ ՍՍՀՄ ժողովուրդներն ստեղծում են ինտերնացիոնալ եղբայրության ամրապնդման նյութական առավել ամուր հիմքեր։ Երկրի ազգերի ու ազգությունների ամրապնդվող բարեկամությունն է կոմունիստական շինարարության պլանների իրագործման երաշխիքը։

Հայ ժողովուրդը անկեղծ սիրո զգացումներ, խորին հարգանք և անսահման երախտագիտություն է տածում մեր հայրենիքի բոլոր ժողովուրդների և, առաջին հերթին, ռուս մեծ ժողովրդի նկատմամբ, որը հիրավի անգնահատելի դեր է խաղացել մեր ժողովրդի սոցիալական և ազգային ազատագրության ու վերածննդի գործում։

Համագումարի բարձր ամբիոնից խորիմաստ խոսք հնչեց ռուս մեծ ժողովրդի հետ մեր հավիտենական բարեկամության կենսական իրողության մասին։ Ելույթ ունեցած ընկերները այդ առթիվ իրենց խոհերը հիմնավորեցին հայոց մեծերի՝ Թումանյանի, Իսահակյանի, Կոմիտասի և ուրիշների կարևոր մտքերով։ Արժե դրանց ավելացնել երկուսը ևս։ «Մեկ ուժ մը միայն, որուն ես գոնե անձնապես փարած էի սկիզբեն ի վեր, այդ ուժը, ըսելու պետք կա՞ միթե, ռուսական պետությունն է»,— այսպես է արտահայտվել Գր. Զոհրապը 1914-ին։

Իսկ հայ մշակույթի խոշորագույն երախտավորներից մեկը՝ Ա. Չոպանյանը, 1906 թվականին գրում էր.

«Ապուշություն է «ռուս» ըսելով չինովնիկները, կնուտը, սիպերիան, կախաղանը և բանտերը միայն տեսնել, ատոնք բոլորը ռուս ռեժիմին բացասական կողմն են... «ռուս» ըսելով ես կը հասկընամ ամեն ինչ, որ ռուս է, Գոգոլը, Դոստոևսկին, Տուրգենևը, Տոլստոյը, Գորկին, որոնք մտավորական բարերարներ են ամբողջ մարդկության համար... Կը հասկընամ ռուս ժողովրդին խանդոտ, գաղափարապաշտ, մարդասեր հոգին, կը հասկընամ ռուս զորության կատարած անուրանալիորեն գեղեցիկ ու մարդօգուտ դերը՝ մահմեդականությունը զսպելու և Թուրքիո գերի ազգության ազատման նպաստելու, կը հասկընամ ռուս գիտությունը, գեղարվեստը, կը հասկընամ ռուս ազատագրական շարժման բոլոր հանդուգն ու հոյակապ ճիգերը, բոլոր այն անբաղդատելի հերոսները, զոր տված է ռուս տարրը՝ ազատության դատին համար ու, վերջապես, «ռուս» ըսելով ես միշտ կհիշեմ բարիքը, զոր Մեծն Պետրոսի ցեղը ըրած է անցյալի մեջ՝ հայության և կը տեսնեմ օգուտը, զոր իմ ազգս կարող է ապագային մեջ քաղել ռուս զորությունեն»։

Ռուս ժողովրդի հետ ունեցած մեր բարեկամությունը, որ գալիս է դարերի խորքից, հայ ժողովրդի սրբության սրբոցն է։ Մեր պարտքն է աչքի լույսի պես պահպանել և աճող սերնդին հանձնել սովետական ժողովուրդների, ռուս մեծ ժողովրդի հետ հավերժական բարեկամության ու եղբայրության անմար ջահը։

Անհրաժեշտ է ամենուրեք խրախուսել, խթանել, նոր թափ ու եռանդ հաղորդել սոցիալիստական ազգերի հոգևոր արժույթների փոխհարստացման պրոցեսին, որի ակտիվ մասնակիցն են հայ գրականությունն ու մշակույթը։

Տարեցտարի ամրապնդվում են Հայաստանի և Միության մյուս եղբայրական հանրապետությունների գրական ու մշակութային կապերը։ Երկրի տարբեր քաղաքներում անցկացվող հայ գրողների, իսկ մեր հանրապետությունում՝ ՍՍՀՄ տարբեր ազգերի ու ազգությունների գեղարվեստական խոսքի վարպետների հոբելյանական հանդիսությունները, գրականության և թարգմանական արվեստի օրերը իրոք դարձել են համաժողովրդական տոներ, ուր թևածում է եղբայրության և բարեկամության ոգին, կատարյալ ինտերնացիոնալիզմի ոգին։ Սոցիալիստական համակեցությունն է, որ ազգային կուլտուրաներին հնարավորություն է ընձեռում հասնելու իրենց զարգացման բարձունքներին, հիրավի նոր խոսք ասելու, հանդես գալու ազգային անկրկնելի ու ինքնատիպ դիմա-



գծով ու գույներով, ստեղծում մի գրականություն, որ կոչվում է սոցիալիզմի առաջավոր գրականություն։

Այդ արգասաբեր համագործակցությունն առավել սերտորեն է համախմբում նրանց մի համերաշխ ընտանիքում, նպաստում կուլտուրաների փոխներգործությանն ու փոխհարստացմանը, հնարավորություն տալիս ռեալ կերպով, քննադատաբար գնահատելու իրենց արժանիքներն ու թերությունները, զերծ պահում ինքնահանգստացումից, նվաճված դափնիների վրա հանգչելուց։

Գրական կյանքի կարևոր կողմերից մեկը նոր ուժերի մուտքն է գրականության ասպարեզ։ Բայց նոր անունների երևան գալը այդ ստեղծագործող երիտասարդության շրջանում տարվող աշխատանքի նախնական օղակն է սոսկ։ Այստեղ գլխավոր խնդիրը ստեղծագործական անհատականության կազմավորմանը, գաղափարաբարոյական դիրքավորման կայունացմանը նպաստելն է։

Սոցիալիստական կուլտուրայի զարգացման նկատմամբ կոմունիստական կուսակցության ու սովետական պետության խոր հոգածությամբ է տոգորված ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Ստեղծագործական երիտասարդության հետ տարվող աշխատանքի մասին» որոշումը։ «Երիտասարդ արվեստագետների հետ տարվող ողջ աշխատանքը,— շեշտված է որոշման մեջ,— պետք է հիմնված լինի նրանց նկատմամբ զգայուն, հարգալից վերաբերմունքը պահանջկոտության և սկզբունքայնության հետ զուգորդելու վրա»։

Մեր շատ երիտասարդ գրողների առաջին ստեղծագործություններում արդեն դրսևորվում է նրանց ժամանակակից մտահորիզոնը, նրանք ձգտում են լրջորեն թափանցել կյանքի պրոցեսների մեջ, արտացոլել մեր իրականության հրատապ պրոբլեմները։

Այնուամենայնիվ, չնայած ձեռք բերած որոշ հաջողություններին, մենք առիթ չունենք ինքնահանգստացման։ Այս հանգամանքը մեկ անգամ ևս վկայեց օրերս Կենտրոնական կոմիտեում, ՍՄԿԿ Կենտկոմի «Ստեղծագործական երիտասարդության հետ տարվող աշխատանքի մասին» որոշման կատարման ուղղությամբ Հայաստանի գրողների միության կուսկազմակերպության բյուրոյի հաշվետվությունը քննարկելիս։ Երիտասարդների ստեղծագործության վերլուծությունը ցույց է տալիս, որ սովետահայ գրականության այս ասպարեզում գործերի վիճակն այնքան էլ բարվոք չէ։

Երիտասարդ որոշ գրողների պակասում է տեսադաշտի լայնությունը, հասարակական-քաղաքական մտածողության խոր, մեծ կուլտուրան։ Մասնավորապես մտահոգիչ է երիտասարդական պոեզիայի վիճակը։ Քիչ չեն երիտասարդ այն բանաստեղծները, որոնց ստեղծագործության մեջ նկատվում է քաղաքացիական վեհերոտություն, գեղարվեստական անկատարելություն, լոկ մանր, մասնավոր խնդիրներ արծարծելու միտում։ Այսինքն, նրանց պակասում է այն գիտակցությունը, որն այնքան լավ է ձևակերպել Եղիշե Չարենցը. «Թե ուզում ես երգդ լսեն՝ ժամանակիդ շունչը դարձիր»։

Երիտասարդների դաստիարակության գործում մանրուքներ չկան։ Խրախուսելով այն, ինչ տաղանդավոր է, իրական, չպետք է վախենալ ճշմարտությունն ասելու նրանց ստեղծագործության մասին, որքան էլ այդ ճշմարտությունը երբեմն դառը լինի։

1916 թվականին հրապարակված «Երիտասարդության ինտերնացիոնալը» հոդվածում Վ. Ի. Լենինը, անդրադառնալով երիտասարդության սոցիալիստական կազմակերպությունների գործունեությանը, խորհուրդ էր տալիս ամեն կերպ օգնել նրանց, հնարավորին չափ համբերությամբ վերաբերվել նրանց սխալներին, ջանալով դրանք շտկել աստիճանաբար և առավելապես համոզելու միջոցով։ Սակայն Լենինը միաժամանակ սովորեցնում էր. **«Մենք չպետք է շողոքորթենք երիտասարդությանը»**։

Հարկավոր է ո՛չ միայն հոգալ երիտասարդության մասին, այլև պահանջել նրանից։ Երիտասարդների ստեղծագործության նկատամբ հատկապես խստապահանջ պետք է լինեն մեր անվանի ավագ գրողներն ու քննադատները, մշտապես հիշելով, որ իրենց կարծիքը շատ կարևոր և արժեքավոր է երիտասարդների համար։

Սովետական գրականության գլխավոր խնդիրներից մեկն է մատաղ սե-

րնդի գաղափարական-գեղագիտական դաստիարակությունը, որի համար է կոչված մեր մանկապատանեկան գրականությունը։ Մանկությունն ու պատանեկությունը մարդկային կյանքի ամենաերջանիկ շրջանն է։ Բայց նաև այն շրջանն է, երբ ձևավորվում է ապագա անհատականությունը, քաղաքացին, հայրենասերն ու ինտերնացիոնալիստը։ Մեր այսօրվա սերունդը, այսօրվա մանուկներն ու պատանիները XXI դարն են մտնելու որպես սոցիալիստական հայրենիքի լիիրավ տեր ու տնօրեններ, և թե ինչպիսին կլինեն նրանք, ինչպիսին կլինի մեր հասարակության ապագան, կախված է մեզանից, մեր դաստիարակչական աշխատանքից, նաև՝ մեր գրողներից ու արվեստագետներից։ Հետևաբար, ամենայն սկզբունքայնությամբ պետք է դրվի սովետահայ մանկապատանեկան գրականության հետագա զարգացման, այն նոր ու տաղանդավոր ստեղծագործություններով հարստացնելու հարցը։

Երեխաներն ու դեռահասները բազմաթիվ հարցերի պատասխաններ են այսօր ուզում ստանալ։ Այդ պատասխանները պետք է տալ տաղանդավոր գրքերի, մանկական կինոնկարների, նաև տաղանդավոր մանկական ներկայացումների միջոցով, որոնք քիչ են գրվում, չեն նկարահանվում և բոլորովին անհետացել են թատրոնների բեմահարթակներից՝ իրենց հետ անցյալի հուշ դարձնելով «ցերեկային ներկայացում» հասկացողությունը։ Այս առումով, թերևս, հաճելի բացառություն էր Կոռնեյ Չուկովսկու «Մոյդոդիր» հեքիաթի մոտիվներով համանուն բալետային ներկայացումը Ալ. Սպենդիարյանի անվան օպերայի և բալետի բեմում՝ Երևանի պարարվեստի ուսումնարանի աշակերտների մասնակցությամբ, երևույթ, որն արժանի է ընդօրինակման։

Աճող սերնդի դաստիարակության կարևոր խարիսխը և նրա մտավոր կրթության ապահովման գործում մեր հիմնական մտահոգություններից մեկը եղել և մնում է հայոց և ռուսաց լեզուների ուսուցումը։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը հատուկ որոշումներ է ընդունել այդ առթիվ և առաջիկայում էլ անդրադառնալու է դրանց կատարման ընթացքին։ Կենտկոմի, կուսակցական ու սովետական մարմինների ձեռնարկած միջոցառումները բավականին արդյունավետ են։ Մեկ տարի առաջ ընտրողների հետ հանդիպման առիթով ընկ. Կ. Դեմիրճյանն ասաց. «Ամեն մի աշակերտ, անկախ իր հակումներից, անկախ այն բանից, թե վաղը իր համար գործունեության որպիսի ոլորտ կընտրի, դպրոցում սովորելու տարիներին պետք է խորապես, կատարելապես ուսումնասիրի մայրենի լեզուն, նրա հարստություններն ու առանձնահատկությունները, զգա նրա ամբողջ գեղեցկությունն ու հմայքը, սովորի ճիշտ, արտահայտիչ խոսել, հակիրճ, հստակ շարադրել իր մտքերը։ Մայրենի լեզվի հետ մեկտեղ, անհրաժեշտ է նաև կատարելապես իմանալ ռուսաց լեզուն՝ եղբայրական մեծ ժողովրդի լեզուն, սովետների երկրի ազգամիջյան հաղորդակցման լեզուն, Լենինի լեզուն»։

Մենք այսուհետ ևս պետք է ձգտենք կատարելագործել հայոց, ռուսաց լեզուների դասավանդումը, ձգտենք, որպեսզի մեր երեխաները տիրապետեն դրանց ու նաև մի երրորդի՝ օտար լեզվի։ Դա է պահանջում հասարակության առաջընթացի շահը, մեր ժողովրդի մշակույթի հետագա զարգացումը։

Մեր կյանքը ճշմարտացիորեն արտացոլելու, ժամանակակից քաղաքի և գյուղի աշխատավորի կերպարը կերտելու, մարդկային կեցության և հոգեբանության խորքերը պեղելու, նոր մարդու բարոյագաղափարական դաստիարակության գործին նպաստելու խնդիրների լույսի ներքո, խնդիրներ, որոնք կուսակցությունը դրել է գրականության առջև, մենք առավել ակտիվություն ենք ակնկալում գրական-գեղարվեստական քննադատությունից։

Սովետահայ գրականության վերջին տարիներին ստեղծված բարձրարվեստ երկերին յուրահատուկ են առօրյա կյանքում դրական հերոսի որոնումները, նրա օրինակով ընթերցող զանգվածներին դաստիարակելու և լավատեսություն ներշնչելու միտումները։ Հենց այս է սոցիալիստական ռեալիզմի գրականության հիմնական կոչումը, նրա գլխավոր առաքելությունը։ Անհրաժեշտ է միայն, որպեսզի մեր քննադատներից ոմանք կյանքի հետ անմիջական և հետևողական շփումներից չխուսափելով՝ նորացնեն իրենց պատկերացումները դրական հերոսի հատկանիշների և էության մասին։ Այդ դեպքում մեր քննադատությունը,



ընդհանուր առմամբ, ավելի գործուն ազդեցություն կունենար սովետահայ գրական պրոցեսի վրա, առանց նախապաշարումների կտեսներ դրականը և կառանձնացներ վրիպումները, որոնք, իհարկե, անխուսափելի են մի այնպիսի դժվարին ու բարդ պրոցեսում, որպիսին է գեղարվեստական ստեղծագործությունը։

ՍՄԿԿ Կենտկոմի «Գրական-գեղարվեստական քննադատության մասին» որոշումը պարտավորեցնում է ստեղծագործական միություններին՝ մշտապես հոգալ գեղարվեստական քննադատության մակարդակի բարձրացման համար, դաստիարակել որակյալ արվեստաբանների երիտասարդ կադրեր, պայքարել կանխակալ գնահատումների, քննադատության ոլորտում դեռևս գոյատևող «մերկացման» իներցիայի դեմ, և, մյուս կողմից էլ, այն ծայրահեղությունների դեմ, երբ հանիրավի մեծարվում և դրվատանքի են արժանանում գաղափարապես խոցելի ու գեղարվեստապես թույլ շատ ստեղծագործություններ։

Մեր քննադատությունը կարևոր դեր ունի սոցիալիստական արվեստի նվաճումների պաշտպանության, սոցիալիստական ռեալիզմի նորարարական էության խոր հիմնավորման, սովետական հասարակարգը զրպարտողների, նրա թշնամիների դեմ մղվող հետևողական պայքարում։ Հանդես գալով ընդդեմ գաղափարախոսական խաղաղ համագործակցության, ընդդեմ բուրժուական գաղափարախոսության ամեն տեսակ զիջումների, քննդատությունը պետք է օգնի գրողներին՝ կողմնորոշվելու աշխարհում տեղի ունեցող գաղափարական պայքարում։ Գաղափարագեղագիտական այլազան սխալ հայացքների դեմ մղվող պայքարում մեր քննադատությունը դեռևս բավարար հարձակողական չէ։

Հասկանալի է որ մեր քննադատությունը պետք է լինի հիմնավորված, խոր, համոզիչ։ Կուսակցական մարտունակություն, սկզբունքային շիտակություն, պրոֆեսիոնալ խստապահանջություն— ահա ինչ ենք սպասում մենք մեր քննադատությունից։ XX դարի գրականության բարդ երևույթները վերլուծելիս մարքսիստական քննադատությունը չի կարող անտեսել ամենագլխավորը՝ դասակարգային դիրքը, արվեստի կուսակցականության և ժողովրդայնության սկզբունքները։

Սովետական Հայաստանը միշտ էլ հոգատարություն է ցուցաբերում ճակատագրի կամքով օտարության մեջ սփռված աշխատավոր հայի նկատմամբ։ Գնալով ընդլայնվում և ամրապնդվում են սփյուռքահայության հետ հանրապետության հասարակական տարբեր կազմակերպությունների, այդ թվում նաև գրական կապերը, որոնց մեծապես նպաստում են մի շարք միջոցառումների մշակումն ու կենսագործումը։ Այդ կապերի լավագույն արտահայտություններից մեկն էլ սփյուռքահայ շուրջ երկու տասնյակ առաջադեմ գրողների մասնակցությունն էր Հայաստանի գրողների VIII համագումարին։

Սփյուռքահայ առաջադիմական գրականությունը եղել և մնում է հայ գրականության կարևոր օղակներից մեկը։ Մասնավորապես վերջին տասնամյակների ընթացքում զգալի փոփոխություն է կրել սփյուռքահայ գրականության հիմնական թեմատիկան։

Երեսնականներին այսպիսի մոտիվներն էին իշխողը.

> «Ի՞նչ կրնամ տալ քեզի, քո՛յր,
> Սրտիս մեջ կա տիեզերք,
> Թշվառություն՝ ափիս մեջ,
> Քույր, ինչ կրնամ տալ քեզի։

Կամ՝

> Ընդվզումի ոչ մեկ ձայն
> Կելլե կուրծքես քայքայուն,
> Կամքիս ղեկն է ջախջախվեր,
> Դիպվածը զիս կքշե։

Այժմ դրանք գրեթե չկան, համենայն դեպս տիրական չեն սփյուռքի առաջադիմական գրականության մեջ։ Եթե անցած ժամանակներում սփյուռքահայ գրականությունը, հայ ժողովրդի ճակատագրի տրամաբանությունից ելնելով, անդրադառնում էր կորած հայրենիքի, սփյուռքահայ հատվածի անհետացման

վտանգի խնդիրներին, ապա այսօր, աչքի առաջ ունենալով պետականություն ձեռք բերած հայության ներկան, տոգորված մեր ժողովրդի ապագայի նկատամբ լավատեսական հավատով, ազգապահպանման և գոյատևման միակ երաշխիքը նա տեսնում է մայր հայրենիքի՝ Սովետական Հայաստանի մեջ: Սա է այն ռեալ հիմքը, որ խթանում է սփյուռք—հայրենիք բարոյական և հոգևոր կապերի ամրապնդումը: Հայապահպանման խնդիրն ավելի սերտորեն է միահյուսվում և օր-օրին առավել չափով է կապվում այն հարաճուն առաջընթացի հետ, որ ապրում է Սովետական Հայաստանը՝ մեր սիրելի հայրենիքը: Այս երևույթով են պայմանավորված ստեղծագործական այն նոր որոնումները, որոնք այսօր բնորոշում և հարստացնում են սփյուռքահայ գրականությունը:

«Ճամփաները շատ են, բայց ճանապարհը մեկ է,— գրում է սփյուռքահայ անվանի բանաստեղծ Գառնիկ Ադդարյանը,— և այդ ճանապարհը աշխարհի բոլոր կողմերեն կտանի դեպի փրկության միակ ափը, դեպի մեր հայրերու երազի ամբողջացման միակ խարիսխն ու մեկնակետը, դեպի Հայաստան աշխարհ, Խորհրդային Հայաստան»:

Սփյուռքահայ կյանքի և մասնավորապես գրականության նկատմամբ մայր հայրենիքի ունեցած հոգատարության վկայություններից մեկն է ՀՍՍՀ Գերագույն սովետի նախագահության հրամանագիրը՝ սփյուռքահայ մշակույթի, մանկավարժության, գիտության, ինչպես նաև հասարակական, քաղաքական ականավոր գործիչների համար հատուկ մրցանակներ հիմնելու մասին: Խորհրդանշական է, որ դրանց շնորհումը կատարվելու է մեր սոցիալիստական հանրապետության ազգային տոնի՝ Հայաստանում սովետական իշխանության հաստատման օրը՝ նոյեմբերի 29-ին:

Մենք բոլոր հնարավորություններն ունենք հայրենիք—սփյուռք կապերն առավել ամրապնդելու համար: Չի կարելի գոհացուցիչ համարել, երբ մեր հրատարակչությունները քիչ են տպագրում սփյուռքահայ առաջադեմ գրողների երկերը, գրական մամուլը հետևողականորեն չի ներկայացնում ու լուսաբանում սփյուռքի գրական շարժումները, ինչպես նաև առանձին գրողների:

Կարծում ենք, որ սփյուռքահայ գրողները ևս, իրենց հերթին, հրապարակախոսական հոդվածների, էսսեների ու գեղարվեստական գրականության ընձեռած բոլոր միջոցներով, սփյուռքահայությանը ավելի լայնորեն կներկայացնեն Սովետական Հայաստանի այսօրվա իրական պատկերը, ցույց կտան մայր հայրենիքի սոցիալ-տնտեսական և մշակութային նվաճումները, այն ամենը, ինչով այսօր ապրում և շնչում է մեր հանրապետությունը:

Հայաստանի գրողների VIII համագումարում եղան շատ մտորումներ ու վերլուծություններ, խելացի և խորիմաստ առաջարկություններ ու կարծիքներ, որոնց հիմքում ընկած էր կուսակցության և ժողովրդի հետ կոմունիստական շինարարությանն ակտիվորեն մասնակցելու՝ գրողների խորապես գիտակցված ձգտումը:

Գրողների միության առաջին քարտուղար ընկ. Վ. Պետրոսյանի բովանդակալից զեկուցման մեջ, հարակից զեկուցումներում և ելույթներում իրավացիորեն շեշտվեց այն միտքը, որ սովետահայ գրականությունը արժանավոր ժառանգորդն ու շարունակողն է հայ դասական և սովետական գրականության ավանդույթների, որ այն միշտ աչքի է ընկնում կյանքը խորությամբ ուսումնասիրելու, ժողովրդի ամենանվիրական խոհերն ու երազանքներն արտահայտելու պատրաստակամությամբ:

Մեր ժողովուրդը ջերմորեն սիրում և հարգում է իր գրողներին, հավատում նրանց և մեծ սպասելիքներ ունի նրանցից: Ի դեմս գրողների, նա տեսնում է կուսակցության մարտական օգնականներին, այն կուսակցության, որի հետ հավերժորեն կապել է իր բախտը, որի դրոշի ներքո վստահորեն ընթանում է դեպի մարդկության լուսապայծառ ապագան՝ դեպի կոմունիզմ: Ժողովուրդը գրողից ակնկալում է ծանրակշիռ, իմաստուն խոսք, լուսավոր միտք ու ոգեշնչող զգացմունքներ, այն ամենը, ինչ թևավորում է պայքարում և համակում հաղթանակի հավատով:

---

# ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՊՐՈԳՐԵՍԸ

**Ա. Մ. ԷԿՄԱԼՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների
թեկնածու, դոցենտ

ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐՆ ի մի բերեց սովետական հասարակության սոցիալ-տնտեսական զարգացման ո՛չ միայն տասներորդ հնգամյակի, այլև անցած ամբողջ տասնամյակի արդյունքները: Այն հնարավորություն ընձեռեց ավելի խոր ըմբռնելու մեր երկրի անցած զարգացման ուղին, ձեռքբերումների նշանակությունը, քննադատաբար վերլուծելու առկա դժվարություններն ու վրիպումները, նախանշելու առաջիկա անելիքները: ՍՄԿԿ XXVI համագումարը սահմանեց սովետական հասարակության սոցիալ-տնտեսական, քաղաքական ու հոգևոր զարգացման հիմնական ուղղությունները նոր հնգամյակում ու տասնամյակում, առաջադրեց նոր պրոբլեմներ, որոնց լուծման նպատակին պետք է կենտրոնացվեն կուսակցության ու ժողովրդի ջանքերը:

Կոմունիստական շինարարության արդի փուլում մեր երկրի զարգացման թե՛ արդյունքները և թե հեռանկարները վկայում են, որ «կուսակցության լենինյան գլխավոր գիծը,— ինչպես ասաց համագումարում Լ. Ի. Բրեժնևը,— վստահորեն կենսագործվում է»: 70-ական թվականներին որակական առաջընթաց քայլ է կատարվել հասուն սոցիալիստական հասարակարգի հետագա կատարելագործման նպատակով:

ՍՍՀՄ տնտեսական և սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղություններում նշված է. «Սկսված տասնամյակը նոր խոշոր փուլ է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, հասարակական հարաբերությունների զարգացման, նոր մարդու ձևավորման գործում»: Հիրավի, համագումարի այդ կանխագծումների հաջող իրականացումը նոր փուլ է մեր հասարակության կյանքում: Սոցիալիզմը, հատկապես հասուն սոցիալիստական հասարակությունը, սոցիալական առաջընթացի այն բարձրագույն աստիճանն է, որին մարդկությունը հասել է իր առաջընթաց զարգացման պրոցեսում: Սոցիալիզմի հաղթանակը վկայում է, որ նոր հասարակական-տնտեսական ֆորմացիայի ծնունդն ու զարգացումը պատմության մեջ առաջին անգամ տեղի են ունենում ոչ թե տարերայնորեն, այլ աշխատավորական մասսաների գիտականորեն հիմնավորված սոցիալական գործունեության արդյունք են:

Մարդկային գործունեության հոգևոր ներունակության վերաբերյալ հարցը փիլիսոփայական գիտության հրատապ խնդիրներից է, որը դեռևս կարոտ է բազմակողմանի հետազոտության: Թեպետև գիտության մեջ այն մինչև այժմ հետազոտվել է առավելապես նյութական-արտադրական աշխատանքի հոգևոր ներունակության տեսանկյունից, այնուամենայնիվ, այդ եղանակով ստացված որոշ հետևություններ, հավանաբար, կարող են տարածվել մարդկային ողջ գործունեության հոգևոր ներունակության ըմբռնման վրա:

Կ. Մարքսը Կապիտալում գրել է. «Աշխատուժ կամ աշխատունակություն ասելով մենք հասկանում ենք ֆիզիկական ու հոգևոր այն ընդունակությունների ամբողջությունը, որ ունի մարդու օրգանիզմը, նրա կենդանի անձնավորությունը և որ նա գործադրում է ամեն անգամ, երբ որևէ սպառողական արժեք է ար-

տադրում» (Հ. I, էջ 178)։ Այդ երկու ընդունակությունների էլ անհրաժեշտ հիմք են ո՛չ միայն հասարակական արտադրության զարգացման ցանկացած փուլի, այլև աշխատանքային գործունեության ամեն մի այլ ձևի համար։

Աշխատանքային գործունեության հոգևոր ներունակությունը ենթադրում է համակցությունը սուբյեկտի ինտելեկտուալ-ճանաչողական ունակությունների, որոնք երևան են գալիս անմիջականորեն՝ աշխատանքային գործունեության ընթացքում։ Դրանք հանդես են գալիս մի կողմից օբյեկտիվորեն ճշմարիտ առօրեական գիտելիքի կամ գիտական գիտելիքի, մյուս կողմից՝ տարերայնորեն գոյացած հմտությունների կամ գիտականորեն հիմնավորված մեթոդների եղանակով, ինչպես և՝ միջնորդավորված, նյութական-արհեստական համակարգերում և աշխատանքային պրոցեսի դրանց համապատասխան կազմակերպման ու իրագործման տիպերում ինտելեկտի առարկայացած ուժի ձևով։

Հոգևոր ներունակության այս ձևերի դրսևորումը աշխատանքային գործունեության ընթացքում պայմանավորվում է մի շարք գործոններով։ Հետազոտության ընթացքում առայժմ հաջողվել է բացահայտել սոսկ նյութական-արտադրական աշխատանքի հոգևոր ներունակության զարգացման օրինաչափությունները։ Մասնավորապես սահմանված է այդ պրոցեսում նախ՝ աշխատանքի միջոցների զարգացման մակարդակի, այնուհետև գիտության զարգացման մակարդակի տեղն ու դերը, ինչպես և դրա այն առանձնահատկությունների նշանակությունը, որոնց պայմաններում է ընթանում աշխատանքային պրոցեսը։

Որքան բարդ ու մասշտաբային են խնդիրները, որքան խոր են կատարվող վերափոխումները, այնքան ավելի ցայտուն է դրսևորվում առօրեական գիտակցության՝ որպես այդ գործունեության հոգևոր պոտենցիայի, սահմանափակությունը, այնքան ավելի հարկադրական է դառնում գիտական գիտելիքի, գիտականորեն հիմնավորված մեթոդների պահանջը։ Հատուկ նշանակություն ունի գիտակցության այն աստիճանը, որով գործունեության սուբյեկտը լուծում է այդ խնդիրները։ Սոցիալական առաջընթացի անհրաժեշտ պայմանն է ավելի բարդ ու մասշտաբային խնդիրների գիտական խոր պարզաբանումը։ Ուստի սոցիալական առաջընթացի համեմատ՝ առօրեական գիտակցության, տարերայնորեն առաջացած հմտությունների գործողության ասպարեզը հետզհետե նեղանում է, իր տեղը զիջելով գիտական գիտելիքին, գիտականորեն հիմնավորված մեթոդներին։

Այսպիսով սոցիալիզմը, որն առ այսօր սոցիալական պրոգրեսի բարձրագույն աստիճանն է, ունակ է լուծելու այնպիսի խնդիրներ, որոնք իրենց բովանդակությամբ ու մասշտաբով գերազանցում են այն ամենը, ինչ կատարվել է նախասոցիալիստական ժամանակաշրջանում։ Այդ իսկ պատճառով սոցիալիզմն ավելի մեծ չափով է զգում գիտության պահանջը և ավելի մեծ չափով է կիրառում այն, քան որևէ այլ հասարակություն։

Հիրավի, ՍՄԿԿ սոցիալ-տնտեսական ստրատեգիայի առավել բնորոշ հատկանիշներից է նրա խոր գիտական բնույթը։ Սոցիալիզմի կառուցումը և զարգացումը, վերաճումը կոմունիստական ֆորմացիայի բարձրագույն փուլին անբաժանելի են առաջավոր գիտությունից։ «Կոմունիստների կուսակցությունը,— շեշտեց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXVI համագումարում,— ելնում է այն բանից, որ առանց գիտության՝ նոր հասարակության կառուցումը պարզապես աներևակայելի է»։ Հետևաբար, սոցիալիզմի պայմաններում սոցիալական և գիտական առաջընթացն անբաժանելի են միմյանցից։ Սոցիալական և գիտական պրոգրեսի օրգանական կապը սոցիալիստական հասարակության մեջ դրսևորվում է մի շարք առումներով. նախ՝ որ սոցիալիզմի ծագումն ու զարգացումն անմիջականորեն առնչվում են մարքս-լենինյան գիտության, նրա առաջընթացի հետ։ Մարքսիզմ-լենինիզմը եղել և մնում է պրոլետարիատի դասակարգային պայքարի, սոցիալական իրողության հեղափոխական վերակերտման ոլորտում հոգևոր ներունակության կարևորագույն բաղադրամաս, եղել ու մնում է սոցիալիզմի կառուցման, նրա՝ կոմունիզմի վերաճման հեղափոխական տեսությունը։ Այդ պրոցեսն անիմաստ է առանց գիտական գիտելիքների ողջ գումարի լայն օգտագործման։ «Հարկավոր է,— գրել է Վ. Ի. Լենինը,— վերցնել ամբողջ գիտությունը, տեխնիկան, բոլոր գիտելիքները, արվեստը։ Առանց այս բանի



մենք չենք կարող կոմունիստական հասարակության կյանքը կառուցել» (Երկեր, հ. 29, էջ 67)։

Սակայն գիտության նկատմամբ սոցիալիստական շինարարության հասարակական պահանջը չէր կարող չհանգեցնել և իրոք պատմական սեղմ ժամկետում հանգեցրեց հայրենական գիտության աննախընթաց զարգացման։ Այսպիսով, գիտական առաջընթացը սոցիալիստական հասարակության մեջ իր հերթին անմիջականորեն պայմանավորված է այդ հասարակության սոցիալ-տնտեսական պրոգրեսով։

Վերջապես, հասուն սոցիալիստական հասարակության ո՛չ միայն անցյալն ու ներկան, այլև առավելապես նրա հետագա կատարելագործման հեռանկարները հուշում են սոցիալիստական հասարակության սոցիալ-տնտեսական պրոգրեսի և գիտական առաջընթացի զուգակցման անհրաժեշտությունը։ Դրա լավագույն հաստատումն է կուսակցության XXVI համագումարի մշակած սոցիալ-տնտեսական ստրատեգիան, որի հաջող կենսագործումը կնշանավորի մի նոր առաջընթաց քայլ դեպի կոմունիզմ։ Միաժամանակ այդ խնդիրների լուծումն անհրաժեշտաբար ենթադրում է հայրենական գիտության զարգացման մի նոր աստիճան։

Կուսակցության XXV համագումարում միանգամայն տեղին նշվեց. «Մենք՝ կոմունիստներս, ելնում ենք այն բանից, որ միայն սոցիալիզմի պայմաններում է գիտատեխնիկական հեղաշրջումը ստանում ճիշտ, մարդու և հասարակության շահերին համապատասխանող ուղղություն։ Իր հերթին, միայն գիտության ու տեխնիկայի առավել արագ զարգացման հիման վրա կարող են լուծվել սոցիալական հեղափոխության վերջնական խնդիրները, կարող է կառուցվել կոմունիստական հասարակարգ» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 70)։

Մարքս-լենինյան տեսության այս հիմնարար դրույթին լիովին համապատասխան, ՍՄԿԿ XXVI համագումարը գալիք տասնամյակի համար առաջադրեց կոմունիզմի ուղիով սովետական հասարակության առաջընթացի մի այնպիսի ծրագիր, որի իրագործման անհրաժեշտ պայմանն է գիտատեխնիկական հեղափոխության զարգացման տեմպերի արագացումը։ Սովետական մարդկանց բարեկեցության հետագա աճի ապահովումը, որը կուսակցությունը բնորոշել է որպես տասնմեկերորդ հնգամյակի գլխավոր խնդիր, բովանդակում է միջոցառումների այնպիսի համակարգ, որն ուղղված է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծմանը, հասարակական հարաբերությունների կատարելագործմանը և նոր մարդու կերպավորմանը՝ եռմիասնական խնդիր, որի լուծմամբ է հիմնականում պայմանավորված հասուն սոցիալիզմի վերաճումը կոմունիզմի։

Հարկ է նշել, որ մարդկանց բարեկեցության հետագա աճն անմիջականորեն պայմանավորված է հիշյալ հարցի հաջող լուծմամբ։ Իր հերթին այդ եռմիասնական խնդրի բաղադրիչներից յուրաքանչյուրի հաջող լուծումը սերտորեն առնչվում է մյուսների հետ։ Վերջապես, այդ խնդիրներից յուրաքանչյուրը կարող է լուծվել միայն գիտության հիման վրա, դրա էական առաջընթացի պայմաններում։ Տասնմեկերորդ հնգամյակում,— շեշտեց համագումարը,— գիտության ու տեխնիկայի զարգացումը պետք է ե՛լ ավելի մեծ չափով ենթարկվի սովետական հասարակության տնտեսական և սոցիալական խնդիրների լուծմանը, էկոնոմիկան ինտենսիվ զարգացման ուղին փոխադրելու արագացմանը, հանրային արտադրության արդյունավետության բարձրացմանը։ Դրանում է տասնմեկերորդ հնգամյակի գլխավոր խնդրի՝ սովետական մարդկանց բարեկեցության հետագա աճի ապահովման գիտատեխնիկական և տնտեսական երաշխիքը։

Կուսակցությունը ելնում է նախ և առաջ այն ռեալ հնարավորություններից, որոնք առկա են 80-ական թվականների շեմին։ Դրանք են՝ երկրի տնտեսական և գիտատեխնիկական հզոր պոտենցիալը, որակյալ, իրենց գործին նվիրված կադրերի բազմամիլիոնանոց բանակը։ Կուսակցությունը ելնում է նաև գալիք տասնամյակում մեր հասարակության պահանջմունքների օրինաչափ աճից, որոնց բավարարման համար անհրաժեշտ է էապես ավելացնել ժողովրդատնտեսական ներդրումները և սոցիալական նպատակներով կատարվող ծախսերը։ Վերջապես, կուսակցությունը հաշվի է առնում, որ 80-ական թվա-

կաններին երևան կգան երկրի տնտեսական զարգացումը բարդացնող մի շարք գործոններ։ Դրանցից են՝ ծախսերի մեծացումը երկրի արևելյան և հյուսիսային շրջանները յուրացնելու կապակցությամբ, շրջապատող միջավայրի պահպանման ծախսերի անխուսափելի աճը, ինչպես նաև աշխատանքային ռեսուրսների կանխատեսվող կրճատումը։ Լրացուցիչ լուրջ ծախսեր և ջանքեր կպահանջվեն ոչ քիչ թվով հին ձեռնարկությունների, ճանապարհների, տրանսպորտի և կապի միջոցների արմատական վերակառուցման համար, քանի որ դրանց ներկայիս վիճակը չի համապատասխանում երկրի ժողովրդական տնտեսության այսօրվա պահանջներին։

Մշակելով ուղղությունները, կուսակցությունը հաշվի է առնում այն հանգամանքը, որ արտադրական և սոցիալական բնույթի ժողովրդատնտեսական բոլոր խնդիրների լուծման անհրաժեշտ նախադրյալն է ծանր արդյունաբերության, հատկապես նրա բազային ճյուղերի, և, առաջին հերթին, ջերմաէներգետիկ ճյուղի զարգացումը։ Էներգետիկայի պլանավորված զարգացումը, լինելով մեր հասարակության նյութատեխնիկական բազայում ծրագրված որակական խոր տեղաշարժերի կարևորագույն կողմերից մեկը, ակնհայտ ցուցադրում է, որ այդ տեխնիկական և տնտեսական պրոբլեմի լուծումը պայմանավորված է գիտության առաջընթացով։ Իրոք, էներգետիկայի զարգացումը պետք է իրագործվի ջերմաէներգետիկ բալանսի կառուցվածքը բարելավելու միջոցով, այսինքն՝ նավթի, որպես վառելանյութի, օգտագործման բաժնի նվազեցմամբ և այն ածխով, գազով, ինչպես նաև քարածխից ստացվող հեղուկ վառելիքով փոխարինմամբ։ Ատոմային էներգետիկայի, այդ թվում արագ նեյտրոններով ռեակտորների յուրացման, արագացումը դառնում է էներգետիկայի զարգացման ամենակարևոր ուղղություններից մեկը։ Հետևաբար, կենսական անհրաժեշտություն է՝ գիտության համապատասխան բնագավառներում ապահովել հետազոտական աշխատանքների առաջանցիկ զարգացում, մասնավորապես էներգետիկայի սկզբունքորեն նոր աղբյուրների որոնում, ներառյալ ջերմամիջուկային էներգետիկայի հիմունքների ստեղծումը։ Ավելին, այդ պրոբլեմների լուծման ուղղությամբ յուրաքանչյուր նոր քայլ արդեն ինքնին գիտական խոշոր նվաճում կլինի, ուղենիշ կհանդիսանա գիտության համապատասխան ճյուղի զարգացման գործում։

Գիտության առաջընթացի հետ պատշաճ կապի մեջ է հասարակության նյութատեխնիկական բազայի մեկ այլ կարևորագույն բաղադրամաս՝ տեխնիկայի պլանավորված զարգացումը։ Ըստ XXVI համագումարի որոշումների, 80-ական թվականներին երկրի արտադրաուժերը մի նոր էական առաջընթաց քայլ կկատարեն տեխնիկայի ասպարեզում մեքենաներից ավտոմատներին անցնելու ճանապարհին։ Պլանավորված է ավտոմատ մանիպուլյատորների (ձեռքի բարդ աշխատանք կատարող արդյունաբերական ռոբոտների), միկրոպրոցեսների և միկրոէլեկտրահաշվիչ մեքենաների օգտագործմամբ ավտոմատ կառավարման ներկառույց սիստեմների մասսայական արտադրություն և կիրառում ժողովրդական տնտեսության մեջ։ Նախատեսված է ընդլայնել ավտոմատացված արտադրամասերի ու գործարանների ստեղծումը, արագացնել տեխնոլոգիական պրոցեսներում արտադրանքի որակի վերահսկողության և փորձարկման ավտոմատացված մեթոդների ու միջոցների արմատավորումը։ Այդ ամենը, ինչպես համագումարում ասաց Լ. Ի. Բրեժնևը, մեր հասարակության առջև բացում է հիրավի հեղափոխական հնարավորություններ։ Բայց հասարակության նյութատեխնիկական բազայի այս ուղղությունը նույնպես հնարավոր է կատարելագործել միմիայն գիտության ու տեխնիկայի հասումների օգտագործման հիման վրա, ինչպես դա ուղղակի ասված է «Հիմնական ուղղություններում»։

Սակայն, իրոք, հեղափոխական այդ հնարավորությունների իրագործումը, որոնք մեր հասարակությանն ընձեռում են գիտության նվաճումների հիման վրա ստեղծված տեխնիկական միջոցների նոր տեսակները, ամենից առաջ պայմանավորված է մեքենաշինության վիճակով, հատկապես մետաղների և այլ նյութերի մշակման համար կիրառվող տեխնոլոգիայով։

Աշխատանքի առարկայի փոխակերպման գերազանցապես մեխանիկական



եղանակներից ոչ մեխանիկական, այն է՝ էլեկտրաքիմիական, պլազմային, լազերային, ճառագայթային և մշակման այլ բարձրարդյունավետ տեխնոլոգիական մեթոդներին անցնելը, որ հատկապես նախատեսված է «Հիմնական ուղղություններում», ինչպես նաև առաջավոր տեխնոլոգիաների՝ փոշեմետալուրգիայի, անընդհատ մետաղաձուլման և այլնի մշակումն ու տարածումը ո՛չ միայն էապես բարելավում են արտադրանքի որակը, այլև մեծ չափով ընդլայնում մարդու առարկայական-վերափոխիչ գործունեության հնարավորությունները, ինչպես նաև, իսկ դա գլխավորն է, ավտոմատիկան զինում է աշխատանքային այնպիսի «գործիքներով», որոնք թույլ կտան իրականացնել աշխատանքի արտադրողականության բարձրացման նրան հատուկ հսկայական հնարավորությունները։

«Հիմնական ուղղություններում» տեխնիկայի որակական զարգացմամբ է պայմանավորվում նաև արտադրության զարգացման մի շարք այլ կարևոր, այդ թվում բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման, բնության պահպանման և այլ խնդիրների լուծումը։ Դրանք իսկ կոչված են վճռելու սակավաթափոն և անթափոն տեխնոլոգիական պրոցեսների արմատավորման, բնական հարստությունների կոմպլեքսային օգտագործման ու վերամշակման արդյունավետ մեթոդների ստեղծման ու լայն կիրառման հարցերը։

Այդ նոր տեխնոլոգիան հիմնականում իրենից ներկայացնում է գիտության հայտնագործած սկզբունքորեն նոր բնական հատկությունների տեխնիկական օգտագործում։ Մշակման տեխնոլոգիական բոլոր նոր մեթոդներն էլ շատ թե քիչ առնչվում են գիտության հասումների օգտագործման հետ։

Սովետական հասարակության նյութատեխնիկական բազայի որակական զարգացման նշված ուղիների ու միջոցների վերլուծությունը ավարտուն չի լինի, եթե քննության չառնվի նյութերի՝ որպես տեխնիկայի ցանկացած գոյաձևի կարևորագույն բաղադրամասերից մեկի, պլանավորված զարգացումը։ Բանն այն է, որ նյութական արտադրության ոլորտի առաջադրած խնդիրները չեն կարող լուծվել առանց այնպիսի նյութերի որակական զարգացման, որոնք այն օգտագործում է։ Ահա թե ինչու «Հիմնական ուղղություններում» նշվում է մետաղների ու համաձուլվածքների ամրության հատկանիշները բարձրացնելու, նոր կոնստրուկցիոն նյութերի արտադրությունն ավելացնելու, գերմաքուր, կիսահաղորդչային և գերհաղորդչային, նոր պոլիմերային և կոմպոզիցիոն նյութերի ու դրանցից պատրաստվող առաջադրված հատկությունների կոմպլեքսով արտադրանքի, ջերմակայուն և քիմիապես կայուն անօրգանական ու մետաղական նյութերի արտադրությունը զարգացնելու առավել արդյունավետ մեթոդներ մշակելու և ներդնելու անհրաժեշտության մասին։

Միանգամայն ակնհայտ է, որ կուսակցության մշակած ծրագրի նաև այս կետի կենսագործումն անհնար է առանց բնական և տեխնիկական գիտությունների ողջ կոմպլեքսի նոր վերելքի։

Իր զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևը հանրագումարի բերելով ՍՍՀՄ տնտեսական զարգացման հիմնական արդյունքները 70-ական թվականներին և տասներորդ հնգամյակի տարիներին, նշեց անցած տասնամյակում գիտության կատարած հսկայական դերը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի որակական զարգացման գործում։ Գիտության նվաճումների հիման վրա,— շեշտեց նա,— հետագա զարգացում են ստացել կամ նոր ստեղծվել այնպիսի ժամանակակից ճյուղեր, ինչպիսիք են ատոմային մեքենաշինությունը, տիեզերական տեխնիկան, էլեկտրոնային և միկրոէլեկտրոնային, միկրոբիոլոգիական արդյունաբերությունը, լազերային տեխնիկան, արհեստական ալմաստների, ինչպես նաև ուրիշ նոր նյութերի սինթետիկ արտադրությունը։

Սակայն վերը հիշատակված պայմանները, որոնցում պետք է զարգանա ժողովրդական տնտեսությունը 80-ական թվականներին, առավել հրամայական են դարձնում գիտատեխնիկական առաջընթացի արագացումը։ Պատահական չէ, որ համագումարի նշած խնդիրները, որոնց լուծումը 80-ական թվականներին պետք է հանգեցնի մեր հասարակության նյութատեխնիկական բազայի որակական զարգացման, ոչ թե սոսկ տեխնիկական, այլ հատկապես գիտատեխնիկական պրոբլեմներ են։

Գիտական առաջընթացին վիճակված է զգալի դեր կատարելու նաև սոցիալիստական հասարակական հարաբերությունների հետագա կատարելագործման պրոբլեմների լուծման մարզում։ Իսկ ինչպես հայտնի է, այդպիսի կենտրոնական պրոբլեմներից մեկն էլ մեր հասարակության բոլոր դասակարգերի և սոցիալական խմբերի մերձեցումն է, նրանց միջև էական տարբերությունների վերացումը։

Ակնհայտ է, որ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը կոմունիզմի կառուցման հիմնական օղակն է։ Պատահական չէ, որ այն առաջնակարգ դեր է կատարում նաև կոմունիստական հասարակական հարաբերությունների ձևավորման, անհատի համակողմանի զարգացման ասպարեզում, քանզի նյութատեխնիկական բազայի ամրապնդումն անհնար է առանց ավելի արագ ընթացող գիտատեխնիկական զարգացման, ուրեմն և գիտական առաջընթացն էլ անհրաժեշտ պայման է թե՛ կոմունիստական հասարակական հարաբերությունների և թե նոր մարդու դաստիարակման խնդիրների հետագա կատարելագործման համար։ Այս իրողությունը լիակատար հաստատում է գտել կուսակցության XXVI համագումարի նյութերում ու որոշումներում։

Անդասակարգ սոցիալիստական հասարակության ձևավորման պրոցեսը տեղի է ունենում քաղաքի և գյուղի, մտավոր և ֆիզիկական աշխատանքների միջև դեռևս գոյություն ունեցող էական տարբերությունները վերացնելու հիման վրա։ Միաժամանակ նոր մարդու դաստիարակումը, որի կարևոր տարրերից է աշխատանքը նրա համար կենսական առաջին անհրաժեշտություն դարձնելը, աղերսվում է աշխատանքի մեջ խոր վերափոխումներ իրագործելու հետ. այն է՝ արմատապես կերպարանափոխել կենդանի աշխատանքի բովանդակությունը, բարելավել աշխատանքի պայմանները։ Ընդ որում, ինչպես նշվեց համագումարում, սոցիալիստական հասարակության մեջ, շնորհիվ ՍՄԿԿ քաղաքականության, որն ուղղված է մարդու աշխատանքը ո՛չ միայն ավելի արտադրողական, այլև բովանդակալից, ստեղծագործական դարձնելուն, շնորհիվ մասսաների հասարակական-քաղաքական և աշխատանքային բարձր ակտիվության առկայության աշխատանքի տեխնիկական վերազինումը դառնում է այդ խոր վերափոխումների իրականացման ռեալ ուղին։ Համագումարը հաստատեց նաև աշխատանքի տեխնիկական զինվածության բարձրացման գլխավոր ուղղությունը՝ մեքենաների և տեխնիկական պրոցեսների բարձր արդյունավետության համակարգերի ստեղծումը և ներդրումը, որը կապահովի արտադրության կոմպլեքսային մեքենայացում և այդ հիման վրա ձեռքի սակավ որակյալ և ծանր ֆիզիկական աշխատանքի վերացում։ Ցավոք, մեզ մոտ դեռևս դրանով զբաղված են միլիոնավոր մարդիկ։ Համագումարը նշեց, որ դա ո՛չ միայն տնտեսական, այլև սոցիալական լուրջ պրոբլեմ է։ Լուծել այն, նշանակում է վերացնել աշխատանքը յուրաքանչյուր մարդու կենսական առաջին պահանջմունքի վերածելու ճանապարհին եղած էական պատնեշները, իսկ տեխնիկական վերազինման այդ ծրագրի իրականացումն անհնար է առանց բնական և տեխնիկական գիտությունների առաջընթացն էապես արագացնելու։

Նոմիասնական խնդրի լուծման հաջողությունը պայմանավորվում է նաև կազմակերպչական և կառավարչական գործունեության, ինչպես և հասարակական գիտությունների զարգացման մակարդակով։ Կյանքի առաջադրած խնդիրները,— նշեց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXVI համագումարում,— պահանջում են զարգացնել տեսությունը, տնտեսագիտությունը, դրանք մոտեցնել տնտեսական պրակտիկայի կարիքներին։ Եթե կոմունիզմի և՛ նյութատեխնիկական բազայի ստեղծման, և՛ հասարակական հարաբերությունների կազմավորման, և՛ մարդու դաստիարակման պրոցեսներն ընթանում են ոչ տարերայնորեն, ապա այդ պրոցեսի զարգացման տեմպը և ուղղությունը էականորեն պայմանավորված են դրանց կառավարման որակով, որն իր հերթին անմիջականորեն առընչվում է մեր՝ այդ պրոցեսները հասկանալու խորության, հետևաբար և հասարակական գիտությունների վիճակի ու առաջին հերթին՝ մարքսիզմ-լենինիզմի տեսության՝ որպես ՍՄԿԿ և սովետական պետության ողջ գործունեության գիտական հիմքի զարգացման մակարդակի հետ։ «Մարքս-լենինյան կուսակցությունը չի կարող իր դերը կատարել,— նշված է Կենտկոմի հաշվետվության



մեջ,— եթե պատշաճ ուշադրություն չի նվիրում ողջ տեղի ունեցածի իմաստավորմանը, կյանքի նոր երևույթների ընդհանրացմանը, մարքս-լենինյան տեսության ստեղծագործական զարգացմանը»։

Հաշվի առնելով այն պրոբլեմների բնույթը, մասշտաբները և բարդության աստիճանը, որոնք ենթակա են լուծման գալիք տասնամյակում՝ ՍՄԿԿ սոցիալ-տնտեսական ստրատեգիան կյանքում իրագործելու պրոցեսում, համագումարն անհրաժեշտ համարեց «Հիմնական ուղղություններում» զետեղել այսպիսի կետ. «Բարձրացնել գիտության դերը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման և սոցիալական հրատապ պրոբլեմների լուծման գործում»։

Այսպիսով, ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերի ու որոշումների վերլուծությունը լիովին հաստատում է սոցիալիստական հասարակության զարգացման գործում սոցիալական և գիտական առաջընթացի միասնության մասին դրույթը, ցույց տալիս, թե որքան ավելի բարդ ու մասշտաբային են դառնում աշխատանքային գործունեության ընթացքում լուծման ենթակա խնդիրները։ Որքան ավելի խոր են այդ խնդիրների շնորհիվ կատարվող վերափոխումները, այնքան առավել ակնհայտ է դառնում առօրեական գիտակցության՝ որպես այդ գործունեության հոգևոր ներունակության կամ պոտենցիայի, սահմանափակությունը, այնքան է՛լ ավելի հրամայական է դառնում բարձր կարգի հոգևոր պոտենցիայի՝ գիտական գիտելիքների, գիտականորեն հիմնավորված մեթոդների, պահանջը։ Գիտատեխնիկական հեղափոխության դարաշրջանում այդ օրինաչափությունը դրսևորվում է ավելի ակնհայտ, քան երբևէ անցյալում։

Ավելի ստույգ՝ գիտատեխնիկական հեղափոխությունը նշված օրինաչափության զարգացման որակապես նոր փուլի սկիզբը դրեց։ Դրա ծավալման համեմատ գիտությունը հոգևոր պոտենցիայի է վերածվում աշխատանքի առավել շատ տեսակների համար։ Ինչ վերաբերում է այն արտադրաուժերին, որոնք ձևավորվում են գիտատեխնիկական հեղափոխության շնորհիվ, ապա դրանց համար գիտությունն արդեն դարձել է գլխավոր հոգևոր պոտենցիա։ Այն պայմաններում, երբ արդեն աշխատանքի ոլորտն են ներգրավվել իրականության այնպիսի խոր շերտեր, ինչպիսիք են միկրո և մեգաաշխարհները, հավիտենական սառույցի գոտիներն ու օվկիանոսի խորքերը, երբ պրակտիկորեն վերափոխիչ մարդկային գործունեությունը, ընդգրկելով մեր մոլորակն ամբողջությամբ, հասել է երկրաբանական մասշտաբներին և սկսել է իր ելքը դեպի տիեզերք, երբ մոլորակի վրա սկսվում է հասուն սոցիալիզմի վերաճումը բուն կոմունիզմի՝ իբրև արդյունք աշխատավորական զանգվածների գիտակցական ստեղծագործության, ահա այս պայմաններում առօրեական գիտակցությունը, տարերայնորեն ձևավորված հմտությունները և այլն արդեն անկարող են գործառնել որպես աշխատանքային գործունեության հոգևոր պոտենցիա՝ իրենց տեղն ավելի ու ավելի զիջելով գիտությանը։

Սոցիալական առաջընթացը մարդկային գործունեության արդյունք է։ Որքան այն ավելի բանական է, այնքան քիչ են տարընթացություններն ու շեղումները, այնքան բարձր է նրա զարգացման տեմպը։ Հաշվի առնելով այս, համագումարը շեշտեց ընդունված որոշումների կենսագործման նպատակով մեր ողջ գործունեությանը ավելի բանական բնույթ տալու կարևորությունը։ Այն պահանջեց անցնել երկրի արտադրաուժերի առավել ռացիոնալ տեղաբաշխման, աշխատաժամանակի ավելի ռացիոնալ օգտագործման, խնդիր դրեց ապահովել յուրաքանչյուր ձեռնարկության, ժողովրդական տնտեսության յուրաքանչյուր բնագավառին տրվող նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսների առավել ռացիոնալ օգտագործումը։ Հասնել դրան, նշանակում է էական քայլ կատարել բարձրացնելու հասարակական արտադրության արդյունավետությունը, արագացնելու մեր երկրի ընթացքը սոցիալական պրոգրեսի ուղիով։

Գիտության՝ որպես աշխատանքային գործունեության հոգևոր պոտենցիայի, մեծագույն առավելությունն էլ այն է, որ, ի տարբերություն առօրեական գիտակցության, մարդկային աշխատանքին հաղորդում է հետևողական բանական բնույթ։ Գիտության այդ մեծ առավելությունը լիովին դրսևորվում է միայն սոցիալիզմի պայմաններում։

# ՊԵՏԱԿԱՆ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅԱՆ ԴԵՐԸ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԵՋ

**Գ. Հ. ԱՅՎԱԶՅԱՆ**
Իրավաբանական գիտությունների թեկնածու

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅՈՒՆԸ հասարակական-
պետական հարաբերությունների համակարգ է, որի մի-
 տումը աշխատավորական կոլեկտիվների միասնական գործողությունների
ապահովումն է։ Հասուն սոցիալիստական հասարակության մեջ կարգապա-
հության իրավաքաղաքական հիմքը սահմանադրական նորմերն են։ Կարգա-
պահությունը, առհասարակ, վարքագծային բնույթի կատեգորիա է, որում ար-
տացոլվում է մարդկային վարքի սոցիալական գնահատականը հասարակու-
թյան նպատակներին ու շահերին՝ նրա համապատասխանության, ներքին կուլ-
տուրայի, պատասխանատվության զգացումի տեսակետից։

Կարգապահության ոլորտում արտացոլվում են մարդու բարոյական հատ-
կությունները, նրա վերաբերմունքը աշխատանքային կոլեկտիվի, քաղաքացի-
ների նկատմամբ, պետության և հասարակության հանդեպ իր պարտքի գի-
տակցումով։ Լինելով սոցիալիստական կարգապահության կարևորագույն հատ-
կանիշներից մեկը՝ գիտակցականությունը մարդու իմացության էական և
առանձնահատուկ կողմն է, որը բնորոշում է նրա ակտիվությունը, գործունեու-
թյունը, պատասխանատվությունը, համոզվածությունը և գաղափարայնու-
թյունը։

Պետական կարգապահության պահանջը բխում է սոցիալիստական հասա-
րակության բնույթից, այն անհրաժեշտ է մարդկանց և նրանց կազմակերպու-
թյունների համատեղ գործունեությունը կարգավորելու և ընդհանուր նպատա-
կին ենթարկելու համար, դրսևորվում է որպես ակտիվ կազմակերպող տարր
տնտեսական և սոցիալական պրոցեսների իրականացման մեխանիզմում։ Կար-
գապահությունը սոցիալիզմի պայմաններում պետական բնույթ ունի և կազ-
մավորվում է կատարելապես նոր հիմունքներով։ Դա, ինչպես նշել է Վ. Ի. Լե-
նինը, բանվորների և չքավորագույն գյուղացիների կազմակերպվածության
նկատմամբ վստահության կարգապահություն է, ընկերական կարգապահու-
թյուն, ամեն տեսակ հարգանքի կարգապահություն, ինքնուրույնության և պայ-
քարում նախաձեռնության կարգապահություն (տե՛ս Երկեր, հ. 27, էջ 646)։
Պետությունը սահմանում է մարդկանց վարքի կանոնները կառավարման և ողջ
արտադրապրոցեսում, հաստատում քաղաքացիների և կազմակերպությունների
համար գործողությունների միասնական եղանակ, տնտեսական հարաբերու-
թյունների մասնակիցների պարտադիր և հնարավոր վարքագծի սահմաններն ու
բնույթը, նրանց փոխհարաբերության կարգը զանազան տեսակի գործողություն-
ներ կատարելիս։ Այսպիսով, իրավական նորմերի խստագույն պահպանումը
պետական կարգապահության ապահովման պարտադիր և անհրաժեշտ պայ-
մանն է։

Պետական կարգապահությունը կառավարման համակարգում պարտադիր է
բոլորի համար, անկախ տվյալ օրգանի զբաղեցրած տեղից, անձի վարած պաշ-



տոնից և կատարած ֆունկցիաներից։ Այս հանգամանքը, ապահովելով միաս-
նություն ամբողջ երկրի մասշտաբով, սահմանում է որոշակի կարգ և համա-
ձայնություն մեծ և փոքր կոլեկտիվների և ամբողջ հասարակական օրգանիզմի
գործունեության միջև հստակ և արդյունավետ աշխատանք կազմակերպելու
նպատակով։

Սոցիալիզմը նշանակում է միասնական տնտեսություն, որի զարգացման
ուղղությունը որոշվում է միասնական պետական պլանով։ Միասնական կար-
գապահության շահերը թելադրում են ժողովրդական տնտեսության ղեկավար-
ման որոշակի կենտրոնացում, որն արգելում է գերատեսչական և տեղայնու-
թյան զանազան բնույթի դրսևորումները, պաշտպանում համապետական շա-
հերը։ Ժողովրդական տնտեսության կենտրոնացված կառավարումը սոցիալիզ-
մի մեծագույն հասումներից է, որը նախատեսում է դեմոկրատիայի և կարգա-
պահության իրական միասնություն։

ՍՄԿԿ Կենտկոմի «Տնտեսական մեխանիզմի հետագա կատարելագործման
և կուսակցական ու պետական մարմինների խնդիրների մասին» և ՍՄԿԿ Կենտ-
կոմի ու ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի «Պլանավորումը բարելավելու և արտա-
դրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման վրա
տնտեսական մեխանիզմի ներգործությունն ուժեղացնելու մասին» 1979 թ.
որոշումները, որպես կուսակցության տնտեսական քաղաքականության իրակա-
նացման կարևոր գործիքի, առաջնակարգ նշանակություն են տալիս միասնա-
կան պետական պլանի դերի հետագա բարձրացմանը։ Սովետական պետության
մեջ տնտեսական մեխանիզմը, նշում էր Վ. Ի. Լենինը, պետք է աշխատի այն-
պես «...որպեսզի հարյուր-միլիոնավոր մարդիկ ղեկավարվեն մեկ պլանով...»
(Երկեր, հ. 27, էջ 92)։ Այդ որոշումներով համապատասխան մարմիններին
հանձնարարված է միջոցներ ձեռնարկել գերատեսչական անջատվածության
հաղթահարման համար, պլանները մշակելիս ապահովել ուժերի և ռեսուրսների
համակենտրոնացում՝ համապետական կարևորագույն ծրագրերի իրագործման
նպատակով։ «Էկոնոմիկայի կառավարման գործում կենտրոնացումը,— նշեց
Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան (1977 թ.) պլենումում,— անհրա-
ժեշտ է և օրինաչափ։ Բայց նույնքան և անհրաժեշտ է մեր տնտեսության զար-
գացման պայմանների ողջ բազմազանության մանրազնին հաշվառումը։ Իսկ
սա անկարելի է՝ առանց արտադրական կոլեկտիվների նախաձեռնության հե-
տագա բարձրացման, առանց կառավարմանն իրենց աշխատավորների ակտիվ,
սրտացավ մասնակցության»։

Պետական կարգապահությանը հատուկ է նաև դեմոկրատիզմը, որի էու-
թյունը տնտեսական հարաբերությունների մասնակիցների և քաղաքացիների
իրավունքների պաշտպանության, նրանց ինքնուրույնության և նախաձեռնու-
թյան զարգացումն է։ Ընդհանրապես դեմոկրատիան և կարգապահությունը հա-
սարակական տարբեր երևույթներ են, բայց գտնվում են սերտ փոխկապակցու-
թյան մեջ, որի շնորհիվ դեմոկրատիան պահպանում է իր որակական որոշա-
կիությունը և չի վերածվում անարխիայի, իսկ կարգապահությունը՝ հարկա-
դրանքի և վարչարարության։ Դեմոկրատիզմը նպաստում է գիտակցական կար-
գապահության ամրապնդմանը, որը հիմնվում է յուրաքանչյուրի ներքին հա-
մոզմունքի, պետության նպատակների ու խնդիրների գիտակցման, իր գործո-
ղությունները պետական իշխանության կամքին կամովին ենթարկելու վրա։
Հարկավոր է հասնել այն բանին, ինչպես շեշտում էր Վ. Ի. Լենինը, որ ամեն մի
գիտակից աշխատավոր «իրեն զգա ո՛չ միայն որպես տեր իր գործարանում,
այլև որպես երկրի ներկայացուցիչ...» (Երկեր, հ. 27, էջ 500)։

Կուսակցության ու կառավարության վերոհիշյալ որոշումները տնտեսա-
կան խնդիրների հաջող լուծման գործում սոցիալիստական դեմոկրատիզմի
հնարավորությունների օգտագործման ուղիներ են նշում։ Մի հանգամանք, որն
արտացոլված է ՍՍՀՄ և Հայկական ՍՍՀ սահմանադրություններում (հոդված
16), որտեղ նշված է. «...էկոնոմիկայի ղեկավարումն իրականացվում է տնտե-
սական և սոցիալական զարգացման պետական պլանների հիման վրա, հաշվի
առնելով ճյուղային և տերիտորիալ սկզբունքները, կենտրոնացված կառավա-
րումը զուգակցելով ձեռնարկությունների, միավորումների և մյուս կազմակեր-
պությունների տնտեսական ինքնուրույնության և նախաձեռնության հետ»։

կենտրոնացման հետ սերտ կապված տեղական նախաձեռնությունը մեծ և անփոխարինելի ռեզերվ է ժողովրդատնտեսության զարգացումն արագացնելու գործում։

Անդրադառնալով կենտրոնացման և դեմոկրատիզմի սկզբունքների հարաբերակցությանը, Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի 1980 թ. հոկտեմբերյան պլենումում նշեց, որ միայն կենտրոնացմամբ կարելի է արդյունավետ ղեկավարել ժողտնտեսության բարդ կոմպլեքսը, «...որպես միասնական ամբողջ հակադրվել գերատեսչական և տեղայնական միտումներին»։

Գերատեսչական նեղ մոտեցումներն ի հայտ են գալիս այնպիսի գործողություններում, որոնք ուղղված են կառավարման տվյալ ճյուղի, տվյալ միավորման, ձեռնարկության կամ հիմնարկության համար շահավետ և ձեռնտու պայմանների ստեղծմանը՝ ի վնաս համապետական շահերի։ Նման մեթոդով աշխատող կազմակերպությունների ղեկավարները ձգտում են սքողել թերություններն աշխատանքում, որպեսզի խուսափեն քննադատությունից, չկորցնեն խրախուսանքի դրամական միջոցները, միշտ հիշատակվեն լավ աշխատողների ցանկում, ջանալ ըստ հնարավորին շատ կորզել պետությունից և փոխարենը չհատուցել։ Գերատեսչականությունը դրսևորվում է նաև այն բանում, որ ձեռնարկությունն իր պահանջների անօրինական բավարարման նպատակով երբեմն վատնում է իր արտադրած արդյունքը՝ փոխանակելով դրանք ուրիշ ձեռնարկությունների արտադրանքի հետ։

Գերատեսչական մոտեցման այլ եղանակ է համարվում գերնորմատիվային ավելցուկ ստեղծելը։ Տնտեսավարման այս եղանակը, որը կազմալուծում է ժողովրդական տնտեսության մատակարարման պլանային սիստեմը, արգելված է օրենքով, որովհետև դա պետական կարգապահության և սոցիալիստական օրինականության բացահայտ խախտում է։

Ֆոնդավորվող արտադրանքի գերնորմատիվային ավելցուկ է ստեղծվում այն բանի հետևանքով, երբ որոշ ձեռնարկությունների ղեկավարներ արհեստականորեն բարձրացնում են դրանց պատվերները, իսկ վերադաս կազմակերպությունները, առանց ստուգելու այդ արդյունքի իրական պահանջը կամ նույնիսկ իմանալով, բայց ելնելով գերատեսչական կամ սուբյեկտիվ նկատառումներից, թույլատրում են գերնորմատիվը։

Գործին տեղայնական միտումներով մոտենալը, մի դեպքում, կարող է դրսևորվել տեղական ղեկավար մարմինների պահանջով՝ իրենց տերիտորիայում արտադրվող համապետական նշանակության արտադրանքն օգտագործելու իրենց տնտեսական շրջանի կարիքների համար, համապետական նշանակության միջոցառումների հետևանքով թողարկված նյութական, աշխատանքային և ֆինանսական միջոցներն օգտագործել տեղական և երկրորդական նշանակության նպատակներով։

Նման իրադրությունները, երբ ի վնաս համապետական գործի գերադասում են տեղական շահերը, դեռևս քիչ չեն մեր առօրյա կյանքում։ Ինքնակայություն, մարդայնություն, գավառային էգոիզմ՝ այսպիսի դիպուկ բնորոշումներ է տվել Լենինը տեղայնական ձգտումներին։

Գերատեսչական և տեղայնական միտումների դեմ պետք է հետևողական և լայն պայքար ծավալել։ ՍՄԿԿ XXVI համագումարում Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ասված է. «Համապետական շահերը միշտ պետք է բարձր լինեն առանձին մինիստրությունների և ձեռնարկությունների շահերից»։ Ունենալով մեծ իրավունքներ՝ ամեն մի ղեկավար պետք է մշտապես հիշի իր բարձր պատասխանատվությունը մարդկանց, կուսակցության և ժողովրդի հանդեպ։

Պետական կարգապահությանը բնորոշ է նաև հարկադրանքը, որը նպաստում է ո՛չ միայն նրա պահանջների ճիշտ և անպայման կատարմանը, այլև հանդես է գալիս իբրև դաստիարակության միջոց։ Անհրաժեշտ է, որ յուրաքանչյուր քաղաքացի պարզ գիտակցի «...իր պատասխանատվությունը հասարակության հանդեպ, բարեխղճորեն կատարի իր պարտքը պետության հանդեպ, ժողովրդի հանդեպ» (Լ. Ի. Բրեժնև, ՍՍՀՄ սահմանադրության մասին, էջ 20)։ Կարգապահությունը նախատեսում է ո՛չ միայն որոշակի կանոններին ենթարկվելը կամ սահմանված կարգը պահպանելը, այլև նրա պահպանման հմտության և վարժվածության մշակում։ Ապահովելով հարաբերությունների բարձր կա-



յունություն՝ պետական կարգապահությունը բոլորի և յուրաքանչյուրի գործողությունների հուսալիության երաշխիք է ծառայում, հանգեցնում է անհատների և կազմակերպությունների շրջանում գործի հաջողության նկատմամբ վստահության զգացումի մշակմանը։

Պետական կարգապահության վերոհիշյալ հատկությունները բնորոշում են դրա սոցիալական արժույթը, անհրաժեշտությունը հասարակության, աշխատավորական կոլեկտիվների և անհատի համար, մոբիլիզացնում են զանգվածներին, կազմակերպություններին լուծելու ժողովրդատնտեսական խնդիրները։ ՍՄԿԿ-ն հաստատակամորեն պահանջում է ընդմիշտ արմատախիլ անել անտնտեսվարության և անբանության, անկազմակերպվածության և աշխատանքային պարտականությունների նկատմամբ անպատասխանատու վերաբերմունքի երևույթները, պայքարել փակ տնտեսավարման և գերատեսչական սահմանափակության նկրտումների դեմ։

ՍՄԿԿ Կենտկոմը «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքների հետագա բարելավման մասին» որոշմամբ սահմանեց, որ այսուհետև, ղեկավարների, տնտեսական կադրերի աշխատանքը գնահատելիս, անհրաժեշտ է հաշվի առնել ո՛չ միայն արտադրապլանների կատարման ցուցանիշները, այլև կարգապահության մակարդակը։ Խնդիր դրվեց՝ բարձրացնել ղեկավարների պատասխանատվությունը տնտեսական գործունեության և նրա դաստիարակչական հետևանքների համար։ Պատասխանատվության պրոբլեմը հետզհետե դառնում է առավել հրատապ՝ ժողտնտեսության կառավարման գործում դեմոկրատիայի զարգացման, կառավարչական կապերի բարդացման առնչությամբ։ Պատասխանատվությունը հասարակության և պետության նկատմամբ անձի ունեցած վերաբերմունքն է՝ աշխատանքային ու հասարակական պարտականությունների գիտակցումն ու կատարումը դրսևորելիս։ Միաժամանակ պատասխանատվությունը պետության և հասարակության այն պահանջների համակցությունն է, որ ներկայացվում են պետական մարմիններին, պաշտոնատար անձանց, հասարակական կազմակերպություններին և քաղաքացիներին։ Պատասխանատվության կատեգորիայի մեջ մտնող հարցերին են վերաբերում իր գործողություններով որոշակի արդյունքի հասնելու մարդու ունակությունները, ինչպես նաև դրա հետ կապված մարդու իրավացիության կամ մեղավորության հարցերը, նրա գործողությունները հավանելու կամ դատապարտելու հնարավորությունները և այլն։

Ղեկավարների անձնական պատասխանատվությունն իրենց պարտականությունների կատարման գործում դաստիարակչական մեծ նշանակություն ունի քաղաքացիների համար, աշխատավորության մեջ ամրապնդում է հավատը պետության և օրենքի նկատմամբ։ Կառավարչական պրակտիկայում դեռևս նկատվում են անտնտեսվարության, բյուրոկրատիզմի, կարիերիզմի, մարդկանց նկատմամբ անտարբերության երևույթներ։ Կուսակցությունը պահանջում է բարձրացնել բոլոր ղեկավարների պատասխանատվությունն իրենց պարտականությունների կատարման համար, ուժեղացնել պահանջկոտությունը նրանց նկատմամբ։ Պատասխանատվության զգացումը սովետական մարդկանց մոտ ամրապնդվում է համատեղ աշխատանքի, ընկերական փոխհարաբերության պրոցեսում, նրանց մղելով արդյունավետ աշխատանքի, երբ մարդը լիովին գործադրում է իր բանելու կարողությունները։

Վ. Ի. Լենինը երկրի բարգավաճման նախապայմանը խստագույն կարգապահությունն էր համարում։ Որքան բարձր են նյութական արտադրության տեխնիկական մակարդակը, նրա մեքենայացումն ու ավտոմատացումը, այնքան հստակ պետք է լինի աշխատանքային ռիթմը, իսկ տնտեսական մեխանիզմը պարտավոր է աշխատել «իսկապես այնպես,, ինչպես աշխատում են ժամացույցները» (տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 27, էջ 250)։ Երբ բարձրանում է արտադրության տեխնիկական մակարդակը, խորանում են մասնագիտացումն ու աշխատանքի հասարակական բաժանումը, իսկ կարգապահությունն անբավարար է, ապա կարող են ծագել անցանկալի հակասություններ, որոնք կարող են հանգեցնել պլանային առաջադրանքների թերակատարման կամ խաթարման։

ՍՄԿԿ XXVI համագումարում Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ ոչ բոլոր մինիստրությունները, գերատեսչությունները, միավորումները և ձեռնարկությունները

կատարեցին իրենց հնգամյա պլանային առաջադրանքները։ Ժողովրդական տնտեսության մեջ դեռ կան նեղ տեղեր և անհամամասնություններ։ Եթե պլանը ձախողված է թեկուզ մեկ ձեռնարկության կողմից, արտադրանքը չի մատակարարված պատշաճ նոմենկլատուրայով և տեսակով, ապա դա կարող է հանգեցնել արտադրակից ձեռնարկությունների աշխատանքի անկանոնության և, վերջին հաշվով, մեծ և չլրացվող կորուստների։

Հանրապետության մի շարք արդյունաբերական ձեռնարկություններում և շինարարական կազմակերպություններում արտադրածախսերը շարունակում են մնալ բարձր, չեն կատարվում ինքնաժեքի իջեցման պլանները և թանկացվում է ինքնարժեքը։ Ինչպես նախորդ տարիներին, այնպես և 1979 թ., իրենց սխալ պրակտիկայի հետևանքով շինարարական կազմակերպությունները թանկացրել են շինմոնտաժային աշխատանքների արժեքը. այսպես 1979 թ. 6,1 միլիոն ռուբլու չափով թանկացրել են արդյունաբերական շինարարության մինիստրության և 1,6 միլիոն ռուբլու չափով՝ գյուղական շինարարության մինիստրության սիստեմում։ Ընդ որում, արդյունաբերական շինարարության մինիստրության 73 շինարարական կազմակերպություններից 45-ը ինքնարժեքը թանկացրել է 8,1 միլիոն ռուբլու չափով, 32 արդյունաբերական ձեռնարկություններից 12-ը ապրանքային ինքնարժեքը թանկացրել է 2,9 միլիոն ռուբլու չափով։

Թողարկվող արտադրանքի ինքնարժեքը թանկացրել են նաև սննդարդյունաբերության (3,9 մլն ռուբլի), շինանյութերի արդյունաբերության (1,2 մլն ռուբլի), բնակարանային և կոմունալ տնտեսության (0,6 մլն ռուբլի), տեղական արդյունաբերության (0,5 մլն ռուբլի) մինիստրության ենթակա ձեռնարկություններն ու կազմակերպությունները։ Ստուգումներով բացահայտվել են միջոցների անօրինական և անարտադրողական ծախսերի, հավելագրումների, կատարած աշխատանքների ծավալի ուռճացման և կորուստների բազմաթիվ դեպքեր։

Ըստ Հայկական ՍՍՀ ֆինանսների մինիստրության ստուգումների, 1979 թ. բացահայտվել են 3.228 հազար ռուբլու անօրինական ծախսեր, որից միայն աշխատավարձի համար՝ 2.102 հազար ռուբլի։ Խոշոր չափերի անօրինական ծախսեր են կատարել կոմունալ տնտեսության (358 հազար ռուբլի), գյուղատնտեսության (179 հազար ռուբլի), առողջապահության (266 հազար ռուբլի), մթերումների (91 հազար ռուբլի) մինիստրությունների, գյուղատնտեսության արտադրատեխնիկական ապահովման պետական կոմիտեի (60,3 հազար ռուբլի) ձեռնարկություններն ու կազմակերպությունները։

Ստուգումների տվյալներով մի շարք ձեռնարկություններում և կազմակերպություններում բացահայտվել են պետական հաշվետվությունների խեղաթյուրումներ և կատարած աշխատանքների ծավալի հավելագրումներ։

Առանձին ղեկավարներ, փորձելով չափազանցնել պլանային առաջադրանքների կատարման իրական վիճակը և թաքցնել ղեկավարության ցածր մակարդակը, նախընտրում են պետությանը խաբելու ուղին, որ դժվարացնում է ժողովրդական տնտեսության ճիշտ պլանավորումը, խանգարում նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսների ռացիոնալ բաշխմանը, թուլացնում կադրերի պատասխանատվությունը, վարկաբեկում է կառավարման մարմինների հեղինակությունը։

Մի շարք դեպքերում հավելագրումներն ուղեկցվում են պետական և հասարակական գույքի հափշտակումներով և աշխատավարձի անօրինական վճարմամբ, հումքի, վառելիքի ու այլ նյութական արժեքների դուրսգրմամբ։

Պետական բարձր կարգապահության ապահովման համար, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVI համագումարում, առանձնապես կարևոր է ապահովել ռիթմիկ և հստակ աշխատանք, պլանի կատարում բոլոր ցուցանիշներով, բարձրացնել տնտեսական, սովետական և կուսակցական ղեկավար կադրերի պատասխանատվությունը ընդունած որոշումների կատարման համար, կիրառել ճկուն կադրային քաղաքականություն, իրականացնել խստագույն վերահսկողություն և պարտավորությունների կատարման ստուգում կառավարման բոլոր օղակներում։



Մեր բոլոր որոշումները, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXV և XXVI համագումարներում, պետք է ամրապնդվեն մտածված, հստակ կազմակերպչական միջոցներով։ Անհրաժեշտ է նախօրոք որոշել, թե ինչը, որտեղ և ինչ ժամկետներում պետք է կատարվի և կոնկրետ ով պետք է ապահովի։ Կառավարման ապարատի յուրաքանչյուր օղակ պետք է պարզ տեսնի իր տեղն ու դերը առավել կարևոր տնտեսական հարցերի լուծման մեջ։

Պետական կարգապահության ապահովման համար հարկավոր է ո՛չ միայն ճիշտ բաշխել նյութական և ֆինանսական ռեսուրսները ժողտնտեսության ճյուղերի միջև, այլև առավել կարևոր է դրանց կենտրոնացումը միջճյուղային խնդիրների կատարմանը՝ ելնելով համապետական և համատնտեսական շահերից։ Պլանների հաշվեկշռումը նյութական և ֆինանսական ռեսուրսներով, դրանց ժամանակին կազմումը և լայն քննարկումը մշակման փուլում նույնպես նպաստում են կարգապահության ամրապնդմանը։ Ժողովրդական տնտեսության զարգացման պլանների հաշվեկշռվածության բարելավումը օբյեկտիվ գործող տենդենց է և աստիճանաբար ամրապնդում է իր դիրքերը։ Սակայն տնտեսության մեջ առաջացող առանձին անհամամասնություններն արտադրության ներկայիս վիթխարի մասշտաբների, ճյուղերի և շրջանների, ինչպես նաև միութենական հանրապետությունների մեջ տնտեսական կապերի շեշտակի բարդացման պայմաններում նշանակալի վնաս են հասցնում ժողովրդական տնտեսությանը։ Խիստ կարևոր է ժամանակին և գիտականորեն հիմնավորված լարված պլանների մշակումը կառավարման բոլոր մակարդակներում, դրանց հաշվեկշռվածությունը բոլոր բաղադրիչ մասերով և ժամանակին այդ պլանները կատարողներին հասցնելը։

Պլանավորման գործում եւ լինում են սահմանված կարգի և ժամկետների խախտումներ, պլանային առաջադրանքների ոչնչով չհիմնավորված և չարդարացված ճշգրտումներ, իսկ վերադաս որոշ մարմիններ հաշտվում են նման երևույթների հետ։ Հայաստանի կոմկուսի XXVII համագումարում ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը նշեց, որ շարունակվում են տեղ գտնել թե՛ ցածր պլանների ընդունում, թե՛ պլանների թերակատարում և թե դրանց ճշգրտում՝ նվազեցմամբ հանդերձ։

Կուսակցության XXVI համագումարում առանձնապես շեշտվեց, որ մինիստրությունների կամ արդյունաբերական ձեռնարկությունների կողմից պլանների չհիմնավորված ճշգրտումը հարուցում է անհամամասնություն ժողտնտեսության մեջ. դա փոխկապակցված հաշվարկների և ցուցանիշների այս կամ այն աստիճանի խզում է, այլ կերպ ասած՝ պլանային կարգապահության խախտման շղթայական ռեակցիայի սկիզբ, որից առաջանում են պետական կարգապահության մյուս տեսակի, այդ թվում և ֆինանսական կարգապահության խախտումները։ Իսկ նման անհամամասնությունները ծնում են ամեն տեսակի պակասություններ, որոնք կարծես թե չպետք է լինեին։ Պլանները ճշտելու նկատմամբ անպատասխանատու վերաբերմունքը խախտում է ո՛չ միայն առանձին ձեռնարկությունների, այլև ամբողջ ճյուղի աշխատանքի ռիթմը։ Եվ քանի որ պլանների փոփոխությունը կատարվում է հիմնականում նվազեցմամբ, ապա ժողովրդական տնտեսությունն ամեն տարի ստանում է մի քանի անգամ քիչ արտադրանք, քան նախատեսված էր։

Գիտակցական, կամավոր, նախաձեռնող, միասնական կարգապահության ապահովման գործում կարևոր դեր է խաղում կադրային քաղաքականությունը։ Ժամանակակից պայմաններում պետական պլանների և առաջադրանքների կատարումը, տնտեսության ղեկավարման հաջողությունները մեծապես պայմանավորված են կադրերով։ Լենինը նշում էր, որ կադրային աշխատանքում գլխավորը աշխատողների ընտրությունն ու տեղաբաշխումն է «...ա) բարեխղճության, բ) քաղաքական դիրքորոշման, գ) գործիմացության, դ) կառավարչական ունակությունների առումով...» (տե՛ս В. И. Ленин, ПСС, т. 53, стр. 97)։ Կադրերի ընտրությունը նախատեսում է գիտականորեն ու հիմնավորված բացահայտել զբաղեցվող պաշտոնի թեկնածուի քաղաքական, գործնական և անձնական արժանիքները։ Կառավարող ընկերոջը վերաբերող լենինյան պահանջները պետք է դրսևորվեն սերտ միասնության և զուգորդման մեջ։ Այսպես, կառավարչական և կազմակերպչական գիտելիքներով զինված ամենաարակյալ

մասնագետին չի կարելի համարել կառավարչական աշխատանքի թեկնածու, եթե նա չունի համապատասխան քաղաքական համոզվածություն և հասունություն, այնպիսի հատկություն, ինչպիսին անհաշտվողականությունն է մեր զարգացումը կասեցնող ամեն մի ոտնձգության դեմ։

ՍՄԿԿ-ն ելնում է այն բանից, որ արդի ղեկավարը պետք է օրգանապես զուգակցի իր մեջ կուսակցականությունը խոր բանիմացության հետ, կարգապահությունը նախաձեռնության և գործի նկատմամբ ստեղծագործական մոտեցման հետ։ Նա պետք է կարողանա զգալ նորը, հեռանկարայինը և կարողանա որոշումներ ընդունել կուսակցական դիրքերից, իմանալով իր գործը, հանդես գալով իբրև կոլեկտիվի դաստիարակ։

Կատարելագործելով կադրային քաղաքականությունը, կուսակցությունն իր հարաբերությունը կադրերի նկատմամբ հիմնում է վստահության վրա՝ նկատի ունենալով նրանց բարձր գիտակցականությունը և պատասխանատվությունը։ Վստահությունը և հարգանքը կադրերի նկատմամբ զուգակցվում է նրանց բարձր պատասխանատվության հետ։

Ղեկավար կադրերը բարձր գիտակցականությունը պետք է զուգակցեն լավ պատրաստվածության հետ, ունակ լինեն գործիմացորեն լուծելու էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման հարցերը։ Պետական կառավարման ապարատում աշխատելու, ղեկավարի պարտականություններ կատարելու համար անհրաժեշտ են նաև որոշակի հանրակրթական գիտելիքներ, մասնագիտություն և կառավարման գիտության հիմունքների իմացություն։ Ի դեպ, բանիմացությունը նախատեսում է նաև իրավական գիտելիքների տիրապետում, որովհետև կառավարչական գործունեությունն իրականացվում է առավելապես իրավական ձևերով, իրավական միջոցներով։

Պետական կառավարման ապարատի բոլոր օղակներում կարգապահության ապահովման և ամրապնդման հիմնական կազմակերպչական միջոցներից են վերահսկողությունը և կատարման ստուգումը։

Պատշաճ վերահսկողությունը ժողովրդական տնտեսության մեջ հնարավորություն է ընձեռում հաշվի առնելու այն տնտեսական և նյութական օգուտը, որ բերում է ճյուղը, միավորումը, ձեռնարկությունը կամ կազմակերպությունը։ Լենինը վերահսկողությունը դիտում էր որպես ինֆորմացիայի հիմնական աղբյուրներից մեկը, կադրերի ուսումնասիրման, կարգապահության ամրապնդման և դաստիարակման անհրաժեշտ պայմանը, որպես սխալների ուղղման, ինչպես նաև առաջավոր փորձի տարածման միջոց։ Նա բազմիցս շեշտել է, որ ստուգել մարդկանց և ստուգել գործերի փաստացի կատարումը, կրկին դա է, միայն դա է այժմ ողջ աշխատանքի, ողջ քաղաքականության մեխը։

Վերահսկողությունը, ըստ էության, պաշտոնատար անձանց մոտ բարձր պատասխանատվության զարգացման անփոխարինելի եղանակ է, նրանց կողմից իրենց պարտականությունների ճիշտ կատարման անհրաժեշտ պայման, պետական մարմինների և տնտեսական կազմակերպությունների, ինչպես նաև ձեռնարկությունների ղեկավարների աշխատանքի որակի գնահատման ձև։

---

# ԱՇԽԱՏԱՆՔԻ ԲՆՈՒՅԹԻ ՓՈՓՈԽՈՒՄԸ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ

Ա. Պ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ
Պատմական գիտությունների թեկնածու, դոցենտ

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXVI համագումարը, վերլուծելով երկրի տնտեսական և սոցիալական զարգացման հերթական խնդիրները, միաժամանակ շեշտեց, որ այդ վեհ խնդիրների իրականացման կարևորագույն պայմանը սովետական մարդկանց անձնվեր աշխատանքն է։

Հասարակության առաջընթացի գործում հանրահայտ է աշխատանքի որոշիչ դերը։ Ինչպես նշել է Լ. Ի. Բրեժնևը, «Այն ամենի համար, ինչին հասել է մարդկությունը, նա պարտական է աշխատանքին» (Լենինյան կուրսով, հ. 3, էջ 450)։ «Սովետական հասարակությունն աշխատանքի մարդկանց հասարակություն է։ Կուսակցությունը և պետությունը շատ ջանքեր են գործադրել և գործադրում են, որ մարդու աշխատանքը դարձնեն ո՛չ միայն ավելի արտադրողական, այլև ավելի բովանդակալից, հետաքրքրական, ստեղծագործական» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցումը Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXVI համագումարին և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, «Հայաստան» հրատ., 1981, էջ 94)։

Աշխատանքը որպես սոցիալ-տնտեսական կատեգորիա բազմազան ասպեկտներ ունի։ Սույն հոդվածում անդրադառնում ենք սոցիալիզմի պայմաններում աշխատանքի բնույթի փոփոխման որոշ կողմերի։

Մարքսիզմի կլասիկները, խոսելով մարդկանց, կադրերի դերի մասին, որպես հասարակության հիմնական արտադրողական և վերափոխող ուժի, նշել են, որ բուրժուական կարգերի տապալումից հետո նոր սոցիալիստական հասարակության ստեղծման պրոցեսում փոխվում է նաև մարդկանց աշխատանքի բնույթը, փոխվում են իրենք իսկ մարդիկ, նրանց արտադրահարաբերությունները։ Սոցիալիզմի պայմաններում ստեղծվում են ազատ աշխատողների հավասար, փոխադարձ օգնության հարաբերություններ, որոնց հիմքը արտադրամիջոցների նկատմամբ հանրային սոցիալիստական սեփականությունն է։

Սոցիալիստական հասարակության հաստատման և զարգացման ընթացքում ձևավորվում է նոր, սոցիալիստական հասարակության մարդը, որի աշխատանքը կրում է սոցիալիստական բնույթ։ Ի հակադրություն կապիտալիստականի, սոցիալիստական աշխատանքի ամենամեծ առավելությունը մարդու կողմից մարդու շահագործման բացառումն է։

Սոցիալիստական հեղափոխության հաղթանակի շնորհիվ պրոլետարիատի կողմից իշխանության նվաճման, արտադրապրոցեսում նրա տիրապետող դիրքի ամրապնդման միջոցով, ինչպես նշել է Վ. Ի. Լենինը, լայն հորիզոններ են բացվում նոր, սոցիալիստական աշխատանքի կերպավորման ու զարգացման համար։ Դեռևս 1918 թվականին Ինչպե՞ս կազմակերպել մրցությունը հոդվածում Լենինը գրել է. «Ուրիշի համար հարյուրամյակներ աշխատելուց, շահագործողների համար հարկադրական աշխատանք կատարելուց հետո, առաջին անգամն է հնարավորություն ստեղծվում իր համար աշխատելու, այն էլ այնպիսի աշ-

խատանքի հնարավորություն, որը հենվում է նորագույն տեխնիկայի և կուլտուրայի բոլոր հասումների վրա» (Երկեր, հ. 26, էջ 495)։

Լենինյան այս դրույթը հիմք է տալիս բացահայտելու սոցիալիստական աշխատանքի բովանդակությունը, նրա բնորոշ կողմերը, որի զարգացումը տեղի է ունենում ամբողջ հասարակության մասշտաբով, պլանավորված և կազմակերպված։ Սոցիալիստական աշխատանքը, բացառելով մարդու կողմից մարդու շահագործումը և ունենալով կամավոր ու ազատ բնույթ, միաժամանակ հասարակության յուրաքանչյուր անդամի սրբազան պարտքն ու նրանց գոյամիջոցների միակ աղբյուրն է։ Սոցիալիզմի ժամանակ աշխատանքը կրում է նաև գիտակցական և ստեղծագործական բնույթ, որովհետև «...միայն սոցիալիզմը աշխատանքի արգասիքները դարձրեց հենց աշխատավորների սեփականությունը, աշխատավոր մարդուն շրջապատեց համընդհանուր հարգանքով, բուն աշխատանքը վերածեց բարոյական վսեմ բավականության աղբյուրի» (Լ. Ի. Բրեժնև, Լենինյան կուրսով, հ. 3, էջ 450—451)։

Կապիտալիզմի պայմաններում արտադրամիջոցների նկատմամբ մասնավոր սեփականության առկայության շնորհիվ աշխատանքը սկզբում հանդես է գալիս որպես անմիջական մասնավոր աշխատանք և նրա հասարակական բնույթը երևան է գալիս միայն շուկայում, ապրանք արտադրողների թիկունքում։ Իսկ սոցիալիզմի ժամանակ արտադրամիջոցների հանրային սեփականության հաստատմամբ վերանում է անմիջական մասնավոր աշխատանքը և այն դառնում է անմիջապես հասարակական։ Դա նշանակում է, որ սոցիալիզմի պայմաններում առանձին աշխատողի աշխատանքն արդեն ոչ թե կողմնակի կերպով, այլ անմիջականորեն հանդես է գալիս որպես ամբողջ հասարակական աշխատանքի մաս։ Այդ կապակցությամբ վկայակոչենք Ֆ. Էնգելսի խոսքերը. «Երբ հասարակությունը ստանձնում է արտադրամիջոցների տիրապետությունը և դրանք անմիջականորեն հանրայնացված ձևով գործադրում է արտադրության համար, յուրաքանչյուր առանձին անհատի աշխատանքը, որքան էլ տարբեր լինի դրա յուրահատուկ օգտակար բնույթը, սկզբից ևեթ անմիջականորեն դառնում է հասարակական աշխատանք» (Անտի-Դյուրինգ, «Հայաստան» հրատ., 1967 թ., էջ 416)։

Սոցիալիզմի պայմաններում, ի տարբերություն կապիտալիստականի, յուրաքանչյուր քաղաքացի երաշխավորված աշխատանք ստանալու իրավունք ունի, որը սոցիալիզմի խոշորագույն հասումներից է։ Աշխատանք ստանալու իրավունքը ոչ թե սոսկ դեկլարացիա է, այլ այն օրինականացված է սոցիալիստական երկրների սահմանադրություններում։ Ինչպես նշված է ՍՍՀՄ նոր սահմանադրության 40-րդ հոդվածում, «ՍՍՀՄ քաղաքացիներն ունեն աշխատանքի իրավունք, այսինքն... երաշխավորված աշխատանք ստանալու իրավունք... մասնագիտություն, զբաղմունքի և աշխատանքի տեսակ ընտրելու իրավունք՝ իրենց կոչմանը, ընդունակություններին, պրոֆեսիոնալ պատրաստությանը, կրթությանը համապատասխան, և հաշվի առնելով հասարակական պահանջմունքները»։ Դա անժխտելի իրականություն է սոցիալիզմի երկրներում, այն դեպքում, երբ բուրժուական պետությունների որոշ գաղափարախոսներ և պետական գործիչներ դեմագոգիկ կերպով, խոսելով մարդկանց իրավունքների մասին, անտեսում են այն հանգամանքը, որ կապիտալի երկրներում միլիոնավոր աշխատավորներ մշտապես գտնվում են աշխատանքի ոլորտից դուրս, գործազուրկ վիճակում, որով և ամենակոպիտ կերպով ոտնահարվում են աշխատավորներին աշխատանքով ապահովելու տարրական իրավունքները։

Սոցիալիզմի պայմաններում մարդու կողմից մարդու շահագործումը վերացնելու և ազատ աշխատանքի հաստատման շնորհիվ պայմաններ են ստեղծվում աշխատանքը բերկրալի, գրավիչ դարձնելու համար։ Սակայն աշխատանքի գրավիչ լինելը պատկերացնել սոսկ զվարճություն, ինչպես պատկերացրել են որոշ ուտոպիստ-սոցիալիստներ, իհարկե, միամիտ է և ոչ ճիշտ։

Կ. Մարքսը նկատել է, որ ազատ աշխատանքը, գրավիչ, բերկրալի աշխատանքը նաև լարված, ինտենսիվ աշխատանք է։ Աշխատանքի այդ առանձնահատկությունը Կ. Մարքսը ցույց է տվել՝ վկայակոչելով կոմպոզիտորի, իրոք ոչ միայն ազատ, գրավիչ, այլև լուրջ, լարված, ինտենսիվ աշխատանքը։ Այդպիսին



է աշխատանքի բնույթը նաև նյութական և հոգևոր արտադրության ոլորտներում։

ՍՍՀՄ-ում և մյուս սոցիալիստական երկրներում լուրջ քայլեր են արվում արտադրության մեջ նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի արմատավորմամբ թեթևացնելու ու հաճելի դարձնելու աշխատանքը։ Այդ ասպարեզում մեր երկրում տասնմեկերորդ հնգամյակում նախատեսվում է արագացնել արտադրապրոցեսների կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման տեմպերը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում, հատկապես օժանդակ աշխատանքների մեքենայացման տեմպերը։ Այնուհետև խնդիր է դրված աշխատանքի սոցիալ-տնտեսական և արտադրական պայմանների բարելավում, դրա ստեղծագործական բնույթի ուժեղացում, ձեռքի, ծանր ֆիզիկական աշխատանքի համակողմանի կրճատում։

Ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVI համագումարում, Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ, մեզ մոտ դեռևս ձեռքի աշխատանքով զբաղված են միլիոնավոր մարդիկ։ Ակադեմիկ Տ. Ս. Խաչատուրովի տվյալներով, շինարարության մեջ բանվորների համարյա $^1/_3$-ը զբաղված է ձեռքի աշխատանքով, արդյունաբերության մեջ այն կազմում է մոտավորապես $^1/_2$-ը։ Իսկ մոտ 10 միլիոն մարդ զբաղված է տրանսպորտային բարձիչ աշխատանքներով (Вопросы экономики, № 1, 1981, стр. 8)։ Այս թվերը, ինչպես երևում է, շատ մեծ են։ Նշված պրոբլեմի լուծումը կնպաստի աշխատանքի արտադրողականության շեշտակի բարձրացմանը։ Ձեռքի աշխատանքի դուրս մղումը հնարավորություն կընձեռի նաև բավարարելու որոշ ճյուղերում հանդես եկող աշխատուժի պակասը։ «Դա ո՛չ միայն տնտեսական, այլև սոցիալական լուրջ պրոբլեմ է։ Լուծել այն՝ նշանակում է վերացնել աշխատանքը յուրաքանչյուր մարդու կենսական առաջին պահանջմունքի վերածելու ճանապարհին եղած էական պատնեշները» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցումը կուսակցության XXVI համագումարին, էջ 94)։

Ազատ աշխատանքը հարկադիր աշխատանքից տարբերվում է նաև նրանով, որ այն արտադրության պրոցեսում հենվում է գիտակցական կարգապահության, բարեկամական փոխհարաբերությունների վրա։ «Հասարակական աշխատանքի կոմունիստական կազմակերպումը, դեպի որը տանող առաջին քայլը սոցիալիզմն է,— նշել է Վ. Ի. Լենինը— հենվում է և գնալով կշարունակի ավելի հենվել թե՛ կալվածատերերի և թե կապիտալիստների լուծը տապալած հենց իրենց՝ աշխատավորների ազատ և գիտակցական կարգապահության վրա» (Երկեր, հ. 29, էջ 513—514)։ Բնորոշ է այն, որ սոցիալիզմի ժամանակ ազատ, ստեղծագործական աշխատանքը կրում է զանգվածային բնույթ, որն արտահայտվում է սոցիալիստական մրցության անշեղ զարգացման մեջ։ Մեր երկրում սոցիալիզմի հաղթանակը մասսաների աշխատանքային այնպիսի խանդավառություն հարուցեց, որպիսիք են ստախանովյան շարժումը, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի, նորարարների շարժումը և այլն։

Սոցիալիստական մրցության այս և այլ ձևերը, որոնք մեծ թափով ծավալվել և ծավալվում են ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում, վկայում են, որ սոցիալիզմն աշխատանքի նկատմամբ ծնում է նոր վերաբերմունք, դարձնելով այն ազատ և ստեղծագործական։ Իսկ աշխատանքի մարդիկ շրջապատված են մեծ հոգատարությամբ ու խրախուսվում են թե՛ նյութապես, թե՛ բարոյապես։ Այսօր այդ հայրենասիրական շարժման՝ սոցիալիստական մրցության մեջ ընդգրկված են ավելի քան 190 միլիոն մարդ։

Սոցիալիստական մրցությունը մասսաների ստեղծագործությունն է։ Իր բուն էությամբ այն հենվում է մարդկանց բարձր գիտակցականության ու նախաձեռնության վրա։ Մասսայական անձնվիրության և ստեղծագործության վառ օրինակ է այն. միայն 1980 թվականին ժողովրդական տնտեսության մեջ ներդրվել են 4 միլիոն գյուտեր և ռացիոնալիզատորական առաջարկություններ։ Անշուշտ այդ ամենը կնպաստի կատարելագործելու արտադրության տեխնիկան ու տեխնոլոգիան, խնայելու նյութական ռեսուրսները, բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունն ու որակը։

Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության մեջ տասներորդ հնգամյա-

կում նորարարական առաջարկություններից և գյուտերից ստացած օգուտը, նախատեսված 210 միլիոնի փոխարեն, կազմել է 246 միլիոն ռուբլի։ Հնգամյակի տարիներին հանրապետության հիմնարկ-ձեռնարկություններում ներդրվել են մոտ 92 հազար նորարարական առաջարկություն, ավելի քան 1900 գյուտ։

Սոցիալիստական մրցության մեջ ի հայտ են գալիս հասարակական պարտքի բարձր գիտակցության, աշխատանքային հերոսության բազմաթիվ օրինակներ։ Մրցության շատ հաղթողներ, արտադրության առաջավորներ ու նորարարներ հայտնի են ամբողջ երկրին։ Իսկ ինչ վերաբերում է գիտակցական կարգապահությանը, ապա այն սոցիալիստական աշխատանքի բնորոշ հատկությունն է։ Հայտնի է, որ ֆեոդալական և կապիտալիստական մասնավոր սեփականատիրության պայմաններում գերիշխում էր մահակի և սովի վրա հենվող աշխատանքային կարգապահությունը։ Հանրային սոցիալիստական սեփականության տիրապետության ժամանակ վերացվում են ո՛չ միայն մարդու կողմից մարդու շահագործումը, այլև աշխատանքային կարգապահության այդ այլանդակ ձևերը։ Արտադրամիջոցների հանրային սեփականության նկատմամբ սոցիալիստական հասարակության անդամների հավասար իրավունքները, արտադրապրոցեսում միմյանց նկատմամբ փոխադարձ ընկերական հարաբերությունները ծնում են աշխատանքային գիտակցական կարգապահություն։ Այսինքն, յուրաքանչյուրը գիտակցորեն, լիարժեք ներդնելով իր ֆիզիկական և մտավոր ունակությունները, կատարում է աշխատանք ինչպես իր, այնպես և հասարակական պահանջմունքները բավարարելու համար։

Արդի փուլում, երբ ընթացիկ հնգամյակը հանդիսանում է աշխատանքի արդյունավետության և որակի հնգամյակ, խիստ կարևորվում է գիտակցական կարգապահությունը գործունեության բոլոր ոլորտներում։ Արտադրաառաջադրանքների հաջող կատարման համար, մյուս գործոնների հետ միասին, յուրաքանչյուր աշխատավորից պահանջվում է, ինչպես նշել է Լ. Ի. Բրեժնևը ՀամԿԿՍՄ XVIII համագումարում, «աշխատել ոչ թե պարզապես կարգապահ ու ջանասիրաբար, այլ աշխատել խղճի մտոք, հմտորեն, արդյունավետ կերպով, աշխատել գեղեցիկ կերպով, որպեսզի ուրիշներն էլ քեզ հարգեն քո աշխատանքի համար, և ինքդ էլ քեզ հարգես»։

ՍՍՀՄ սահմանադրության 60-րդ հոդվածում ասված է. «ՍՍՀՄ յուրաքանչյուր աշխատունակ քաղաքացու պարտականությունն ու պատվի գործն է՝ բարեխղճորեն աշխատել հանրօգուտ գործունեության իր ընտրած բնագավառում, պահպանել աշխատանքային կարգապահությունը։ Հանրօգուտ աշխատանքից խուսափելը անհամատեղելի է սոցիալիստական հասարակարգի սկզբունքների հետ»։ Խնդիրն այն է, որպեսզի աշխատանքային կոլեկտիվներում ստեղծվի բարոյահոգեբանական այնպիսի մթնոլորտ, որի ժամանակ պորտաբույծների, գործալիքների, խոտանարարների, հանրային ունեցվածքը հափշտակողների դրությունն իրոք անհանդուրժելի դառնա։

Արդի պայմաններում սոցիալիստական կարգապահության ամրապնդման հարցերի վրա մեծ ուշադրություն դարձրեց հատկապես կուսակցության XXVI համագումարը։ Այն կուսակցական, սովետական, տնտեսական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների առջև խնդիր դրեց՝ գործունեության յուրաքանչյուր օղակում անշեղորեն բարձրացնել պետական, արտադրական և աշխատանքային կարգապահությունը։

Փաստերը վկայում են, որ մեր օրերում, նույնիսկ աշխատանքային կարգապահության ամենափոքր խախտումը՝ հիմնական ֆոնդերի ոչ լիարժեք օգտագործումը, նյութական մատակարարման ժամկետների խախտումները, աշխատաժամանակի կորուստները և այլն, շատ թանկ են նստում ժողովրդական տնտեսությանը։ Չէ՞ որ մեր երկրում յուրաքանչյուր մեկ րոպեում արտադրվում է ավելի քան 2,4 մլն կվտ-ժամ էլեկտրաէներգիա, ձուլվում է մոտ 300 տոննա պողպատ, արտահանվում է ավելի քան հազար տոննա նավթ, ավելի քան 770 հազար խմ բնական գազ, 1,4 հազար տոննա ածուխ։ Ընդ որում, աշխատաժամանակի մեկ րոպեի կորուստը ամբողջ երկրի մասշտաբով հավասար է մոտ 200 հազար բանվորների ցերեկային աշխատանքի կորստին։

Ահա թե ինչու համագումարը լուրջ խնդիր դրեց՝ բարձրացնելու աշխա-



տանքային կարգապահությունը ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում։ Այդ կապակցությամբ կարևոր նշանակություն ունի նաև ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի և ՀԱՄԿԽ-ի որոշումը «Ժողովրդական տնտեսության մեջ աշխատանքային կարգապահության հետագա ամրապնդման և կադրերի հոսունության կրճատման մասին», որտեղ կոնկրետ միջոցառումներ են նախատեսվում այդ ասպարեզում տեղ գտած թերությունները վերացնելու համար։

Սոցիալիստական սեփականության երկու ձևերի առկայությունը (պետական և կոոպերատիվ-կոլտնտեսային) հանգեցնում է նաև սոցիալիստական աշխատանքի երկու ձևերի դրսևորման։ Պետական ձեռնարկություններում կատարվող աշխատանքը ամբողջովին անմիջական հասարակական բնույթ ունի, իսկ կոլտնտեսություններինը չի կարող այդպիսի բնույթ կրել, քանի որ այդ տնտեսությունների սեփականության ձևը չի ընդգրկում ողջ հասարակության, պետության մասշտաբը։ Ուստի, առանց վերապահումների բացառել, թե պետական ձեռնարկություններում և կոլտնտեսություններում կատարվող աշխատանքները հավասար չափով հանդիսանում են անմիջական հասարակական, չի կարելի ճիշտ համարել։ Կոլտնտեսականների աշխատանքը անմիջական հասարակական բնույթ է կրում միայն կոլտնտեսության շրջանակներում, մինչ բանվորների աշխատանքն անմիջապես հասարակական է ողջ հասարակության մասշտաբով։ Դրա համար բանվորների և կոլտնտեսականների աշխատանքի միջև եղած տարբերիչ հատկանիշները խարսխված են սոցիալիստական սեփականության երկու ձևերի վրա։ Սակայն սեփականության երկու ձևերի մերձեցման տենդենցը, որը նկատվում է արդի փուլում, հանգեցնում է նաև պետական և կոոպերատիվ-կոլտնտեսային սեկտորներում կիրառվող աշխատանքների մերձեցման և նրանց միջև եղած տարբերությունների նվազեցման, տալով նրանց ինդուստրիալ, ինտենսիվ բնույթ։

Ընդ որում, արդի պայմաններում գիտատեխնիկական հասումների՝ նոր, բարդ մեխանիզմների, ավտոմատ սարքերի, նորագույն տեխնոլոգիայի լայն կիրառումը ո՛չ միայն փոփոխում է աշխատանքի բուն պրոցեսն ու բնույթը, այլև փոփոխում է աշխատողների պրոֆեսիոնալ կազմը։ Բազմաթիվ նոր, բարդ ու դժվարին պրոֆեսիաների գոյավորումը աշխատողների առջև նոր խնդիր է դնում՝ ունենալ հանրակրթական ու տեխնիկական խոր գիտելիքներ, լինել բազմակողմանի զարգացած։ Մի խոսքով, արտադրության արդի բարձր մակարդակը պահանջում է պատրաստել լայն պրոֆիլով բարձրորակ կադրեր։

Այս ասպարեզում ձեռք բերած հաջողություններն ակնառու են։ Զգալի չափով փոխվել է տեխնիկական, բանվորական, կոլտնտեսային կադրերի որակական ու պրոֆեսիոնալ կազմը։ Դրա վառ վկայությունն են ՍՄԿԿ XXVI համագումարում հրապարակված տվյալները. տասը տարի առաջ ՍՍՀՄ բանվորների կեսից միայն փոքր-ինչ ավելին ուներ միջնակարգ (լրիվ և ոչ լրիվ) և բարձրագույն կրթություն, իսկ այժմ՝ երեք քառորդը։ Զգալի չափով բարելավվում է բանվոր դասակարգի երիտասարդ համալրման պրոֆեսիոնալ պատրաստությունը։ 60-ական թվականներին պատանիների ու աղջիկների միայն մեկ երրորդ մասն էր մասնագիտություն ստացել պրոֆտեխկրթության սիստեմում, իսկ միայն տասներորդ հնգամյակի ընթացքում՝ 12,5 միլիոն մարդ, այսինքն՝ արտադրություն եկած բանվորների երկու երրորդը։ Դրա հետ միասին փոխվում է նաև ժամանակակից բանվորի աշխատանքի բուն բնույթը։ Այն ավելի է հարստանում մտավոր բովանդակությամբ։

Խոր փոփոխություններ են տեղի ունենում նաև կոլտնտեսային գյուղացիության կյանքում։ Գյուղատնտեսական արտադրության ինդուստրացման համեմատ, կոլտնտեսականների աշխատանքն աստիճանաբար մերձենում է բանվորների աշխատանքին։ Գյուղում ավելանում են մեխանիզատորները, նորագույն տեխնիկայի հետ կապված մյուս աշխատողները։ Եվ պատահական չէ, որ միջնակարգ (լրիվ և ոչ լրիվ) և բարձրագույն կրթությամբ կոլտնտեսականների թիվը տասը տարում 39-ից հասել է ավելի քան 60 տոկոսի։ Անցած հնգամյակում ստվարանում էր նաև սովետական մտավորականությունը։ Այժմ երկրում յուրաքանչյուր չորրորդ աշխատողը հիմնականում մտավոր աշխատող է։ Հա-

սարակության ողջ կյանքում մտավորականությունն առավել նշանակալի դեր է խաղում։

Միլիոնավոր բանվորների և կոլտնտեսականների արտադրական գործունեության մեջ ավելի ու ավելի սերտորեն է միահյուսվում ֆիզիկական ու մտավոր աշխատանքը, դրանով իսկ նախադրյալ ստեղծելով նրանց միջև եղած էական տարբերությունների վերացման համար։

Յուրահատուկ բնույթ ունի նաև կոոպերացված արտադրողների աշխատանքի մի մասը, որ օգտագործվում է տնամերձ տնտեսությունում։ Այդ աշխատանքի արդյունքի մի մասն օգտագործվում է անձնական սպառման, իսկ մյուս մասը՝ շուկայում վաճառելու համար։ Բացի դրանից, բնորոշ է նաև անհատական բոստանային տնտեսություններում կիրառվող բանվոր-ծառայողների աշխատանքը, որի արդյունքն օգտագործվում է անձնական սպառման համար։ Աշխատանքի այս տեսակներն անմիջական հասարակական բնույթ չեն կրում, սակայն դրանք անհրաժեշտ են սոցիալիզմի ժամանակ, որովհետև ստեղծում են լրացուցիչ եկամուտներ աշխատավորների համար։

Սխալ է այն կարծիքը, որ պետք է վերացնել տնամերձ տնտեսությունները։ Անհրաժեշտ է հաշվի առնել այն, որ առայժմ բնակչության բանջարեղենի և այլ մթերքների պահանջարկի որոշ մասը բավարարում են այդ տնտեսությունները։ Սակայն սոցիալիստական արտադրաեղանակի ամրապնդման և զարգացման զուգընթաց անմիջական հասարակական աշխատանքի ոլորտն աստիճանաբար ընդլայնվում է։

Սոցիալիստական երկրներում կա նաև աշխատանքի այնպիսի տեսակ, որը նման չէ ո՛չ կապիտալիստական, ոչ էլ սոցիալիստական աշխատանքին։ Դա մանր ապրանքարտադրողների աշխատանքն է (արհեստավորների և այլոց), որի արդյունքը նախատեսվում է վաճառքի համար։

Սոցիալիզմի օրոք, չնայած վերանում է աշխատանքի հակամարտ, շահագործողական էությունը, բայց և այնպես աշխատանքի կապիտալիստական բաժանման որոշ մնացուկներ դեռևս պահպանվում են։ Օրինակ, պահպանվում են էական տարբերություններ արդյունաբերական և գյուղատնտեսական, որակյալ և ոչ որակյալ, ֆիզիկական և մտավոր աշխատանքի միջև։ Կապիտալիզմի պայմաններում, ինչպես նշել է Ֆ. Էնգելսը, «Աշխատանքի բաժանման հետ միասին մարդն ինքն էլ բաժան-բաժան է լինում։ Զարգացումը գործունեության մի որևէ ճյուղում ապահովելու համար զոհաբերվում են մնացած բոլոր ֆիզիկական ու մտավոր ընդունակությունները» (Անտի-Դյուրինգ, էջ 392)։ Սոցիալիզմի ժամանակ աշխատանքի բաժանման այդ աննորմալ հետևանքները վերացվում և ստեղծվում են աշխատանքի չափազանց մեծ լարվածությունը նվազեցնելու, ինչպես նաև աշխատողի բազմակողմանի զարգացման համար լայն հնարավորություններ։

Աշխատանքի սոցիալիստական կոոպերացիայում արտադրողի աշխատանքը բաժանվում է երկու մասի՝ աշխատանք իր համար (անհրաժեշտ աշխատանք) և աշխատանք հասարակության համար (հավելյալ աշխատանք), վերջինս պայմանավորված է սոցիալիստական ընդլայնված վերարտադրությունն ապահովելու և հասարակական սպառման ֆոնդեր ստեղծելու անհրաժեշտությամբ։ Սոցիալիստական հասարակարգում աշխատանքի այդ երկու մասերի միջև չեն կարող լինել հակամարտ հարաբերություններ, որովհետև ապրանքարտադրողներն իրենք են ինչպես իրենց աշխատանքի, այնպես էլ արտադրամիջոցների տերերը։

Սոցիալիստական արտադրահարաբերությունների ծագման ու զարգացման հետ միասին, ծագում ու գործում են համապատասխան տնտեսական օրենքներ։ Աշխատանքի արտադրողականության անշեղ բարձրացման օրենքի կիրառումը կարևոր նշանակություն ունի նյութական և հոգևոր առատ բարիքների ստեղծման գործում։ Ի հակադրություն կապիտալիզմի, սոցիալիզմը լայն հնարավորություններ է ստեղծում աշխատանքի արտադրողականության անշեղ բարձրացման համար։ «Կոմունիզմը,— գրել է Լենինը,— կամավոր, գիտակից, միավորված, առաջավոր տեխնիկա օգտագործող բանվորների աշխատանքի բարձրագույն արտադրողականությունն է կապիտալիստականի համեմատու-



թյամբ» (Երկեր, հ. 29, էջ 524)։ Աշխատանքի արտադրողականության անշեղ բարձրացումը սոցիալիզմի պայմաններում օբյեկտիվ անհրաժեշտություն է, և այն վճռական դեր ունի սոցիալիստական արտադրության զարգացման բնագավառում։

Սոցիալիզմի առավելությունը կապիտալիզմի նկատմամբ արտահայտվում է նաև աշխատանքի արտադրողականության աճի բարձր տեմպերով։ Այսպես, 1951—1979 թթ. ընթացքում, եթե ՍՍՀՄ-ում արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության միջին տարեկան աճը կազմել է 5,8 տոկոս, ապա ԱՄՆ-ում այն կազմել է 3,2 տոկոս։ Արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության մակարդակով մեր երկիրն առաջ է անցել շատ կապիտալիստական երկրներից։

Զարգացած սոցիալիզմի արդի փուլում հատուկ սրությամբ են դրված աշխատանքի արտադրողականության աճի, հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման խնդիրները, որոնք բխում են տնտեսական քաղաքականության ասպարեզում ՍՄԿԿ XXV և XXVI համագումարների առաջադրանքներից։ Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում նշել է. «Երկրի առջև կանգնած տնտեսական և սոցիալական բազմազան խնդիրները հաջողությամբ լուծելու համար այլ ուղի չկա, բացի աշխատանքի արտադրողականության արագ աճից, ամբողջ հանրային արտադրության արդյունավետության խիստ բարձրացումից (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 64)։ Այդ խնդիրն առաջադրվեց նաև կուսակցության XXVI համագումարում, համարելով այն արդի պայմաններում մեր էկոնոմիկայի զարգացման կենտրոնական խնդիրներից մեկը։ Հաշվի առնելով նաև այն հանգամանքը, որ առաջիկա տարիներին երկրի ժողովրդական տնտեսության մեջ աշխատուժի պակաս է զգացվելու, ապա աշխատանքի արտադրողականության և ինտենսիվության բարձրացումը առավել առաջնակարգ նշանակություն է ստանում։ Մանավանդ որ տասնմեկերորդ հնգամյակում նախատեսվում է աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին ստանալ ազգային եկամտի աճի 85—90 տոկոսը։ Այստեղից երևում է աշխատանքի արտադրողականության որոշիչ դերը հասարակական արտադրության զարգացման պրոցեսում։

Միաժամանակ պետք է հաշվի առնել նաև այն, որ սոցիալիզմի արտադրաուժերի զարգացման արդի աստիճանում արտադրվող նյութական ու հոգևոր բարիքներն այնքան առատ չեն, որ դրանք բաշխվեն ըստ պահանջի։ Իսկ աշխատանքը դեռևս չի դարձել հասարակության բոլոր անդամների անհրաժեշտ կենսական պահանջը։ Դեռևս կան մարդիկ, որոնք ձգտում են հասարակությանը տալ քիչ և նրանից ստանալ շատ։ Այդ հակասություններն աստիճանաբար կվերացվեն կոմունիստական հասարակության բարձրագույն փուլին անցնելու պրոցեսում։

Սոցիալիզմի ժամանակ ըստ աշխատանքի բաշխման օրենքի պահանջի կիրառումը կարևոր նշանակություն ունի բարձրացնելու աշխատավորների շահագրգռվածությունն իրենց աշխատանքի արդյունքների նկատմամբ։ Իսկ դա կարևոր սկզբունք է արտադրաուժերի զարգացման, հետևաբար և աշխատանքի արտադրողականության բարձրացման համար։ Այդ տեսակետից ինչպես գյուղատնտեսության, այնպես էլ արդյունաբերության աշխատողների նյութական շահագրգռվածության բարձրացման համար կարևոր նշանակություն ունեցան ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1965 թ.), սեպտեմբերյան (1965 թ.) ու հուլիսյան (1978 թ.) պլենումների, կուսակցության և կառավարության մյուս որոշումները, որոնք մեծ խթան են աշխատանքի արտադրողականության անշեղ բարձրացման ասպարեզում։

Լենինը բնութագրելով կոմունիստական աշխատանքը, դրանում տեսնում էր սոցիալիստական աշխատանքի համեմատությամբ որակական տարբերություն։ Նա գրել է. «Կոմունիստական աշխատանքը բառիս ավելի նեղ և ավելի խիստ առումով նշանակում է անվճար աշխատանք հասարակության օգտին, մի աշխատանք, որ կատարվում է ոչ թե որոշակի պարհակ կրելու համար, ոչ թե որոշ մթերքներ ստանալու իրավունքի համար, ոչ թե նախապես սահմանված և օրինականացված նորմաներով, այլ կամավոր աշխատանք, նորմաներից

դուրս աշխատանք, մի աշխատանք, որը տրվում է վարձատրությունը նկատի չունենալով, առանց վարձատրության պայմանների, մի աշխատանք, որը կատարվում է ընդհանուրի օգտին աշխատելու սովորությամբ և ընդհանուրի օգտին, աշխատանքի անհրաժեշտության նկատմամբ գիտակից (արդեն սովորություն դարձած) վերաբերմունքով, մի աշխատանք, որը պահանջմունք է առողջ օրգանիզմի համար» (Երկեր, հ. 30, էջ 661)։

Կոմունիստական աշխատանքի բնույթի մասին Վ. Ի. Լենինից առաջ նշել են նաև Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը։ Գոթայի ծրագրի քննադատությունը աշխատության մեջ Կ. Մարքսը գրել է, որ կոմունիստական հասարակությունում, երբ աշխատանքը կդադարի լոկ ապրուստի միջոց լինելուց, այն կդառնա կյանքի առաջին պահանջմունքը (տե՛ս Կ. Մարքս, Գոթայի ծրագրի քննադատությունը, 1955 թ., էջ 18—19)։ Ֆ. Էնգելսը նախատեսում էր, որ հետագա կոմունիստական հասարակությունում արտադրողական աշխատանքը կփոխարկվի ծանր բեռից հաճույքի։

Սոցիալիստական աշխատանքից կոմունիստականին անցումը բարդ և բավականին տևական պրոցես է։ Հաշվի առնելով ՍՍՀՄ-ում սոցիալիզմի կառուցման պատմական փորձը, կոմունիստական կուսակցությունը սովորեցնում է, որ անհրաժեշտ է ճիշտ նշել սոցիալիզմից կոմունիզմին անցման, նյութական և հոգևոր նախադրյալների ստեղծման, հետևապես և սոցիալիստական աշխատանքի զարգացման ու այն կոմունիստականի վերաճելու ուղիները։ Այդ դժվարին պրոցեսները չի կարելի շրջանցել, չի կարելի անցնել կոմունիստական աշխատանքին՝ չանցնելով սոցիալիստական աշխատանքի զարգացման փուլը։ Կոմունիստական աշխատանքը ծագում ու զարգանում է սոցիալիստական աշխատանքի հիման վրա, հանդիսանում դրա շարունակությունը, առավել հասունացումն ու կատարելագործումը։ Սոցիալիստական և կոմունիստական աշխատանքի միջև կան ընդհանուր և տարբերիչ գծեր։ Դրանց ընդհանրությունն արտահայտվում է նրանում, որ երկուսն էլ խարսխված են արտադրամիջոցների հասարակական սեփականության վրա։ Դրա շնորհիվ աշխատանքն իր զարգացման երկու փուլերում բնորոշվում է մարդու կողմից մարդու շահագործման բացակայությամբ, կոլեկտիվ բնույթով, ընկերական համագործակցությամբ և փոխադարձ օգնությամբ։

---

# ՃԱՆԱՊԱՐՀԱՇԻՆՈՒԹՅՈՒՆ. ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐ ԵՎ ԽՆԴԻՐՆԵՐ

**Գ. Ա. ՄԵԼՔՈՒՄՅԱՆ**
ՀՍՍՀ ավտոմոբիլային ճանապարհների շինարարության և շահագործման մինիստր

Մ**ԵԾ** է ՃԱՆԱՊԱՐՀՆԵՐԻ ԴԵՐԸ ժողովրդատնտեսական խնդիրների լուծման գործում, հասարակության կյանքում։ Դա, ինչ խոսք, վերաբերում է բոլոր ճանապարհներին՝ երկաթուղային, օդային, ավտոմոբիլային, գետային ու ծովային։

Մեր հանրապետության աշխարհագրական պայմաններում առաջնակարգ նշանակություն ունի ավտոմոբիլային ճանապարհը, քանի որ մենք չունենք գետային ու ծովային տրանսպորտ, իսկ բարդ լեռնային պայմանները խոչընդոտում են երկաթուղային ու օդային տրանսպորտի մրցակցությունը ավտոճանապարհների հետ։

Եվ միանգամայն օրինաչափ է, որ մեզ մոտ շարունակում է զարգանալ տրանսպորտի այդ ճյուղը։ Այժմ հանրապետության ութ և կես հազար կիլոմետր ճանապարհներով իրականացվում է ընդհանուր բեռնափոխադրումների մոտ 90 տոկոսը։ Բայց չէ՞ որ 60 տարի առաջ մեր հանրապետության տարածքում կար ընդամենը 1.530 կմ ճանապարհ, որից միայն 390 կմ ամուր ծածկով, այն էլ մեծ մասամբ քայքայված ու ավերված։

Հայաստանի սովետականացմամբ միայն հնարավորություն ընձեռվեց սկսելու հաղթարշավը կյանքի բոլոր բնագավառներում, այդ թվում և ճանապարհաշինության ոլորտում։ Եվ ահա այսօր մեր մինիստրության սպասարկած մոտ յոթ և կես հազար կմ ճանապարհներից 87 տոկոսն ունի ամուր ծածկ, այդ թվում 62 տոկոսը՝ կատարելագործված սև ծածկ։

Հանրապետության ճանապարհային ցանցը, ըստ իր ժողովրդատնտեսական նշանակության և վարչական ենթակայության, բաժանվում է միութենական, հանրապետական և տեղական նշանակության։ Ընդհանրապես ճանապարհային ցանցի որակը գնահատվում է ամուր և կատարելագործված ծածկերի տեսակարար կշռով։ Ամուր ծածկով ճանապարհների տեսակարար կշիռը Հայաստանում, Միության մասշտաբով, ամենաբարձրերից է, իսկ տերիտորիայի 1000 f կմ մակերեսի հաշվով, կատարելագործված ծածկերի տարածությամբ, եղբայրական հանրապետությունների շարքում Հայաստանը զբաղեցնում է առաջին տեղը։

Անվիճելի է որակյալ ճանապարհի առավելությունը ուղևորների, ժողովրդատնտեսական բեռների փոխադրման և առհասարակ երթևեկության ասպարեզում։ Այսպես, եթե մեկ տոննա-կիլոմետր ավտոմոբիլային բեռնափոխադրումը ժամանակակից մայրուղիներով արժե 2—3 կոպեկ, ապա անբարեկարգ գրունտային ճանապարհներով՝ 15—20 կոպեկ։ Միայն մեր հանրապետությունում ավտոմեքենաներով տարեկան տեղափոխվում են 76 մլն տոննա ժողովրդատնտեսական բեռներ և 372 մլն ուղևորներ։ Միության մասշտաբով այդ թվերը հասնում են միլիարդների։

Կուսակցության XXVI համագումարը խնդիր դրեց տասնմեկերորդ հնգամյակում ավտոմոբիլային փոխադրումների ծավալն ավելացնել 1,4 անգամ։

Ակնհայտ է, որ այս մեծ և պատասխանատու խնդիրը կարելի է լուծել միայն համարավետ ճանապարհներ ունենալով։

Հանրապետության ընդհանուր օգտագործման ճանապարհային ցանցը իր պատմական կազմավորմամբ հիմնականում բավարարում է ժողովրդական տնտեսության զարգացման պահանջները և նոր ուղղություններով ճանապարհների կառուցման անհրաժեշտություն գրեթե չկա։ Առաջնահերթ խնդիրը, ավտոտրանսպորտի աճի տեմպերին համապատասխան, առկա ճանապարհային ցանցի վերակառուցումն ու դրա հետագա բարելավումն է, շահագործման պայմանների կատարելագործումը և երթևեկության անվտանգության ապահովումը։ Այս ասպարեզում զգալի աշխատանք են կատարել մեր ճանապարհաշինարարները հատկապես վերջին մեկ, մեկուկես տասնամյակում։ Եթե նախկինում Սևան ու Լենինական, Գուգարքի ու Զանգեզուրի լեռնաշխարհները տանող ճանապարհներն անցնում էին վտանգավոր ոլորապտույտներով ու չէին ապահովում ավտոտրանսպորտի հնարավոր առավելագույն արագությունն ու անվտանգությունը, ապա այսօր դրանց մեծ մասը վերակառուցված է տեխնիկական ամենաբարձր ցուցանիշներով։

Զգալի հաջողությունների հասան ճանապարհաշինարարները հատկապես տասներորդ հնգամյակի սոցիալ-տնտեսական զարգացման պլանների ու ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման գործում։ Ժամկետից շուտ, Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձի օրերին, նրանք զեկուցեցին ճանապարհաշինարարության կապիտալ ներդրումների, ինչպես նաև շինմոնտաժային աշխատանքների հինգ տարվա առաջադրանքների կատարման մասին։ Հնգամյա պլանով նախատեսված՝ ճանապարհների կապիտալ շինարարության պլանը կատարվեց 120 տոկոսով, 315 կմ-ի փոխարեն շահագործման հանձնվեց 379 կմ ճանապարհ։ Հիմնական ֆոնդերի գործարկման պլանը կատարվեց 103, կապալառուական աշխատանքներինը՝ 119 տոկոսով, կատարվեցին նաև աշխատանքի արտադրողականության աճի, ինքնարժեքի իջեցման և շահույթների պլանները։ Հնգամյակը հաջողությամբ ավարտեցին մինիստրության արդյունաբերական ձեռնարկությունները՝ համախառն արտադրանքի թողարկման ու իրացման պլանները կատարելով 102,6 տոկոսով։

Հնգամյակի տարիներին կառուցվել ու վերակառուցվել են մեր հանրապետության համար այնպիսի կարևոր ճանապարհներ ու դրանց առանձին հատվածներ, ինչպիսիք են՝ Աշտարակ—Լենինական ճանապարհի Բազմաբերդ—Թալին—Մաստարա 28 կմ երկարությամբ հատվածը,. Շամշադինի և Կրասնոսելսկի շրջանները միացնող 40 կմ երկարությամբ նոր ավտոճանապարհը, Սևան—Կամո ճանապարհի 30 կմ երկարությամբ հատվածը և բազմաթիվ այլ ուղիներ։ 1980 թ. վերջերին շահագործման հանձնվեց Մեղրու և Ղափանի շրջանների, ինչպես և ողջ հանրապետության համար խոշոր սոցիալ-տնտեսական նշանակություն ունեցող Մեղրի—Քաջարան 48 կմ երկարությամբ բարձրլեռնային ասֆալտապատ ավտոճանապարհը, որը ժամանակի ու տարածության տեսակետից շուրջ չորս անգամ միմյանց մոտեցրեց Մեղրին ու Ղափանը։

Երթևեկության անվտանգությունն ու արագությունն ապահովելու հարցում կարևոր նշանակություն ունի մագիստրալային խճուղիների դուրս բերումը բնակավայրերից։ Այդ պրոբլեմը լուծելու նպատակով մեզ մոտ մեծ աշխատանք է կատարված։ Բավական է հիշատակել Երևան—Ապարան—Սպիտակ խճուղին և առանձնապես Երևան—Արտաշատ 20 կմ երկարությամբ տեխնիկական առաջին կարգի մայրուղին, որով շրջանցվեցին Մասիսի և Արտաշատի շրջանների տասնյակ բնակավայրերը։

Չնայած կատարված մեծ ծավալի աշխատանքին, մեր հանրապետության ճանապարհային ցանցի շուրջ մեկ երրորդը տակավին չի բավարարում այսօրվա տրանսպորտային հոսքի թողունակության պահանջները և կարիք ունի լրիվ վերակառուցման։ Զգալի թվով հատվածներ դեռևս նեղ են, մեծ երկայնակի թեքություններով և շրջադարձերի փոքր շառավիղներով։

Քաջ գիտակցելով իրենց վստահված գործի կարևորությունը, մեր ճանապարհաշինական կոլեկտիվները, մեծ խանդավառությամբ ընդունելով կուսակցության XXVI համագումարի պատմական որոշումները, ձեռնամուխ են եղել



ներքին ռեզերվների հայտաբերմանը, աշխատանքի կազմակերպման առաջավոր մեթոդների ու փորձի կիրառմանը, ինչպես, օրինակ, բրիգադային կապալի եղանակը, որակի կառավարման կոմպլեքսային սիստեմի ներդրումը, որը հնարավորություն է ընձեռում զգալիորեն բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունն ու որակը, խնայողաբար օգտագործելու նյութերը։

Առանձնապես նշանակալի են Աշտարակի ճանապարհների նորոգման-շինարարական վարչության կոլեկտիվի հաջողությունները։ Աշտարակցիները հնգամյակի բոլոր տարիներին արժանացել են ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի, ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին ու պարգևատրվել հուշանշանով։ Անցած հնգամյակում լավ աշխատեցին նաև մասնագիտացված կամրջաշինական վարչության, Երևանի № 1, Եղեգնաձորի № 3, Իջևանի № 5 վարչությունների կոլեկտիվները։ Ձեռք բերված հաջողությունների հիմնական նախապայմանը որակյալ մասնագետ կադրերով և զարգացած արտադրական բազայով ապահովված լինելն է։

Վերջին տարիներին զգալիորեն մեծացել են մեր կազմակերպությունների արտադրակարողությունները, աճել է մեխանիզմներով նրանց զինվածությունը։ Շատ տնտեսություններ ունեն հզոր արտադրաբազա՝ ժամանակակից ավտոմատացված ասֆալտ-բետոնի գործարաններով, ճանապարհաշինարարական մեխանիզմներով և ի վիճակի են տարեկան կառուցելու մի քանի տասնյակ կմ ճանապարհ։

Այսօր մեր ճանապարհաշինարարներն ունեն տարեկան ավելի քան 33 հազար խմ կարողությամբ կամրջային երկաթ-բետոնե կոնստրուկցիաների, փորձնական-մեխանիկական, ասֆալտ-բետոնե խառնուրդի համար այնքան կարևոր հանքային փոշու գործարաններ, որոնց կարողությունները տարեցտարի ավելացվում են, կառուցվում են նոր արտադրամասեր, ընդլայնվում է արտադրանքի տեսականին։ Այնուամենայնիվ, ճանապարհաշինարարները հզոր բուլդոզերների, մեծ կարողության էքսկավատորների, ինքնագնաց կեռաշերեփների և ուղեհարթիչների, հողային պաստառն ու ծածկը խտացնող ծանր մեխանիզմների խիստ կարիք ունեն։ Իսկ շինարարության տեխնոլոգիական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման հզոր ագրեգատներ, ցավոք, ընդհանրապես չունենք։

1980 թ. ապրիլին կուսակցության Կենտրոնական կոմիտեն ու սովետական կառավարությունը որոշում ընդունեցին ավտոմոբիլային ճանապարհների շինարարության, նորոգման ու պահպանության բարելավման միջոցառումների մասին։ Այդ կարևոր որոշման մեջ նախատեսված միջոցառումների զգալի մասը տեղ է գտել նաև երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման հիմնական ուղղություններում, որը հաստատեց կուսակցության XXVI համագումարը։ Հիշյալ որոշումներով տասնմեկերորդ հնգամյակում նախատեսվում է շահագործման հանձնել 80 հազար կմ ընդհանուր օգտագործման նոր ճանապարհներ, որից 11,5 հազար կմ՝ միութենական ու հանրապետական։ Այդ նպատակով հատկացվում են 13,5 մլրդ ռուբլի պետական կապիտալ ներդրումներ։ Մինչև ընթացիկ տասնամյակի վերջը պետք է ավարտվի կատարելագործված ծածկով հիմնական մայրուղիների ցանցի ստեղծումը ողջ երկրում։

Կուսակցության ու կառավարության այս մասշտաբային կանխագծումների իրականացումը պահանջում է մշակել ու ներդնել արտադրակարողությունների հզորացման, ներքին ռեզերվների մոբիլիզացման կոմպլեքս միջոցառումներ, արագացնել ճանապարհների կառուցումն ու դրանց գործարկումը՝ նյութական ու ֆինանսական միջոցների կենտրոնացման, արտադրության տեխնոլոգիայի և դրա կազմակերպման կատարելագործման, ճանապարհների շինարարության որակի բարձրացման, նոր տեխնիկայի ու աշխատանքի կազմակերպման առաջավոր ձևերի կիրառմամբ։

Կուսակցության և կառավարության որոշումներում համապատասխան մինիստրություններին ու գերատեսչություններին տրված են կոնկրետ հանձնարարականներ մշակելու և իրականացնելու անհրաժեշտ միջոցառումներ, ապահովելու ճանապարհաշինարարների և շահագործողների պահանջները հզոր կոմպլեքսային ճանապարհաշինական մեխանիզմներով, նորոգման աշխա-

տանքների լրիվ մեքենայացման ագրեգատներով, բարձրորակ շինանյութերով ու հավաքովի կոնստրուկցիաներով, ճանապարհների նշագծման ու կահավորման համար անհրաժեշտ նիտրոէմալային ներկերի, լուսանդրադարձիչ ու պոլիէթիլենային նյութերով և առավել ևս բարձրորակ ճանապարհային բիտումով, առանց որի անհնար է պատկերացնել ո՛չ միայն նոր ճանապարհների կառուցումը, այլև եղած ցանցի պահպանումն ու շահագործումը:

Ճանապարհների կառուցմանն ու վերակառուցմանը զուգահեռ մեր մինիստրության կազմակերպություններն իրականացնում են նաև ոչ պակաս նշանակություն ու կարևորություն ունեցող խնդիր՝ ճանապարհների ժամանակին վերանորոգման, խնամքի ու պահպանման գործը: Նրանց տարեկան աշխատանքների ծավալի շուրջ երկու երրորդն ուղղված է հանրապետության ճանապարհների շահագործման ցուցանիշների բարձրացման, ավտոտրանսպորտի տարվա բոլոր եղանակներին անխափան ու անվթար երթևեկության ապահովման, ուղևորների ու վարորդների սպասարկման մակարդակի բարձրացման գործին: Այս առումով առավել արգասաբեր էին տասներորդ հնգամյակի տարիները: Հիմնական ու միջին նորոգում է կատարված շուրջ 4.500 կմ ճանապարհի վրա, կառուցվել են 115 ավտոտաղավարներ ու հանգստյան գոտիներ, տրանսպորտի տեխնիկական սպասարկման 66 կամրջակներ, բնակավայրերում կառուցվել են շուրջ 121 կմ երկարությամբ մայթեր, ճանապարհների վտանգավոր հատվածներում տեղադրվել են 60 հազար գծամետր մետաղական ու ճոպանային արգելիչներ, ավելի քան 60 հազար երկաթ-բետոնե կարճասյուներ և կահավորման բազմաթիվ այլ էլեմենտներ: Մեր շահագործողների քրտնաջան աշխատանքի շնորհիվ ձմռան ամիսներին պահպանության ենթակա հազարավոր կմ ճանապարհներին, բացի աղետային ձնաբուքերի պահերից, երբ ընդհանրապես խախտվում է ճանապարհի տեսանելիությունը, չի ընդհատվում երթևեկությունը: Այդ նպատակին են ծառայում հարյուրավոր ավտոուղեհարթիչներ ու բուլդոզերներ, հատուկ ձյունմաքրիչ մեխանիզմներ, մեքենաներ, իրականացվում է շուրջօրյա օպերատիվ հերթապահություն թե՛ տեղերում, թե՛ մինիստրությունում:

Ճանապարհների նորոգման, դրանց պահպանման ու խնամքի գործն անհամեմատ ավելի լավ կլիներ, եթե, իրական վիճակից ելնելով, պահանջվող աշխատանքների ծավալներին համապատասխան և ըստ հաշվարկի, պլանավորող մարմինները հատկացնեին անհրաժեշտ քանակությամբ ֆոնդային նյութեր՝ բիտում, ցեմենտ, մետաղ և ծածկերի նշագծման համար անհրաժեշտ նիտրոէմալային ներկեր: Բանն այն է, որ ճանապարհներ շահագործող կազմակերպությունները վերոհիշյալ ֆոնդային նյութերով և հատկապես բիտումով ըստ պահանջարկի չեն ապահովվում, որի պատճառով սև ծածկերը սահմանված ժամկետներին չեն վերանորոգվում և սկսում են քայքայվել: Իսկ հետագայում ժամկետանց նորոգումներն ավելի թանկ են նստում:

Տրանսպորտի անվտանգ երթևեկության կազմակերպումն այսօր դժվար է պատկերացնել առանց ճանապարհների հորիզոնական և ուղղահայաց նշագծման, որն իրականացվում է հիմնականում նիտրոէմալային ներկերով, իսկ դրանք 2—3 ամիս հետո ինտենսիվ երթևեկության հետևանքով ջնջվում են և ստիպված ենք լինում տարեկան մի քանի անգամ այն նորացնել, իսկ դա շատ աշխատատար է և մեծ ժամանակ է պահանջում, չհաշված, որ ներկերը ստացվում են պահանջարկի աննշան չափով միայն: Ժամանակն է, որ հայրենական արդյունաբերությունը ճանապարհաշինարարների պահանջներն ապահովի թերմոպլաստիկ նյութերով, որոնք ունեն 10—12 անգամ ավելի ծառայության ժամկետ, քան օգտագործվող ներկերը: Ճանապարհների պահպանումն ու խնամքը անհամեմատ ավելի արագ ու որակով կկատարվի, եթե մեքենաշինական ձեռնարկությունները շահագործողներին ապահովեն ճանապարհների նորոգման ու խնամքի համար անհրաժեշտ փոքր մեքենայացված կոմպլեքսային հարմարանքներով ու ագրեգատներով:

Մեր հանրապետության ճանապարհների շուրջ 60 տոկոսն ունի տեղական նշանակություն: Դրանց կառուցման, նորոգման ու խնամքի համար տարեկան ներդրվում է 18—19 մլն ռուբլի, կառուցվում ու նորոգվում է 700—800 կմ տե-



ղական նշանակության ավտոճանապարհ: Այդպիսի ճանապարհների բարելավման նպատակով կատարած նպատակասլաց աշխատանքի արդյունքն է այն, որ եթե Միության մասշտաբով դեռևս չի լուծված մագիստրալ ճանապարհների հետ բոլոր մարզային կենտրոնների, բազմաթիվ շրջկենտրոնների ու կոլտնտեսությունների, նույնիսկ մի շարք ինքնավար հանրապետությունների մայրաքաղաքների կայուն ավտոտրանսպորտային կապի հարցը, ապա մեր հանրապետությունում միայն 37 լեռնային, հեռավոր փոքր բնակավայրեր են, որ ճանապարհների անբարեկարգության հետևանքով չունեն կայուն ավտոտրանսպորտային կապ շրջկենտրոնների հետ, և դրանք էլ տասնմեկերորդ հնգամյակում կապահովվեն հարմարավետ ճանապարհներով: Տասներորդ հնգամյակում զգալի աշխատանք կատարվեց այդ բնագավառում: 26 բնակավայր, որոնք հուսալիորեն հաղորդակցված չէին շրջկենտրոնների հետ, ապահովվեցին մայրուղիներով: Կառուցվեցին ու վերակառուցվեցին Ամասիայի, Ղափանի, Նոյեմբերյանի, Մեղրու, Սիսիանի և այլ շրջանների զգալի թվով տեղական ճանապարհներ: Տասնմեկերորդ հնգամյակում նախատեսված է կառուցել և բարեկարգել Ազիզբեկովի, Թումանյանի, Թալինի, Ղափանի, Կրասնոսելսկի և մյուս բարձր լեռնային շրջանների տեղական, ինչպես նաև Եղեգնաձորի, Շամշադինի, Աշտարակի, Թումանյանի և այլ շրջաններում գտնվող պատմական հուշարձանների և համալիրների ճանապարհները:

Հայտնի է, որ տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործումը, բարձրորակ շինանյութերի ու նոր կոնստրուկցիաների կիրառումը պահանջում են կատարելագործել նաև շինարարական աշխատանքների որակի հսկողության գործը: Այն, ցավոք, մեզ մոտ դեռևս իրականացվում է հնացած եղանակներով: Ծածկերի որակը ստուգելու համար վերցվում են նմուշները, մի քանի օր ստուգվում լաբորատորիաներում, նոր միայն հայտնի է դառնում որակի գնահատականը: Այսօր այդ մեթոդները չեն բավարարում: Անհրաժեշտ են շարժական լաբորատորիաներ՝ հագեցված ուլտրաձայնային և էլեկտրոնային չափիչ-ստուգիչ սարքերով, որոնք հենց տեղում կատարեն որակի ստուգում և այն բարելավելու համապատասխան ցուցումներ տան: Այս նպատակով մեծ սպասելիքներ ունեն ճանապարհաշինարարները ինչպես գիտահետազոտական հաստատություններից, այնպես էլ համապատասխան սարքավորումներ արտադրող արդյունաբերությունից:

Մեծ են մեր հանրապետության ճանապարհաշինարարների անելիքները տասնմեկերորդ հնգամյակում: Արդեն այս տարի ամբողջությամբ կավարտվի Երևան—Լենինական և Երևան—Կիրովական մայրուղիների Լանջիկ—Մաստարա և Սպիտակի լեռնանցքի չվերակառուցված հատվածների կառուցումը, որով փաստորեն հանրապետության երկու խոշորագույն քաղաքների մայրուղիները կլինեն լրիվ վերակառուցված: Կշարունակվեն և հնգամյակի ընթացքում կավարտվեն Արարատ քաղաքի շրջանց ճանապարհը, Երասխ—Եղեգնաձոր ճանապարհի Քյարքի—Սոլետաշեն—Ջիվա հատվածը, Դիլիջան—Իջևան ճանապարհի չվերակառուցված հատվածները, Երևան—Մասիս նոր ավտոմայրուղին, Էջմիածնի մուտքի մոտ կառուցվող տրանսպորտային մեծ հանգույցը և շատ այլ ճանապարհներ ու կառույցներ, որոնք առավելագույնս կնպաստեն ժողովրդական տնտեսության առաջընթացին, կուսակցության XXVI համագումարի որոշումների անշեղ կատարմանը, սովետական մարդու բարեկեցության բարձրացմանը:

# ՆՈՐ-ՆԱԽԻՋԵՎԱՆԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԳԱՂՈՒԹԻ ՄԱՍՆԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ-ՆԱՐՈԴՆԻԿԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆԸ

ՀՐԱՆՈՒՇ ՂԵՎՈՆԴՅԱՆ

**XVIII ԴԱՐԻ ՎԵՐՋԻՆ** Ռուսաստանում Եկատերինա II-ի հրամանագրով 1779 թ. նոյեմբերի 14-ից կազմակերպվում է Ղրիմի քրիստոնյա բնակչության, ինչպես և հայերի գաղթը: Իսկ 1781 թ. ապրիլին Ղրիմի 6 քաղաքներից գաղթած հայերը միանում ու հիմնում են Նոր-Նախիջևան քաղաքը և հայկական 5 գյուղ: Ռուսական կառավարությունը Նոր-Նախիջևանին տալիս է մի շարք արտոնություններ: Գաղութի բնակիչները 10 տարով ազատվում են հարկերից, տրվում է ինքնավարություն, ընտրվում են մագիստրատ, հինգ դատավորներ, քաղաքային դումա, քաղաքագլուխ: Գյուղացիները վճարելու էին ոչ թե գլխահարկ, ինչպես Ռուսաստանի ճորտ գյուղացիները, այլ՝ հողահարկ: Երկրագործությունը, արհեստագործությունը, արդյունաբերությունը հենց սկզբից խարսխվում են ազատ վարձու աշխատանքի վրա, որը ճանապարհ է հարթում գաղթօջախի տնտեսական կյանքը կապիտալիստական ուղիով զարգացնելու համար:

Այդ ժամանակաշրջանում բուն Հայաստանում ազատագրական շարժումը վերելք էր ապրում, և հայ առաջավոր շատ մտավորականներ Հայաստանի ազատագրման հույսերը կապում էին Ռուսաստանի հետ: Ռուսաստանում հանգրվանած Նոր-Նախիջևանի հայկական զանգվածի ինքնավար և բարվոք վիճակը նոր հույս էր ներշնչում:

Դոնի հայ համայնքը ևս սերտորեն կապված էր հայ ժողովրդի հետ, արձագանքում էր հայ իրականության հրատապ խնդիրներին, օգնություն էր ցույց տալիս հայրենակիցներին:

XIX դարի 70—80-ական թվականներին Նոր-Նախիջևանի գաղութի կյանքը հարուստ է հայ և ռուս հեղափոխական նարոդնիկների բարեկամական կապերի ու համատեղ պայքարի օրինակներով:

Դեռևս անցյալ դարի երկրորդ կեսին Նոր-Նախիջևանում սկսվում է հասարակական-կուլտուրական կյանքի, լուսավորության, լեզվի անաղարտության ու նոր լեզվի՝ աշխարհաբարի հաղթանակի ու տարածման մի լայն շարժում, որն իրագործվում էր կղերա-աղայական ռեակցիայի դեմ տարվող պայքարի պայմաններում: Նոր-Նախիջևանի գաղութը միաժամանակ համառ պայքար է մղել հայ գաղութին տրված առանձնաշնորհումներն ու արտոնությունները պահպանելու համար: Ու թեև այդ պայքարն անմիջական գործնական հետևանքների չհանգեցրեց, բայց դրական նշանակություն ունեցավ հասարակական կյանքի աշխուժացման ու առաջընթացի առումով: 1870 թ. վերջնականապես փակվեց Նոր-Նախիջևանի մագիստրատը և վերջ տրվեց Դոնի հայկական գաղութին շնորհված ինքնավարությանը: Նոր-Նախիջևանը միացվեց Ռոստով քաղաքին, իսկ հայկական գյուղերը, արդեն 1864 թվականից, դուրս էին բերվել Նոր-Նախիջևանի ենթակայությունից և ընդհանուր հիմունքներով միացվել Եկատերինոսլավի (այժմ Դնեպրոպետրովսկ) նահանգի գավառներին:

Նոր-Նախիջևանում սկզբնավորվող ապրանքադրամական հարաբերությունների զարգացման, կապիտալիստական հարաբերությունների կազմավորման շրջանում հողային վեճերը նույնպես հիմք էին դառնում համառ ու տևական այն տարաձայնություններին, որոնք ծագում էին քաղաքի կալվածատիրության և բուրժուական վերնախավի միջև. նման վեճեր ու տարաձայնություններ ծագեցին նաև քաղաքային դեմոկրատիայի և քաղաքամերձ հայ գյուղացիության միջև: Այդ բախումները



բուռն ընթացք ստացան XIX դ. երկրորդ կեսին, և այդ հակամարտություններում Նոր-Նախիջևանի երիտասարդությունն աստիճանաբար հասունանում և իր հայացքն ուղղում էր դեպի Մ. Նալբանդյանի դեմոկրատական գաղափարներն ու գլխավորած շարժումը:

Ռուսաստանի առաջավոր կենտրոններում և հատկապես Մոսկվայում ու Պետերբուրգում կրթություն ստացած նորնախիջևանցի հայ երիտասարդները կրում էին նաև այդ կենտրոնների հասարակական-քաղաքական կյանքի ազդեցությունը և, վերադառնալով հայրենի քաղաքը, դառնում լուսավորության տարածողներ:

Լուսավորության գործին մեծապես նպաստեց Նոր-Նախիջևանի Սուրբ Խաչ վանքում 1790 թ. հիմնադրված տպարանը, որտեղ հինգ տարում (1790—1795) տպագրվեց 20 գիրք[1]: Հայկական այս գաղթօջախի հեղափոխական պայքարի առաջին տարածողը եղել է Միքայել Նալբանդյանը: Նալբանդյանի կյանքը և հատկապես նրա թաղումը ցույց տվեցին, որ բոցաշունչ հեղափոխականն իր ծննդավայրում ուներ բազմաթիվ գաղափարակիցներ ու հետևորդներ:

Հեղափոխական գաղափարներով տարված Նոր-Նախիջևանի հայ երիտասարդությունը 70—80-ական թվականներին աստիճանաբար ընդգրկվում էր հեղափոխական-նարոդնիկական շարժման մեջ: Արխիվներում պահպանված նյութերը ցույց են տալիս, որ 60-ական թվականների վերջերին և 70-ականների սկզբին իրենց օպոզիցիոն գաղափարների համար դատապարտվել են ո՛չ միայն տեղացիները, այլև Նոր-Նախիջևան ժամանած առանձին հայեր, որոնք Կովկասից կամ Ռուսաստանի այլ վայրերից էին և, նույնիսկ՝ արտասահմանից: Այսպես, 1871 թ. գարնանը Նախիջևանում բանտարկվել է Կերչից եկած Հակոբ Սունդյանցը, որը մեղադրվում էր «վտանգավոր գաղափարներ» տարածելու և հակապետական գործունեության համար[2]: 1872 թ. մարտին Ռոստովի ոստիկանական վարչությունը դատական պատասխանատվության է ենթարկում նաև Մկրտիչ Տոնիկովին, որ 1868 թ. եկել էր Կոստանդնուպոլսից և 1870 թ. բնակություն հաստատել Նոր-Նախիջևանում:

Ինչպես հրապարակի վրա եղած, նույնպես և արխիվային նյութերի ուսումնասիրությունը մեզ հանգեցրել է այն եզրակացության, որ Նոր-Նախիջևանի հայ առաջադեմ երիտասարդությունն ակտիվ մասնակցել է «Զեմլյա ի վոլյա», «Չոռնի պերեդել» և «Նարոդնայա վոլյա» նարոդնիկական կազմակերպությունների տեղական խմբակների գործունեությանը: Այսպես, Սերոբ, Պետրոս, Պլատոն և Լուսբարոն Փեշեքերյանները նարոդնիկներ էին: Նրանք երկար ժամանակ ո՛չ միայն իրենց բնակարանները դարձրել էին նարոդնիկների հավաքատեղի, այլև նրանցից Ս. Փեշեքերյանն առաջինն էր, որ Նոր-Նախիջևանում կազմակերպեց բանվորական նարոդնիկական խմբակ: Իրենց ակտիվ գործունեությամբ հայտնի էին նաև Կալայջյանների ընտանիքը՝ Մելքոն, Թագուհի, Եմելյան Կալայջյանները: Առաջինիս հեղափոխական-նարոդնիկական հայացքները ձևավորվել էին դեռևս Լազարյան ճեմարանում սովորելու տարիներին: Հետագայում նա հեղափոխական գործունեություն է ծավալել ո՛չ միայն Ռոստովում ու Նախիջևանում, այլև Պետերբուրգում, դատապարտվել է 25 տարվա սիբիրյան աքսորի: Նրա քույրը՝ Թագուհին, հեղափոխական գործունեության համար նույնպես աքսորվել է Սիբիր և մահացել աքսորում: Կալայջյանների տանն է հյուրընկալվել Գերման Լոպատինը[3]:

Նորնախիջևանցիներից ակտիվ պրոպագանդիստական աշխատանք է ծավալել Ռաֆայելյանների ընտանիքը: Հայտնի էին հայր և աղջիկ Ասատրյանները, Ռաֆայել Չեռնիշևը, Հակոբ և Սերգեյ Ծապովալովները, Մակար Պապովը, Գևորգ Խոջոյանը (Խոջաևը) և շատ ուրիշներ:

Դեռևս 70-ական թվականների կեսերին Ռոստով քաղաքի ուսումնական հաստատություններում սովորում էին զգալի թվով նորնախիջևանցի հայ երիտասարդներ, որոնք ընդգրկվում էին գաղտնի խմբակներում և մասնակցում արգելված գրքերի ընթերցումներին: Նրանք միաժամանակ կապեր էին հաստատում կենտրոնական նարոդնիկական խմբակների այն ներկայացուցիչների հետ, որոնք Ռոստով էին գալիս խմբակներ կազմակերպելու նպատակով: 70-ական թվականների վերջերին այդ խմբակի անդամներից աչքի են ընկնում Սերոբ Փեշեքերյանը և Հակոբ Ծապովալովը: Դեռևս Ռոստովի ռեալական ուսումնարանում սովորելու տարիներին նրանք եղել

---

[1] *Տե՛ս Վ. Բարխուդարյան, Նոր-Նախիջևանի հայկական գաղութի պատմությունը (1779—1861), Երևան, 1967, էջ 432:*

[2] Центральный Государственный архив Октябрьской революции (*այսուհետ* ЦГАОР), III отдел. III эксп. ф. 109, 1871, оп. 156, д. 81, лл. 3, 5, 11.

[3] Пешекеров П., Пропаганда народовольцев в Ростове-на-Дону в 1882 — 1884 гг., в сборнике «Народовольцы после 1 марта 1881 г», М., 1928, стр. 121.

վանյան նարոդնիկական խմբակի անդամների հանդիպավայրը։ Գ. Լոպատինի մոտ գտնված նյութերի հիման վրա Ռ. Չեռնիշևը ձերբակալվում է. նա մահանում է 1885 թ.։

Ռոստով-Նախիջևանյան նարոդնիկական խմբակներում ակտիվ գործունեություն էր ծավալել Հակոբ Ծապովալովը։ Նա պատրաստում էր պայթուցիկ ռումբեր և այլ զենքեր։ Հ. Ծապովալովին էր հանձնարարված գաղտնի տպարանի տնօրինման գործը։ Ծապովալովը կարողացել է ձերբակալությունից փրկել նարոդովոլեց Ս. Իվանովին, կանխել մի շարք քաղաքական գործիչների ձերբակալությունը[1]։ 1884 թ. նոյեմբերի 10-ին Նովոչերկասկում ձերբակալվում է նաև Հակոբ Ծապովալովը և ուղարկվում Մոսկվայի բանտը։ Հ. Ծապովալովին իբրև հեղափոխական գործիչ բնութագրել է Վ. Սուխոմլինը, որին նա ճանաչում էր տակավին Ռոստովից ու Նախիջևանից. ապա մոտ մեկ տարի բանտարկված լինելով Պետրոպավլովյան բանտի հարևան բանտախցիկներում, Սուխոմլինը մոտիկից ճանաչել ու համակրել է Ծապովալովին[2]։ Հակոբ Ծապովալովի վիճակը թեթևացնելու փորձ է արել Գ. Լոպատինը, հայտարարելով, թե չի ճանաչում Ծապովալովին. սակայն ոստիկանությանը հայտնի է դառնում նրա անլեգալ հեղափոխական գործունեությունը։

Նարոդովոլյան ակտիվ գործիչներից էր նաև Մելքոն Կալայանը (Կալալովը)։ Մ. Կալայանը Պետերբուրգի լեռնային ինստիտուտում սովորելու տարիներին ծանոթանում է «Մոլոդայա նարոդնայա վոլյա» կազմակերպության հիմնադիր Պ. Յակուբովիչի հետ և դառնում նրա գաղափարակիցը։ Մ. Կալայանը մասնակցել է Գ. Դոբրուսկինին Պետերբուրգից Ռոստով ուղարկելուն և տվել է համապատասխան հասցեներ։ Իսկ ավելի ուշ Կալայանն ինքն է գալիս Ռոստով և Նախիջևան, իբրև «Մոլոդայա նարոդնայա վոլյա»-ի գործավար։ Հետագայում նա դատապարտվել և աքսորվել է Սիբիր, որտեղ մնացել է 25 տարի։ 1905 թ. այլ աքսորյալների հետ նա վերադարձել է Ռոստով, ուր վախճանվել է 1913 թ.։

1884 թ. աշնանը, երբ Ռոստով-Նախիջևանյան նարոդովոլյան խմբակի գրեթե ողջ կազմը ձերբակալվեց, ձերբակալությունից խույս տալ կարողացավ միայն Մակար Պապովը։ Նա կարևոր դեր է կատարել նարոդնիկական շարժման Ռոստով-Նախիջևանյան կազմակերպության մեջ, իբրև կապավոր։ Մ. Պապովն ստանում էր գաղտնի արգելված գրականություն և տարածում ո՛չ միայն Ռոստովում, Նախիջևանում, այլև հարավ-ռուսաստանյան շատ վայրերում։ Ազատ մնալով, նա փրկում է նարոդովոլյան գաղտնի տպարանի սարքավորումը, որով 1884 թ. սեպտեմբերին տպագրվել էր «Նարոդնայա վոլյա»-ի 10-րդ համարը։ Մ. Պապովին հաջողվում է այդ համարներն առաքել նշված հասցեներով։ Սակայն 1885 թ. ապրիլի 24-ին նա ևս ձերբակալվում է։ Նրան անմիջապես ուղարկում են Պետերբուրգ, որտեղ որպես Գ. Լոպատինի խմբի անդամներից մեկը, դատապարտվում է մահվան. դատավճիռը փոխարինվում է երկարատև սիբիրյան աքսորով։ 1887 թ. տեղի ունեցած «Քասնմեկի» հայտնի դատավարությունն էր այդ։

Նոր-Նախիջևանի Փեշեքերյան եղբայրների նարոդնիկական խմբակները կազմված էին ռուս, հայ, ուկրաինացի, լեհ, հրեա, հույն առաջավոր բանվորներից ու մտավորականներից։ Խմբակները վայելում էին նորնախիջևանցիների համակրանքն ու աջակցությունը։ Այդ են ցույց տալիս արխիվային վավերագրերում եղած այն բազմաթիվ մարդկանց անունները, որոնք մասնակցել կամ աջակցել են նարոդնիկական շարժմանը։ Նրանցից էին Նոր-Նախիջևանի դպրոցի ուսուցիչներ Թումանովը (Թումանյան), Ելիսաֆովը (Ելիսաֆյան), բանվոր Խաչումյանը, որը մի քանի այլ բանվորների հետ օգնել էր Մակար Պապովին՝ տեղափոխելու և թաքցնելու գաղտնի տպարանի սարքավորումները։ Տագանրոգ քաղաքի նարոդնիկական խմբակի անդամ, նորնախիջևանցի Նիկիտա Ոսկանյանը ոստիկանական գործերում մեղադրվում է Տագանրոգում նարոդնիկական խմբակ ստեղծելու համար[3]։ Արխիվային վավերագրերում հանդիպում ենք Լուսարոն Փեշեքերյանի անվանը։ 1885 թ. հուլիսի 15-ի գիշերը Ուստ-Լաբինսկ ավանի գերեզմանատան դարբասին թռուցիկ փակցնելիս նա ձերբակալվում է[4]։

Արխիվային նյութերից պարզվում է, որ նորնախիջևանցի Կալայանների ընտանիքի անդամների մի մասը գործել է այլ վայրերում՝ Ռոստովում, Տագանրոգում, Եյսկում և այլուր։ Օրինակ, Եմելյան Կալայանն իր ընդհատակյա

---

[1] Бах А., Записки народовольца, 1931, стр. 129.

[2] Сухомлин В., Из эпохи упадка партии «Народоволя», «Каторга и ссылка», 1926, №№ 28 — 29, стр. 79.

[3] ЦГАОР. ДП, ф. 102, оп. 78, 1882, 3 д-во, д. 824, лл. 1 — 4.

[4] Обзор важнейших дознаний с 1 января 1885 по 1 января 1886 гг. Терещенко А., *նշվ. աշխ., «Պատմաբանասիրական հանդես», 1975, № 1, էջ 101*։



գործունեության հետքը կորցնելու նպատակով տեղափոխվել է Եյսկ, ապա Վլադիկավկազ[1]։

Ռոստով-Նախիջևանյան նարոդնիկական կազմակերպության գործունեությունը ոստիկանության կողմից բացահայտվելուց հետո Ե. Կալայանը տեղափոխվում է Անդրկովկաս։ Թաքնվելով Թիֆլիսում՝ շարունակում է իր հեղափոխական գործունեությունը, հանդես գալով «Մարկ», «Ալավերդով», «Արմյանին», «Սեմյոն Սեմյոնովիչ Միխայլով» և այլ ծածկանուններով[2]։ Թիֆլիսում նա գործել է հեղափոխական գործունեության համար Մոսկվայի Պետրովյան ակադեմիայից հեռացված և ոստիկանության հսկողության տակ գտնվող իշխան Ա. Արղությանի, Կ. Գորանի և այլոց հետ։ 1885 թ. վերջին հերթական հավաքույթներից մեկի ժամանակ նա ձերբակալվում է։ Ոստիկանությունը երկար ժամանակ չէր կարողանում պարզել նրա ով լինելը և միայն Դոնի-Ռոստովի ոստիկանության միջոցով բացահայտվում է, որ նա հայտնի հեղափոխական Եմելյան Սամվելի Կալայանն է, որին փնտրում էր Ռոստովի ոստիկանությունը[3]։

Նորնախիջևանցիների հեղափոխական նարոդնիկների գործունեությունից վախեցած՝ տեղական կառավարող մարմինները 80-ական թվականների կեսերին բազմիցս դիմում էին ներքին գործերի մինիստրությանը, պահանջելով ավելացնել ոստիկանների հաստիքը Ռոստովում և Նոր-Նախիջևանում։ Պահպանվել է նաև Օդեսայի դատական պալատի դատավորի՝ արդարադատության մինիստրին ուղղած զեկուցագիրը Փեշեքերյան եղբայրների դատավարության մասին, ուր նա որոշակի գրում է, որ նրանց գործունեությունն ունեցել է միայն «հեղափոխական նպատակ»[4]։

Այսպիսով, փաստերը հաստատում են, որ համառուսաստանյան նարոդնիկական շարժման մեջ զգալի ավանդ է ներդրել Նոր-Նախիջևանի հայկական գաղութը։

---

[1] ГАРО (Ростовской области), ф. 829, оп. 1, д. 533, лл 88, 127։

[2] Тифлисское Губернское жандармское управление (1839—1916 гг.), ЦГИА, Груз. ССР, ф. 153, оп. 2, ед. хр. 85, д. 48, стр. 67 — 142.

[3] *Նույն տեղը*։

[4] ГАОО, ф. 5, оп. 1. 1882 г., д. 633, л. 14.

# ԷՋԵՐ ԱԶԳԱՅԻՆ ՀԱՐՑԻ ԼՈՒԾՄԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

Է. Մ. ԱՌԱՔԵԼՅԱՆ

ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ հռչակած «Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների դեկլարացիան» օրենսդրաբար սահմանեց նախկին ռուսական կայսրության սահմաններում ապրող ազգերի ու ազգությունների ազատ զարգացման ու լիակատար իրավահավասարության, ինքնորոշվելու և ազգային պետություններ ստեղծելու իրավունքը, վերացրեց Ռուսաստանի ժողովուրդների աշխատավոր զանգվածների միջև եղած ազգային թշնամանքը և ազգային ճնշման հնարավորությունները:

Հայաստանի կոմկուսը հետևողականորեն վարեց ազգային անվստահության և թշնամանքի վերացման, ազգերի միջև վստահության ու բարեկամական կապերի ստեղծման և ամրապնդման լենինյան կուրսը: Անհրաժեշտ էր, որ ազգային համերաշխության գաղափարները հետևողականորեն կիրառվեին կյանքում: Այդ գաղափարները արտացոլվեցին 1920 թ. նոյեմբերի 29-ի Հայաստանի խորհրդայնացման դեկլարացիայում, որտեղ նշված է, որ ցեղային ու ազգային պառակտումների փոխարեն կստեղծվի ժողովուրդների եղբայրություն[1]:

Ազգային համերաշխություն հաստատելու համար հարկավոր էր ազգային փոքրամասնությունների նկատմամբ ուշադիր վերաբերմունք ցուցաբերել, առավելագույնս բավարարել նրանց կարիքները և ստեղծել այնպիսի պայմաններ, որոնք բացառեին ամեն մի բախում: Եվ պատահական չէ, որ ՀԿ(բ)Կ I համագումարին տված Կենտկոմի քաղաքական հաշվետվության մեջ Սարգիս Սրապիոնյանը (Լուկաշին) նշեց. «...կարևոր հարցը, որը պրակտիկորեն պետք է լուծել, դա հարևան (ժողովուրդների) աշխատավորների փոխհարաբերությունն է»[2]:

Անհրաժեշտ էր Հայաստանում ապրող ազգային փոքրամասնություններին գործնականում համոզել, որ սովետների հաղթանակը հիմնվում է ազգերի ու ժողովուրդների լիակատար իրավահավասարության վրա: ՀՍԽՀ-ում ապրող ազգային փոքրամասնությունների միջև ինտերնացիոնալ կապերի ամրապնդման և վստահության մթնոլորտի ստեղծման գործում անհրաժեշտ էր ազգային փոքրամասնություններին ապահովել հողով: Վեդիի (Արարատ), Բասարգեչարի (Վարդենիս) և այլ վայրերի ադրբեջանցիները, Վորոնցովկայի (Կալինինո), Բասարգեչարի (Վարդենիս), Դիլիջանի ռուսները, ինչպես նաև Արագածի ստորոտներում ապրող խաշնարած քրդերը ապահովվեցին հողով և արոտավայրերով: Հողային հարցի ճիշտ լուծումը հավատով և վստահությամբ էր տոգորում Հայաստանում ապրող ազգային փոքրամասնություններին: Այդ է վկայում 1922 թ. հունիսի 23-ին Ալեքսանդրապոլի 7-րդ գավառամասում տեղի ունեցած անկուսակցական քրդերի համագումարի ընդունած բանաձևը, ուր ասված է. «...համագումարն իր ջերմ շնորհակալությունն է հայտնում խորհրդային իշխանությանը, որը ոչ մի խտրություն չի դնում ազգերի միջև և մեծ տեղ է տալիս փոքր ազգերին: Գոհ ենք խորհրդային իշխանությունից, որ վերացվել է ազգային ճնշումը»[3]:

Ազգային փոքրամասնությունների միջև ինտերնացիոնալ կապերի ամրապնդման գործում կարևոր դեր խաղացին ՀԿ(բ)Կ-ի և հանրապետության կառավարության ձեռնարկած այն միջոցառումները, որոնք բխում էին ՌԿ(բ)Կ X համագումարի ազգային հարցին վերաբերող որոշումներից:

Ելնելով այդ որոշումներից, 1923 թ. նոյեմբերի 21-ին ՀՍԽՀ Կենտգործկոմի նախագահ Ս. Համբարձումյանի ստորագրությամբ հրապարակվեց մի շրջաբերական՝ ուղղված ՀՍԽՀ ժողկոմիսարիատներին և գավառական գործադիր կոմիտեներին, որով պահանջվում էր. «...Այն վայրերում, որտեղ ազգաբնակչության մեծամասնությունը կազմում են այլ ազգություններ, բոլոր գրագրությունները պետք է տարվեն նրանց մայրենի լեզվով: Զանցառուները ենթարկվելու են օրինական պատասխանատվության»[4]: Դրա հիման վրա Հայաստանի այն վայրերում, որտեղ գերակշռում էին ազգային փոքրամասնությունները, վարչական մարմինները համալրվեցին տվյալ ազգության ներկայացուցիչներով: Ստեղծվեցին ազգային լեզուներով դատարաններ, բացվեցին դպրոցներ, գյուղական սովետների գրագրությունները վարվում էին ազգային փոքրամասնությունների լեզուներով:

Ազգային փոքրամասնությունների շրջանում տարվող աշխատանքները խթանելու նպատակով, 1921 թ. հանրապետության լուսժողկոմատի սիստեմում ստեղծվեց ազգային փոքրամասնությունների բյուրո, իսկ 1924 թ. այդ նույն նպատակով ՀԿ(բ)Կ Կենտկոմի ագիտբաժնին կից կազմվեց ազգային փոքրամասնությունների կոլեգիան: Այդ օրգաններն իրենց գոյության առաջին իսկ օրվանից քննարկում էին ազգային փոքրամասնություններին վերաբերող բոլոր հարցերը, ուսումնասիրում նրանց տնտեսական դրությունը, գաղափարաքաղաքական աշխատանք էին ծավալում անկուսակցական զանգվածների շրջանում: Մեծ աշխատանք ծավալվեց անգրագիտության վերացման, բնակչության կուլտուր-կրթական մակարդակի բարձրացման մարզում: Ազգային փոքրամասնությունների ներկայացուցիչներն ընդգրկվում էին կուսակցական դաստիարակության ցանցի և Երևանի բարձրագույն կուսակցական դպրոցները, նրանց համար բացվում էին քաղգրագիտության խմբակներ: 1925—1926 և 1926—1927 ուստարիներին Ծաղկաձորում կազմակերպված կուսակցական ուսուցման ցանցի դպրոցներում սովորել են ազգային փոքրամասնությունների 200 ներկայացուցիչներ[5]: ՀԿ(բ)Կ-ի ուշադրության կենտրոնում էին նաև ազգային փոքրամասնությունների շրջանում տարվող կուսակցական և կոմերիտական աշխատանքները: Այդ նպատակով ՀԿ(բ)Կ Կենտկոմը հրահանգեց կոմերիտմիության Կենտկոմին իր կազմակերպություններում ընդգրկել ազգային փոքրամասնությունների երիտասարդներին, որոնք հետագայում ընդունվեցին կուսակցության շարքերը[6]:

Ինտերնացիոնալ կապերի սերտացումը թելադրում էր առանձին ուշադրություն դարձնել նաև ազգային փոքրամասնությունների կուլտուրական մակարդակի բարձրացմանը: Այդ առնչությամբ ՀԿ(բ)Կ IV համագումարը ծավալուն որոշում ընդունեց, որում ասված է.

ա) պատրաստել ու վերապատրաստել ազգային փոքրամասնության ուսուցիչներին, խրճիթավարներին և ընդհանրապես ժողովրդական լուսավորության շարքային աշխատողներին,

բ) ընդարձակել նրանց խրճիթ-ընթերցարանի ցանցը և խորացնել նրանց աշխատանքը,

գ) ուժեղացնել ազգային փոքրամասնություններով բնակեցված գյուղերին մայրենի լեզվով գյուղատնտեսական, քաղաքական, մանկական և այլ գրականության մատակարարումը,

դ) բանալ գյուղական երիտասարդության դպրոցներ,

ե) մշակել նոր քրդական այբուբեն, որի բացակայությունը խոչընդոտում է քուրդ ազգաբնակչության կուլտուրական մակարդակի զարգացմանը[7]:

Հայաստանի ազգային փոքրամասնությունների տնտեսական և կուլտուրական զարգացման մակարդակները տարբեր էին: Ուստի նրանց շրջանում տարվող աշխատանքը պետք է բխեր նրանց տնտեսական ու կուլտուրական զարգացման աստիճանից, կենցաղի և սովորությունների առանձնահատկությունների ճիշտ իմացությունից: Հայաստանում ապրող ազգային փոքրամասնություններից ամենաբազմամարդն ադրբեջանցիներն էին:

Դեռևս 1920 թ. Հայաստանի հեղկոմի կողմից մուսուլման բնակչությանն ուղղված կոչի մեջ նշվում էր. «Հայ և մահմեդական տառապողներն իրար եղբայրներ են և ցավակից»[8]: 1920 թ. դեկտեմբերի 9-ի դեկրետով հայերենի հետ ադրբեջաներենը նույնպես ճանաչվում էր իրավահավասար լեզու՝ ադրբեջանցիներով բնակեցված վայրերում[9]: Ադրբեջանցի աշխատավոր զանգվածները համոզվեցին, որ սովետներն իրենց գոյության օրից բերում են ազգային համերաշխություն և ժողովուրդների բարեկամություն: 1921 թ. հուլիսի 4-ին Էջմիածնի գավառի 6-րդ գավառամասի հայ և ադրբեջանցի անկուսակցական աշխատավոր գյուղացիության I համագումարում ընդունված բանաձևում նշված է. «Այսօր խորհրդային իշխանության հովանու ներքո մենք (հայ և ադրբեջանցի), լծվելով խաղաղ շինարարական աշխատանքի, մեր հիացմունքն ենք հայտնում կոմունիստական կուսակցությանը, քաջ գիտե-

---

1 *ՄԼԻ Հայկական մասնաճյուղի արխիվ, ֆ. 1, ց. 4, գ. 1, թ. 26:*

2 *Նույն տեղը, ֆ. 1, ց. 1, գ. 232, թ. 49:*

3 *Նույն տեղը, ֆ. 1, ց. 1, գ. 466:*

4 *ՀՍՍՀ Հ. Հ. և ՍՇ ՊԿ պատմական արխիվ, ֆ. 122, ց. 1, գ. 442, թ. 162:*

5 *ՄԼԻ Հայկական մասնաճյուղի արխիվ, ֆ. 1, ց. 9, գ. 6, թթ. 22—25:*

6 *Նույն տեղը, ֆ. 1, ց. 3, գ. 6, թ. 13:*

7 *Նույն տեղը, ֆ. 1, ց. 5, գ. 1, թ. 347:*

8 *Նույն տեղը, ֆ. 1, ց. 4, գ. 1, թ. 38:*

9 *«Ժամանակագրական ժողովածու», Երևան, 1963, էջ 13:*

նալով և խորապես համոզվելով, որ նա է միայն մեր շահերի պաշտպանը: Մենք պատրաստ ենք ամեն զոհողություն տանել և հարկ եղած աջակցությունը ցույց տալ կոմունիստական կուսակցությանը...»[10]:

Ժողովուրդների ինտերնացիոնալ դաստիարակության գործում կարևոր նշանակություն ուներ ադրբեջանցի աշխատավորության շրջանում ՀԿ(բ)Կ-ի կատարած քաղաքական և դաստիարակչական աշխատանքը: Զանգեզուրի, Դարալագյազի, Էջմիածնի և այլ գավառներում ապրող ադրբեջանցիների համար հրավիրվում էին անկուսակցական գյուղացիական համագումարներ, կոնֆերանսներ, խորհրդակցություններ, որտեղ քննարկված հարցերը ո՛չ միայն վերաբերում էին գյուղացիության կարիքներին ու պահանջներին, այլև ազգերի ինտերնացիոնալ դաստիարակությանը: Միայն 1922 թ. հրավիրվել են նման 12 կոնֆերանսներ[11]:

Ադրբեջանական բնակչությամբ գյուղերում կազմակերպվում էին սովետական կարգերին, կուսակցական-քաղաքական աշխատանքներին համակրող բջիջներ[12]: Առանձնակի նշանակություն ուներ ադրբեջանցի կոմունիստների և կոմերիտականների քաղաքական ուսուցումը:

1924 թ. Զողում բացվում է ադրբեջաներեն լեզվով քաղաքական դպրոց, ուր սովորում էին 25—30 կոմունիստներ և կոմերիտականներ[13]: Այդ ժամանակաշրջանում շոշափելի աշխատանք կատարեցին կուսբջիջները, ինչպես և գյուղսովետները: Միայն Երևանի գավառում հաշվվում էին 11 գյուղսովետներ: Ժողովուրդների բարեկամության և ինտերնացիոնալ կապերի ամրապնդման գործում մեծ դեր խաղացին նաև 1923 թ. Երևանում բացված ադրբեջանական ակումբը՝ իր քաղխմբակներով, և ՀԿ(բ)Կ Կենտկոմին կից ստեղծված ադրբեջանական սեկցիան:

Հայաստանի լուսժողկոմատի սիստեմում 1923 թ. հունվարի սկզբին ստեղծվեց ազգային փոքրամասնությունների խորհուրդ, որն ըստանձնեց նրանց դպրոցական գործի ղեկավարումը: Սովետական իշխանության առաջին տարիներին բացվեցին բազմաթիվ ադրբեջանական դպրոցներ:

Ադրբեջանական դպրոցի զարգացման գործում կարևոր նշանակություն ունեցավ 1921 թ. Հայաստանի և Ադրբեջանի լուսժողկոմատների միջև կնքված փոխադարձ համաձայնությունը՝ դասագրքերի, ծրագրերի, մեթոդական ձեռնարկների փոխանակման վերաբերյալ: Սկզբնական շրջանում զգացվում էր ուսուցիչների զգալի պակաս, որը լրացվեց ադրբեջաներեն իմացող հայ ուսուցիչներով: Ուսուցիչների որակավորման բարձրացման, կոմունիստական համոզմունքների ամրապնդման, ինտերնացիոնալ դաստիարակության, մանկավարժական փորձի և գիտելիքների ձեռքբերման գործում շոշափելի դեր էին կատարում կազմակերպվող առարկայական մանկավարժական դասընթացները և կուրսերը:

Այդ բնագավառում ևս հաջողությունները ակնառու էին: Հանրապետության ադրբեջանաբնակ վայրերում բացվում էին անգրագիտության վերացման խմբեր, խրճիթ-ընթերցարաններ: Անգրագիտության վերացման գործում կարևոր դեր էին խաղում լիկկայանները: 1923 թ. մայիսին ոչ լրիվ տվյալներով Հայաստանում գործում էր ադրբեջաներեն լեզվով 23 լիկկայան[14]:

Հայաստանում ապրող մյուս ազգային փոքրամասնությունը քրդերն են: Նրանց նստակյաց դարձնելու և հողով ապահովելու աշխատանքները սկսվեցին 20-ական թվականներից և շարունակվեցին հաջորդ տարիներին: Նրանք հիմնականում բնակեցվեցին Թալինի և Ապարանի շրջաններում: Միայն դրանից հետո հնարավոր դարձավ կուլտուր-կրթական և գաղափարական-քաղաքական աշխատանքների իրականացումը:

Քրդերի կյանքում առանձնահատուկ նշանակություն ունեցավ 1925 թ. դեկտեմբերին Շամիրամ գյուղում տեղի ունեցած Էջմիածնի գավառի անկուսակցական քրդերի համագումարը, որտեղ նշվեց աշխատավոր զանգվածների հասարակական-քաղաքական և կուլտուրական բնականոն առաջընթացը խաթարող երեք վնասակար երևույթի՝ թայֆայականության, ղալիմի (գլխագին հարսնացուի համար) և բազմակնության դեմ տարվող պայքարն ուժեղացնելու անհրաժեշտությունը:

Առաջարկվում էր այդ երևույթների դեմ պայքարելու համար ուժեղացնել քաղաքական ու կուլտուր-կրթական աշխատանքները, բարձրացնել գյուղական սովետների ակտիվությունը և իրականացնել դատական օրգանների աչալուրջ հսկողությունը: Համագումարը Հայաստանի կենտրոնական գործադիր կոմիտեի առջև հարց հարուցեց օրենսդրական ճանապարհով վերացնել ղալիմը՝ հինավուրց ժամանակներից մնացած սովորույթը, որի հետևանք էին հաճախակի սպանությունները, կռիվները և անախորժությունները:

Միաժամանակ որոշվեց քրդական գյուղերում

10 *ՄԼԻ Հայկական մասնաճյուղի արխիվ. ֆ. 4033, ց. 1, գ. 1122, թթ. 1—2:*

11 *Նույն տեղը, ֆ. 1, ց. 8, գ. 9, թ. 15:*

12 *Նույն տեղը, ֆ. 1, ց. 1, գ. 241, թ. 11:*

13 *Նույն տեղը, ֆ. 1, ց. 3, գ. 312, թ. 4:*

14 *«ՀՍԽՀ ժողկոմիսարիատների 1922—1923 թթ. հաշվետվությունները», Երևան, 1925, էջ 323:*



բացել առաջին աստիճանի դպրոցներ, Շամիրամ և Ղուռի—Արազ գյուղերում խրճիթ-ընթերցարաններ, գյուղական սովետները կազմել բացառապես չքավոր ու միջակ տարրերից, պատրաստել գյուղսովետների նախագահներ և քարտուղարներ[15]:

Համագումարը կարևոր ուղենիշ եղավ քրդերի կյանքում: Նրանց շրջանում տարվում էր գաղափարական-քաղաքական նպատակասլաց աշխատանք: Առանձնապես մեծ տեղ էր հատկացվում ազգերի եղբայրության և համերաշխության գաղափարների պրոպագանդմանը: Անկուսակցական քուրդ զանգվածներին սովետական կարգերի շուրջը համախմբելու գործում կարևոր դեր էին խաղում համակրող բջիջները:

Քաղաքական աշխատանքը քրդական գյուղերում դժվարանում էր ո՛չ միայն քուրդ զանգվածների անբավարար գրագիտության, այլև համապատասխան կադրերի բացակայության պատճառով: Չնայած դժվարություններին, այնուամենայնիվ, ՀԿ(բ)Կ-ին հաջողվում է քրդերին ներգրավել հասարակական-քաղաքական ակտիվ աշխատանքում, ստեղծել կոմերիտական կազմակերպություններ, ակտիվ աշխատողներին ներգրավել կուսակցության շարքերը: Ազգային փոքրամասնությունների և մանավանդ քրդերի մեջ քիչ էր կոմունիստների թիվը, և այդ հանգամանքը բացասաբար էր անդրադառնում աշխատավորության շրջանում տարվող աշխատանքների վրա: Ուստի ՀԿ(բ)Կ III համագումարը պահանջեց, որ կուսկոմիտեների ու հրահանգիչների հսկողության ներքո ազգային փոքրամասնությունների կոմերիտական բջիջներին տալ կուսակցական բջիջների լիազորություններ:

Որպեսզի հնարավոր լիներ իրականացնել Հայաստանի կառավարության որոշումը քրդաբնակ շրջաններում դատական գործերը մայրենի լեզվով վարելու մասին, անհրաժեշտ էր բացել քրդերեն լեզվով դպրոցներ և վերացնել անգրագիտությունը: Իսկ դրան հասնել հնարավոր էր միայն քրդական այբուբեն ստեղծելու միջոցով: Հայաստանի կոմկուսի և կառավարության անմիջական օգնությամբ Հակոբ Ղազարյանը հայկական տառերի հիման վրա 1921 թ. ստեղծեց քրդական այբուբենը և առաջին այբբենարանը (Շամս—Արև), որի ձևավորումն ու նկարազարդումները կատարել էր նկարիչ Վրթանես Աղեկյանը: 1929 թ. հայատառ այբուբենը փոխարինվեց լատինատառ այբուբենով: Բացվեցին քաղլուսվարչությանը կից քրդական լեզվով դասընթացներ: Դրանից հետո միայն հնարավոր եղավ բացել դպրոցներ, որոնց թիվը 1924—1925 ուստարում հասավ 13-ի, իսկ աշակերտության թիվը՝ 305-ի[16]: Առանձին դպրոցներում ընդգրկված էին մեծ թվով երեխաներ: Օրինակ, Արագածի շրջանի Միրաք գյուղի դպրոցում սովորում էին 75—80 աշակերտ: Քրդաբնակ շրջաններում անգրագիտությունը վերացնելու նպատակով բացվում էին լիկկայաններ, խրճիթ-ընթերցարաններ, անգրագիտության վերացման դպրոցներ, կիսագրագետների դպրոցներ:

Մինչև սովետական կարգերի հաղթանակը Հայաստանում ապրող ռուս-մոլականների մեջ նույնպես կային չքավորներ: Հանրապետության կառավարությունը հարուստներից վերցրեց հողերի մի մասը և բաժանեց չքավոր գյուղացիներին: 1921 թ. հոկտեմբերի 24-ին ՀԿ(բ)Կ Կենտկոմի նախագահությունը քննարկեց ռուս-մոլականների հետ տարվող աշխատանքների վիճակը և որոշեց՝ ռուս-մոլական աշխատավորներին մասնակից դարձնել հանրապետության տնտեսական ու կուլտուրական շինարարությանը:

Երիտասարդության քաղաքական և ինտերնացիոնալ դաստիարակության գործում վճռական դեր էին խաղում Ստեփանավանի, Վորոնցովկայի, Ղարաքիլիսայի, Դիլիջանի գավառներում 1923 թ. ստեղծված կուսակցական և կոմերիտական բջիջները: Բջիջների անդամները քաղաքական աշխատանք էին կատարում անկուսակցականների շրջանում, պայքարում ազգերի համերաշխության ամրապնդման, անգրագիտության վերացման համար: Անհրաժեշտ ուշադրություն էր հատկացվում կուսակցական ու կոմերիտական շարքերի աճման, գաղափարական, կուլտուր-կրթական մակարդակի բարձրացման, կուլտուր-լուսավորական միավորների բացման, քաղլուսցանցում սովորողների թվի ավելացման հարցերին:

Ռուս-մոլականների ներկայացուցիչներն ընդգրկվում էին քաղաքական գիտելիքների ուսուցման դպրոցները, կենտրոնական կուսակցական դպրոցը, ուղարկվում ՌՍՖՍՀ-ի բուհերը: Քաղաքական դպրոցներն ավարտողները, վերադառնալով գավառները, զգալի աշխատանք էին կատարում աշխատավորներին լենինյան ազգային քաղաքականության և ինտերնացիոնալիզմի սկզբունքներով դաստիարակելու, քաղաքական անգրագիտությունը վերացնելու գործում:

Ռուսաբնակ բոլոր գյուղերում գործում էին գյուղսովետներ, ուր գրագրությունները վարվում էին ռուսերեն: Խրճիթ-ընթերցարանները, ինքնազարգացման քաղաքական խմբակները, ագիտխմբակները, ակումբները, լիկկայանները, կիսագրագետների դպրոցները նպաստում էին

15 *ՀՍՍՀ Հ. Հ. և ՍՇ ՊԿ պատմական արխիվ, ֆ. 112, ց. 2, գ. 877, թ. 99:*

16 *Նույն տեղը, ֆ. 122, ց. 1, գ. 553, թ. 16:*

ռուս-մոլականների քաղաքական զարգացմանը, անգրագիտության վերացմանը և կուլտուր-լուսավորական գործի ծավալմանը։ Ոչ լրիվ տվյալներով, 1923 թ մայիսին Հայաստանում կար ռուսերեն լեզվով վեց լիկկայան. Լոռու գավառում՝ 4, իսկ Երևանի և Ղարաքիլիսայի գավառներում՝ մեկական[17]։

Մեծ տեղաշարժեր էր կատարվում դպրոցական գործում։ Ռուս-մոլականներով բնակեցված բոլոր գյուղերում բացվել են դպրոցներ։ 1921—1922 ուսումնական տարում կար 15 ռուսական դպրոց, իսկ 1922—1923 թթ. դրանց թիվը հասնում էր 24-ի, իսկ աշակերտության թիվը՝ 1799-ի։ 1924—1925 ուստարում արդեն ռուս-մոլական աշակերտների թիվը հասել էր 1840-ի[18]։

Հանրապետությունում բնակվող ազգային փոքրամասնություններից էին նաև հույներն ու ասորիները։ Հույներն ապրում էին Լոռու գավառում, իսկ ասորիները՝ Երևանի։ Ասորիների կուլտուր-կրթական մակարդակը բավականին ցածր էր, իսկ բարելավման խնդիրը՝ առանձնապես դժվարին։ Չկային ո՛չ միայն ասորական լեզվով գրքեր, այլև դժվար էր տպագրելը։ Սակայն այդ դժվարությունները հաղթահարվեցին Հայաստանի և Վրաստանի լուսավորության ժողկոմատների միասնական ջանքերով։ Արդյունքը եղավ այն, որ ասորական դպրոցների մինչև երրորդ դասարանները ստացան մայրենի լեզվով դասագրքեր։ Ասորական և հունական դպրոցների ուսուցիչների որակավորումը բարձրացնելու նպատակով, 1922 թ. ամռանը և 1923—1924 ուստարում բացվեցին վերապատրաստման դասընթացներ։ 1921—1922 թթ. ՀՍԽՀ-ում հաշվվում էր հինգ ասորական և նույնքան հունական դպրոցներ[19], ուր 1923 թ. սովորում էին 193 ասորի և 228 հույն աշակերտներ[20]։ 1924—1925 ուստարում հունական դպրոցներում սովորող աշակերտների թիվը հասել է 359-ի[21]։

Ասորի և հույն տարեց բնակչության անգրագիտությունը և կիսագրագիտությունը վերացնելու նպատակով բացվեցին լիկկայաններ, խրճիթ-ընթերցարաններ, կիսագրագետների դպրոցներ։

Այսպիսով, ժողովրդական տնտեսության վերականգնման տարիներին Հայաստանում ապրող ազգային փոքրամասնությունները, ՀԿ(բ)Կ-ի և Հայաստանի կառավարության վարած քաղաքականության շնորհիվ, գաղափարական-քաղաքական և կուլտուր-կրթական ակնառու հասումներ ունեցան։ Ազգային փոքրամասնություններին հնարավորություն ընձեռվեց դուրս գալու քաղաքակրթության լայն ասպարեզ։

Ինչպես ՍՄԿԿ XXVI համագումարի ամբիոնից նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը, «Կուսակցության սրբազան պարտքն է՝ աշխատավորներին դաստիարակել սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, միասնական սովետական մեծ հայրենիքին պատկանելու հպարտ զգացումի ոգով»։

Սովետական իշխանության տարիներին Հայաստանի կոմունիստական կուսակցության վարած լենինյան հետևողական քաղաքականության շնորհիվ, մեր հանրապետությունում բնակվող ազգային փոքրամասնությունները սոցիալ-քաղաքական և կուլտուրական հսկայական հեղաշրջում ապրեցին, որը մեր երկրում լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի վառ վկայություններից է։

17 *Նույն տեղը, բ. 323։*

18 *Նույն տեղը, թ. 19։*

19 *«ՀՍԽՀ ժողկոմիսարիատների 1920—1922 թթ. հաշվետվությունները», Երևան, 1923, էջ 117։*

20 *Նույն տեղը, էջ 345—346։*

21 *ՀՍՍՀ Հ. Հ. և ՍԾ ՊԿ պատմական արխիվ, ֆ. 122, գ. 553, ց. 1, թ. 15։*

# ՈՒՍԱՆՈՂ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ

**Վ. Ա. ԽԱԺԱԿՅԱՆ**

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ դաստիարակության ողջ համակարգում կարևոր տեղ է գրավում ինտերնացիոնալ դաստիարակությունը։ Այն անխզելիորեն կապված է նոր մարդու՝ կոմունիստական հասարակարգի ակտիվ կառուցողի կերպավորման հետ, մարդ, որը ինչպես ՍՄԿԿ XXVI համագումարում նշեց Լ. Ի. Բրեժնևը, բարեխիղճ աշխատավոր է, քաղաքական բարձր կուլտուրայի տեր անձնավորություն, հայրենասեր ու ինտերնացիոնալիստ։ Նրան դաստիարակել են կուսակցությունը, երկրի հերոսական պատմությունը, մեր ողջ հասարակարգը։ Նա ապրում է նոր աշխարհ ստեղծողի լիարյուն կյանքով։

Ինտերնացիոնալ դաստիարակությունը տևական պրոցես է՝ սերտորեն կապված գաղափարական-դաստիարակչական աշխատանքի մյուս ոլորտների՝ գաղափարախոսական, հայրենասիրական, բարոյական, աշխատանքային, գեղագիտական, իրավական, գիտաաթեիստական դաստիարակության հետ։

«Եթե մենք ուզում ենք սոցիալիզմին հավատարիմ լինել,— գրել է Վ. Ի. Լենինը,— մենք արդեն այժմ պետք է իրագործենք մասսաների ինտերնացիոնալ դաստիարակությունը» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 3, էջ 64)։

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը մշտապես մեծ կարևորություն է տվել և տալիս է աշխատավորների, մասնավորապես երիտասարդների կոմունիստական, ինտերնացիոնալ դաստիարակությանը։

Ինչպես նշեց ՍՄԿԿ XXVI համագումարը, կուսակցության սրբազան պարտքն է՝ աշխատավորներին, ամենից առաջ երիտասարդներին դաստիարակել սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, միասնական սովետական մեծ հայրենիքին պատկանելու հպարտ զգացումի ոգով։

ՍՄԿԿ ծրագրում, կուսակցության XXIII, XXIV, XXV և XXVI համագումարների, Կենտկոմի պլենումների որոշումներում և հատկապես մեր գաղափարախոսական ասպարեզի աշխատողների համար երկարատև գործողության ծրագիր հանդիսացող «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի 1979 թվականի ապրիլի 26-ի որոշման մեջ կանխորոշված են զարգացած սոցիալիզմի պայմաններում կոմունիստական, ինտերնացիոնալ դաստիարակության հիմնական խնդիրները։ Գիտական աշխարհայացքի, կուսակցության գործին, կոմունիստական իդեալներին նվիրվածության, սոցիալիստական հայրենիքի նկատմամբ սիրո, պրոլետարական ինտերնացիոնալիզմի ձևավորումը ՍՄԿԿ Կենտկոմի այս որոշման մեջ բնութագրվում է որպես ամբողջ գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի միջուկը։

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի՝ «Բարձրագույն դպրոցի հետագա զարգացման և մասնագետների պատրաստման որակի բարձրացման մասին» որոշմամբ (1979 թ.) կարևորագույն խնդիրներ են առաջադրվում բարձրագույն դպրոցի մասնագետների պրոֆեսիոնալ պատրաստության և գաղափարաքաղաքական դաստիարակության համակողմանի բարելավման նպատակով։

Հարկ է նշել, որ մեր հանրապետության բուհերում այժմ նկատելի քայլեր են արվում կոմունիստական, ինտերնացիոնալ դաստիարակության ուղիների ու մեթոդների առավել կատարելագործման ու զարգացման, ուսումնադաստիարակչական, գաղափարաքաղաքական աշխատանքների ոճի բարելավման ասպարեզում։ Բուհերի կուսակցական, հասարակական կազմակերպությունները, հասարակագիտական ամբիոնները, գիտական խորհուրդները մշակում են ուսանողների հետ տարվող գաղափարախոսական-դաստիարակչական աշխատանքների օրինակելի պլաններ, ջանում ուսումնադաստիարակչական գործի բոլոր տեղամաս-

րում բարձրացնել սովորողների հոգևոր կյանքի, կենսագործունեության բոլոր ոլորտների դաստիարակչական ներգործության արդյունավետությունը:

Ինտերնացիոնալ դաստիարակությունը հետևողական, սիստեմատիկ ու համակողմանի ներգործություն է՝ ուսանողների գիտակցության, զգացմունքների ու կամքի վրա, հանուն այն բանի, որ սոցիալիստական ինտերնացիոնալիզմի գաղափարները վերածվեն կայուն համոզմունքների և վարքագծի նորմերի, խթանեն նրանց պրոֆեսիոնալ և սոցիալ-քաղաքական գործունեությունը:

Ուսանող երիտասարդության ինտերնացիոնալ համոզմունքների կերպավորման խնդրում որոշակի դեր են խաղում հասարակական ինֆորմացիայի բոլոր միջոցները:

Բարձրագույն ուսումնական հաստատություններում ուսանողների ինտերնացիոնալ դաստիարակության մասսայական միջոցառումներից բացի անչափ կարևոր է և անհատական մոտեցումը: Այդ անհրաժեշտ է հատկապես կոմունիստական հասարակական իդեալների կերպավորման նպատակով ծավալվող աշխատանքում: Ինտերնացիոնալ դաստիարակությունը սերտորեն կապված է գիտական աշխարհայացքի կերպավորման հետ:

Մեր հանրապետության բարձրագույն ուսումնական հաստատությունները բավականաչափ փորձ են կուտակել ուսանող երիտասարդության գիտական աշխարհայացքի կերպավորման բնագավառում: Եվ այստեղ, անշուշտ, կարևոր նշանակություն ունեն դասախոսությունները, ուսանողների ակտիվ մասնակցությունը հասարակական գիտություններին նվիրված սեմինար պարապմունքներին, ուսանողական գիտահետազոտական աշխատանքներին (ՈՒԳՀԱ), ուսանողական տեսական կոնֆերանսներին, որոնք նպաստում են նրանց ինքնուրույն վերլուծական մտածողության կազմավորմանն ու զարգացմանը:

Ինֆորմացիայի բուռն հոսքի ներկա ժամանակաշրջանում ուսանողը կամա թե ակամա մտորում է քաղաքական շատ հարցերի վերաբերյալ: Նա կարդում է, փնտրում սպառիչ ու համոզիչ պատասխաններ: Ճիշտ կողմնորոշվելու, դեպքերն ու երևույթները ճիշտ գնահատելու համար, բնականաբար, ուսանողը պետք է լինի գաղափարապես համոզված: Դրա նախապայմանը, անշուշտ, մարքս-լենինյան ուսմունքով զինվելն է:

Մասնագիտությունը ստեղծագործաբար յուրացնել, «Մեր կոմունիստական շինարարության ակտիվ մասնակից, մասսաների մեջ կուսակցության քաղաքականության կիրառող կարելի է դառնալ մարքս-լենինյան տեսությանը տիրապետելով միայն»,— նշել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը (Լենինյան կուրսով, հ. 5, էջ 580):

Կոմունիստական, մասնավորապես, ինտերնացիոնալ դաստիարակության գործում բացառիկ նշանակություն ունի հասարակագիտական առարկաների՝ պատմական մատերիալիզմի, քաղաքատնտեսության, գիտական կոմունիզմի տեսության և հատկապես ՍՄԿԿ պատմության դասավանդումը, որի առաջնահերթ խնդիրն է՝ ուսանողներին համակել մարքս-լենինյան աշխարհայացքով: Ինչպես հայտնի է, ՍՄԿԿ պատմությունն ավանդվում է ցածր կուրսերում. դրանով իսկ սկսվում է երիտասարդի գիտական աշխարհայացքի կերպավորումը, որին էապես նպաստում է հասարակագիտական, ինչպես և բնագիտական տեսությունների դասավանդումը: Ուսանողի աշխարհայացքի և նրա ինտերնացիոնալիստական հայացքների կերպավորման ու բյուրեղացման համար անսպառ աղբյուր են բուհերում ավանդվող հասարակագիտական առարկաները:

ՍՄԿԿ պատմության դասախոսների ինտերնացիոնալ աշխատանքի էական ուղղությունն ազգերի ու ժողովուրդների սոցիալիստական դաշնադրումն է, սովետական հանրության գոյավորումն ու զարգացումը, ՍՍՀՄ ազգերի կուլտուրաների անարգել ծաղկումը, ողջ ժողովրդին պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարներով տոգորելը:

Խրախուսելի է Երևանի պետական համալսարանի ՍՄԿԿ պատմության ամբիոնի գործունեությունը: Ամբիոնը մշտապես կապ է պահպանում կուսակցական կոմիտեի, ֆակուլտետների կուսակցական կազմակերպությունների հետ, տեղեկանում ուսանողների հետաքրքրություններին, տրամադրություններին: Այդ հնարավորություն է ընձեռում դասախոսներին՝ պարապմունքների ընթացքում լուսաբանելու ուսանողներին հետաքրքրող միջազգային կյանքի հարցերը:

Ինտերնացիոնալ դաստիարակությունն օրգանապես կապված է հայրենասիրական դաստիարակության հետ: Հայրենասիրությունը, որ հատուկ է ամեն մի ազնիվ ու գիտակից մարդու, սոցիալ-պատմական կատեգորիա է: Այն խոր զգացմունք է, սեր հայրենի երկրի ու ժողովրդի, նրա լեզվի ու մշակույթի, ազգային առաջավոր ավանդույթների նկատմամբ: Դարեր շարունակ հայրենասիրությունը մղել է մարդկանց սխրանքների, պայքարի ոգեկոչել հանուն հայրենիքի ազատության ու անկախության:

Բոլոր ժամանակներում իսկական հայրենասերները եղել են առաջավոր մարդիկ: Աշխատավոր ժողովրդի և, հատկապես, պրոլետարիատի հայրենասիրությունը հագեցած է նոր բովանդակությամբ, դրա հիմնական էությունը համաժողովրդական պայքարն է հանուն շահագործողական կարգերի կործանման, բոլոր աշխատավորների ազատ ու բարեկեցիկ կյանքի ապահովման: Նման հայրենասիրությամբ էին համակված Ռուսաստանի կոմունիստները, բոլոր ժողովուրդների ազատատենչ գործիչները:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը՝ բանվոր դասակարգի, ողջ աշխատավոր ժողովրդի մեծագույն հայրենասիրական այդ սխրանքը, սկիզբ դրեց նոր տիպի՝ սոցիալիստական հայրենասիրության. մի զգացմունք, որը վերացական կամ հայեցողական չէ, այլ ակտիվ, ներգործուն, այն դրսևորվում է հանուն սոցիալիստական հայրենիքի, հանուն նրա բոլոր քաղաքացիների բարեկեցության միլիոնների մղած պայքարում ու աշխատանքում:

Սոցիալիստական հայրենասիրությունն իր առաջին լուրջ քննությունը բռնեց օտարերկրյա ինտերվենտների և ներքին հակահեղափոխության դեմ մղվող քաղաքացիական պատերազմի տարիներին: Հաղթահարելով աներևակայելի դժվարություններ, սովետական մարդիկ ցուցաբերեցին «իսկական հայրենասիրություն» (տե՛ս В. И. Ленин, ПСС, т. 42, стр. 124): Այդ զգացումով նրանք Հայրենական մեծ պատերազմում լիակատար պարտության մատնեցին գերմանաֆաշիստական զավթիչներին, ցուցաբերելով մասսայական հերոսության օրինակներ, հարստացնելով Մեծ հայրենականի տարեգրությունը:

Սոցիալիստական հայրենասիրությունն այսօր մեր երկրում դարձել է համընդհանուր, այն համակել է գիտակից ու ազնիվ բոլոր մարդկանց, որոնք հավատարիմ են մարքս-լենինյան ուսմունքին, բոլոր երկրների աշխատավորների ինտերնացիոնալ համերաշխության գործին:

Սոցիալիստական հայրենասիրությունն անհամատեղելի է ազգային սահմանափակության, նացիոնալիզմի հետ: Մարքսիզմ-լենինիզմը դատապարտում է և՛ իր ժողովրդի շահերի անտեսումը, և՛ նրա համար արտոնյալ, մյուս ժողովուրդների համեմատությամբ առանձնակի վիճակ ստեղծելու ձգտումը:

Ինչպես նշեց կուսակցության XXVI համագումարում ընկեր Լ. Ի. Բրեժնևը, ՍՄԿԿ-ն պայքարել է և միշտ էլ վճռականորեն կպայքարի սոցիալիզմի բնույթին խորթ այնպիսի երևույթների դեմ, ինչպիսիք են շովինիզմը կամ նացիոնալիզմը, ամեն տեսակ նացիոնալիստական խեղաթյուրումների դեմ, լինի դա... հակասեմիտիզմ թե սիոնիզմ:

Այն մարդը, որը չունի իր երկրի ճակատագրի հանդեպ պատասխանատվության զգացում, չի սիրում իր ժողովրդին, չի կարող լինել իսկական ինտերնացիոնալիստ: Ինտերնացիոնալիզմը, առանց իր հայրենիքի նկատմամբ ունեցած սիրո, «անխուսափելիորեն այլասերվում, դառնում է կոսմոպոլիտիզմ, դառնում է ազգային դավաճանության քողարկում» («Основы политических знаний», М., 1962, стр. 349):

Կոմունիստական կուսակցությունը միշտ էլ վճռականորեն պայքարել է նրանց դեմ, ովքեր հայրենասիրությունը հակադրել են ինտերնացիոնալիզմին. հայրենասիրությունն ու ինտերնացիոնալիզմը լրացնում, հարստացնում են միմյանց: Ուսանողն ըմբռնում է, որ սոցիալիստական հայրենասիրությունը պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրսևորումն է՝ ազգային պետական մասշտաբով: Հասարակագիտական առարկաների, հատկապես գիտական կոմունիզմի դասավանդման ժամանակ, պետք է ինչպես հարկն է մեկնաբանել «սովետական մարդու համազգային հպարտության» սահմանումը, որը շեշտվել է Լ. Ի. Բրեժնևի՝ ՍՍՀՄ հիսնամյակի մասին զեկուցման մեջ:

Ինտերնացիոնալ դաստիարակության գլխավոր նպատակն է՝ ուսանողին համակել սովետական բազմազգ միասնական ընտանիքի զգացումով և կոմունիստական գաղափարներով: Կարևորագույն մի խնդիր, որի կենսագործմանը պետք է ծառայեն հասարակագիտական ամբիոնների դասախոսների ջանքերը:

«Ինտերնացիոնալիզմի և սովետական հայրենասիրության լենինյան սկզբունքներին ու իդեալներին անսասան հավատարմությունը սոցիալիստական հասարակության հոգևոր առողջության, կոմունիստական շինարարության ասպարեզում մեր նոր հաջողությունների ու հաղթանակների անսպառ աղբյուրն է»,— ասաց ընկեր Կ. Ս. Դեմիրճյանը Հայաստանի կոմունիստական կուսակցության XXVII համագումարում:

Ուսանողների ինտերնացիոնալ դաստիարակությունը նպատակալաց կազմակերպելու համար, անշուշտ, կարևոր նշանակություն ունի աշխատանքի նոր, առավել կենսունակ, առավել մասսայական ձևերի ու մեթոդների կենսագործումը: Ինտերնացիոնալ դաստիարակությանը, անկասկած, նպաստում են փոխադարձ այցելությունները, ուսանողական գիտական կոնֆերանսները, փառատոները, ինտերնացիոնալ բարեկամության ակումբները, ուսանողական շինարարական ջոկատները:

Կոմունիստական դաստիարակության, մասնավորապես ինտերնացիոնալ դաստիարակության ասպարեզում զգալի աշխատանք է կատարում Երևանի պետական համալսարանը,

որտեղ այսօր ուսանում են Միության, ինչպես նաև աշխարհի տարբեր ծայրերից եկած շատ երիտասարդներ. հայերի հետ կողք-կողքի սովորում են ռուսներ, չեխեր, լեհեր, գերմանացիներ, վիետնամցիներ, մոնղոլներ, քրդեր, ադրբեջանցիներ և այլ ազգերի ներկայացուցիչներ:

Ավելի ու ավելի են ընդլայնվում ինտերնացիոնալ բարեկամական կապերը մեր հանրապետության և Միության մյուս բարձրագույն ուսումնական հաստատությունների միջև: Հատկապես հաճախ են կազմակերպվում գիտական համատեղ նստաշրջաններ, կոնֆերանսներ: Այսպես, 1980 թ. մարտին Երևանի պետական համալսարանում տեղի ունեցավ անդրկովկասյան համալսարանների միացյալ ուսանողական գիտական կոնֆերանս՝ նվիրված Վ. Ի. Լենինի ծննդյան 110-ամյակին: Այն ընթանում էր «Երիտասարդության աթեիստական դաստիարակության հրատապ պրոբլեմները ՍՄԿԿ Կենտկոմի «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքների հետագա բարելավման մասին» որոշման լույսի ներքո» ծրագրով: Երիտասարդության ինտերնացիոնալ, հայրենասիրական և աթեիստական դաստիարակության միասնության և այլ թեմաներով հետաքրքրական ու բովանդակալից զեկուցումներով հանդես եկան Բաքվի, Թբիլիսիի, Երևանի համալսարանների ուսանողները: Համալսարանի ուսանողական գիտական ընկերության (ՈՒԳԸ) կոնֆերանսներին մասնակցում են Մոսկվայի, Կիևի, Տարտուի, Ռոստովի և Միության այլ քաղաքների համալսարանների ուսանողները, որոնք հայ երիտասարդներին հաղորդակից դարձրին իրենց գիտական առաջին քայլերին. կատարվեց փորձի փոխանակում: Մեր համալսարանականները փոխադարձաբար զեկուցումներով հանդես են գալիս վերոհիշյալ համալսարանների ՈՒԳԸ կոնֆերանսներին: 1980 թվականին, Երևանի պետական համալսարանի ուսանողական գիտական ընկերության 43-րդ կոնֆերանսում, որը նվիրված էր Հայաստանում սովետական կարգերի հաստատման 60-ամյակին, ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության, միջազգային երիտասարդական շարժման և այլ թեմաներով զեկուցումներով հանդես եկան Մոսկվայի, Լենինգրադի, Ռոստովի համալսարանների ուսանողները:

Երիտասարդների ինտերնացիոնալ դաստիարակության լավագույն միջոցներից են ուսանողական փառատոները, որոնք նպաստում են սովորողների բարեկամական կապերի ամրապնդմանը, ինտերնացիոնալիզմի գաղափարների տարածմանը: Այսպես, 1981 թ. մարտի 2—8-ը, ՀԼԿԵՄ Երևանի Մյասնիկյանի շրջկոմի և Կոմիտասի անվան պետական կոնսերվատորիայի նախաձեռնությամբ, Երևանում տեղի ունեցավ երաժշտական բուհերի ուսանողների՝ Հայաստանի լենինյան կոմերիտմիության 60-ամյակին նվիրված «Երիտասարդների ստեղծագործություն—81» համամիութենական փառատոնը, որին մասնակցում էին Լենինգրադի, Տաշքենդի ,Նովոսիբիրսկի, Մինսկի, Թբիլիսիի, Տալլինի և Միության այլ քաղաքների 18 կոնսերվատորիաների ուսանողներ:

Փառատոնի նպատակն էր ծառայել ստեղծագործական երիտասարդությանը սովետական արվեստի գաղափարական և կուսակցական ավանդներով դաստիարակելու խնդրին, ուսանող կոմերիտականների ինտերնացիոնալ բարեկամության ամրապնդմանը, ինչպես նաև ուսանողների ստեղծագործական և գիտահետազոտական աշխատանքների հետագա ծավալմանը:

Փառատոնի մասնակիցների համար կազմակերպվեցին բարեկամության երեկոներ, հանդիպումներ և այլն:

Լավ ավանդույթ է դարձել ապրիլ ամսին «Ուսանողական գարուն» փառատոնի անցկացումը հանրապետության բուհերում, փառատոն, որը դարձել է երիտասարդության ստեղծագործական ունակությունների, ձգտումների առանձնահատուկ ստուգատես:

Երիտասարդների ինտերնացիոնալ դաստիարակության գործին են ծառայում նաև ուսանողական ինտերնացիոնալ բարեկամության ակումբները: Դրանց միջոցով երիտասարդությունը հաղորդակցվում է եղբայրական մյուս հանրապետությունների ուսանողների կյանքին, կապիտալիստական երկրների առաջադեմ երիտասարդության մղած ազատագրական պայքարին, նրա հասարակական գործունեությանը:

Հետաքրքրական հանդիպումներ, էքսկուրսիաներ է կազմակերպում Երևանի պետական համալսարանի «Կռունկ» ինտերնացիոնալ բարեկամության ակումբը, որը պրոպագանդում է տարբեր երկրների պրոգրեսիվ շարժումների ուսումնասիրման անհրաժեշտությունը:

Նույնպիսի խրախուսելի աշխատանքներ են տարվում նաև Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական, Խ. Աբովյանի անվան հայկական պետական մանկավարժական, Վ. Բրյուսովի անվան ռուսաց և օտար լեզուների, բժշկական, գյուղատնտեսական, անասնաբուժական-անասնաբուծական ինստիտուտներում, որոնց ինտերնացիոնալ բարեկամության ակումբները բարեկամական սերտ կապեր են հաստատել մեր երկրի այլ հանրապետությունների, ինչպես և սոցիալիստական երկրների՝ Չեխոսլովակիայի, Հունգարիայի, Լեհաստանի, ԳԴՀ-ի, Բուլղարիայի մի շարք բուհերի հետ:

Երիտասարդությանը, մասնավորապես ուսանողությանը ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների բարեկամության ոգով դաստիարակելը եղել և մնում է լենինյան կոմերիտմիության գործունեության կարևոր խնդիրներից մեկը: Մեր երկրի կոմերիտմիության ավելի քան 60-ամյա տարեգրությունը հարուստ է հայրենիքին, ինտերնացիոնալ գաղափարներին հավատարմորեն ծառայելու վառ օրինակներով:

Կոմերիտական կազմակերպություններն իրենց ամենօրյա աշխատանքում ձգտում են այն բանին, որ սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և հայրենասիրության սկզբունքները դառնան յուրաքանչյուր սովետական երիտասարդի, ուսանողի բնորոշ գծերից մեկը:

Դժվար է այսօր մեր լայնածավալ երկրի որևէ կարևոր կառույց պատկերացնել առանց սովետական բազմազգ երիտասարդության, մասնավորապես ուսանողության համատեղ աշխատանքի: Երիտասարդությունը միշտ այնտեղ է, որտեղ դժվար է, որտեղ որոշվում են կոմունիստական շինարարության գլխավոր խնդիրները: Ուսանելի ու հարուստ է ինտերնացիոնալ բրիգադների, աշխատանքային բազմազգ կոլեկտիվների, շինարարական ջոկատների գործունեության պատմությունը:

Վ. Ի. Լենինը սովորեցնում էր, որ կոմունիստական դաստիարակության էությունն այն չէ, որ երիտասարդությանը մատուցվեն ճառեր և միայն բարոյական խրատներ: Այս ասպարեզում հույժ կարևոր է ուսմունքը կապել պրակտիկ գործունեության հետ, աշխատանքային ուժերը նվիրել ընդհանուր գործին. «Ահա սա է կոմունիստական դաստիարակությունը: Միայն այսպիսի աշխատանքի մեջ երիտասարդ մարդը... իսկական կոմունիստ է դառնում» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 31, էջ 362—363): Մասնակցելով հանրօգուտ աշխատանքին՝ երիտասարդությունը զարգանում է հոգեպես ու ֆիզիկապես, ապրում ստեղծագործելու բերկրանքը:

Ուսանողական շինարարական ջոկատները (ՈՒՇՋ) կոմերիտական ուղեգրերով մեկնում են Ղազախստան, Սախալին, Ուրալ: Նրանք աշխատում են ԲԱՄ-ի և Տյումենի շինարարական հրապարակներում, համայնական դաշտերում, կառուցում Ատոմմաշը, Նադեժդինսկի մետալուրգիական գործարանը, Արփա—Սևան թունելը, Հայաստանի ատոմակայանը, Երևանի մետրոպոլիտենը, Իջևան—Հրազդան երկաթուղին:

«Եվրոպայի սոցիալիստական երկրներում և հեռավոր Կուբայում... մոլորակի ամենատարբեր շրջաններում մեր երկրի հազարավոր որդիներ ու դուստրեր կատարում են իրենց ազնիվ հերթափոխը՝ կառուցում են գործարաններ և էլեկտրակայաններ,— ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՀամԼԿԵՄ XVIII համագումարում,— ...Նրանք օրեցօր իրականացնում են ինտերնացիոնալիզմը գործով, որն այնպես բարձր էր դասում Վլադիմիր Իլյիչ Լենինը:

Պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմը մեր մեծ ուժն է: Դա մեր համոզմունքների պտուղն է և մեր սրտերի կրակը: Դա մեր դրոշն է»:

Եվ ամենուրեք, մեր լայնածավալ երկրի բոլոր հարվածային կառույցներում, աշխարհի ամենատարբեր շրջաններում դրսևորվում է սովետական երիտասարդության ու նրա առաջավոր ջոկատներից մեկի՝ ուսանողության, սոցիալիստական հայրենասիրության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի, մարդկայնության լավագույն հատկանիշները:

Հայրենասիրության, ինտերնացիոնալ դաստիարակության գործում էական նշանակություն ունեն և շինջոկատների անդամներից կազմված գեղարվեստական ինքնագործ խմբերի ելույթները բնակչության առաջ, կազմակերպվող հետաքրքրական դասախոսությունները: 1979 թ. ամռան ամիսներին շուրջ 915 համալսարանականներ են մասնակցել ուսանողական շինարարական ջոկատներին՝ տեղի բնակչության շրջանում ծավալելով ակտիվ հասարակական-քաղաքական գործունեություն: Այսպես, աշխատելով Իրկուտսկի մարզի արդյունաբերական ձեռնարկություններում և խոշոր կառույցներում, ՈՒՇՋ-ների կազմում պետական համալսարանի պատմության ֆակուլտետի շատ ուսանողներ աչքի ընկան Բրատսկի շրջանի «Իլիր» սովխոզի աշխատավորների շրջանում ծավալած հասարակական-քաղաքական, պրոպագանդիստական աշխատանքով:

Ուսանող երիտասարդության կոմունիստական, ինտերնացիոնալ դաստիարակությունը մեր կուսակցության առաջնահերթ խնդիրներից է: Եվ այդ բնական է. չէ որ այսօրվա ուսանողը վաղվա ինժեներն է, մանկավարժը, գիտնականը, դաստիարակը, քաղաքացին ու ապագայի կերտողը: Նրանց քաղաքական կոփվածքով, գաղափարական համոզվածությամբ, մասնագիտական պատրաստականությամբ է պայմանավորված հասարակական-քաղաքական, տնտեսական պրոբլեմների բարդ կոմպլեքսի հաջող լուծումը:

«Լինել հայրենասեր և միևնույն ժամանակ տոկուն, համոզված ինտերնացիոնալիստ... նշանակում է հավատարիմ լինել լենինյան մեծ ուսմունքին», ասել է Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը: Այս վեհ ճշմարտության խոր գիտակցությամբ մեր երիտասարդները, սովետական ողջ ժողովրդի հետ մեկտեղ, ոգեշնչված կուսակցության ծրագրերով, հարթում են նոր հասարակարգի կառուցման մայրուղին:

## Առաջավոր բնագծերում

# ԲՈՒԺՄԱՆ ԳՈՒՄԱՐԵԼԻՆԵՐԸ

### ԱՆՈՒՇԱՎԱՆ ԴԵՎԿԱՆՑ

*ՀՍՍՀ առողջապահության մինիստրության Հ. Հակոբյանի անվան կուրորտոլոգիական և ֆիզիկական մեթոդներով բուժման գիտահետազոտական ինստիտուտի 50–ամյակի առթիվ*

**ԺՈՂՈՎՐԴԻ ՄԵՋ ՀԱՅՏՆԻ Է** որպես ֆիզիոթերապևտիկ ինստիտուտ (կամ՝ հիվանդանոց): Բազմահարկն ունի իր գաղտնիքը, որն իմանալու համար պիտի շրջանցես շենքը: Առջևդ բացվում է սքանչելի մի տեսարան՝ Հրազդանի ավանդական կիրճը: Քաղաքին հարևան, բայց մի նոր բնաշխարհ. մաքուր օդ, համաչափ խոնավություն, համակ լռություն և, հանկարծ, աքաղաղի գի՜լ ծուղրուղու...

Վաղ գարնան խունացած սպատառին՝ դալարիկ ծառերի ու ուռողոտ վազերի մերկ ճերմակությունը: Ինստիտուտի բակից սկսվում է թեք լանջը, որն իջնում է մինչև Օղակաձև խճուղին: Կիրճի լանջերի այդ հատվածը, երևի, ամենափոքր թեքությունն ունի մինչև Արգվի ձգվող գետափերին: Դիմացը Ծիծեռնակաբերդն է՝ Եղեռնի զոհերի կոթող-հուշարձանով և սարավանդի աջ պռնկին խոյացող մարզական համալիրի սպիտակ կմախքով: Ցածում, երկու ափերի միջև սեղմված, գալարվում է խճուղու ասֆալտե ժապավենը՝ կամրջի կարմիր ճաղաշարով հատված: Սևին տվող այդ ժապավենի լռության մեջ՝ շարժվող ավտոմեքենաների կանաչ-կարմիր-կապույտ-դեղին խայտանքները: Կիրճի հատակին՝ Զանգվի ջրերի մի պատառը՝ գորշ-կանաչ ապակյա սառը հարթություն:

Ինձ համար կարևորը ձախակողմյան, այսինքը՝ մեր, ինստիտուտի լանջն է: Այստեղ հնուց անտի մնացած ինչ-որ առանձնատներ են, ավելի կամ պակաս խնամքով մշակված այգիներ, խաղողի թարմաներով փոքրիկ բակեր, կարմիր աքաղաղի հսկողությամբ քուջուջ անող սպիտակ ու չալտիկ հավեր: Այդ լանջն ինձ այսօր արդեն ներկայանում է մի քիչ այլ տեսքով ու այլ ծառայության մեջ: Բայց առաջ չընկնենք և սկսենք այնտեղից, «ուստի արժան է սկսանել»...

### ԶԱՆԳՅՈՒՂԵՑԻ ՎԱՐՊԵՏ ՎԱՀՐԱՄԸ

Ծնողներիս (նաև՝ իմ) հայրենակից Վահրամ Ազիզյանը՝ 74-ամյա շինարար, շարժուն, կորաքիթ ու սուրաչք վանեցի (Զանգյուղ թաղից) ատաղձագործը, հրաժեշտ տալով, ասաց.

— Եկա, սիրտս վերանորոգեցի, կերթամ...

Կես դարից ավելի՝ դազգահի վրա կռացած, իր գործն՛է արել, և մի օր, սրանից 5 տարի առաջ՝ սրտամկանի կաթված:

— Դարի հիվանդություն է, մոդա է, վանեցին ինչո՞ւ պիտի ետ մնա...

Դուրս գրվեց, գնաց, մի քանի որ անց եկավ այցի: Ստացած բուժման համակարգում ամենից արդյունավետը համարում էր առավոտյան վարժանքները: Խոսեցինք նաև տանեցիներից. կին, զավակներ, թոռներ: Ու հանկարծ, միտքն ամփոփելով, եռանդուն.

— Մարդուս կյանք երկարացնող յուր կնիկն է, ջանը՛մ, մնացած ամեն բան սո՛ւթ է:— Բայց, երևի, ինչ-որ թերահավատ ցոլք որսաց հայացքիս մեջ, իսկույն տնկեց մատը.— սակայն կարճացնողն էլ կնիկն է, հա՛... Չմոռանանք այս պարագան ևս շեշտել:

Հետո մի բան էլ շեշտեց.

— Հանգստի լավ տեղ է, իսկ ճիշտ կազմակերպված հանգիստն արդեն ինքնին բուժում է, այդպես չէ՞: Հարկա՛վ:



### ՊՐՈՖԵՍՈՐ ԺԻՐԱՅՐ ԹՈՓՉՅԱՆԸ

Ծագումով հաճնցի է, Լեռնային Կիլիկիայից: Ասել է թե՝ տոհմիկ հայ է: Ծնվել է 1923-ին, երբ ծնողները 20-ին Հունաստան փախչելուց հետո եկել են Հայաստան: Դպրոցն ավարտել է ոսկե մեդալով և դիմել պոլիտեխնիկ, բայց հաճնցի մայրը խնդիրը տնօրինել է մի քիչ այլ կերպ:

— Տղաս կա՛մ բժիշկ պիտի դառնա, կա՛մ փինաչի,— հայտարարել է նա՝ դեռևս պատերազմի ու սովի տարիներին կայացրած իր որոշումն ու գնացել, որդու գործերը պոլիտեխնիկից հանել, տարել է բժշկական:

Ուսանող եղավ ընդամենը մեկ տարի. 1941-ի հուլիսին զորակոչվեց ռազմաճակատ, որտեղից վերադարձավ 1944-ին և, այդպիսով, ինստիտուտն ավարտեց ընդունվելուց 8 տարի անց: Երկար տարիներ աշխատեց Եղեգնաձորի շրջանում. բժիշկ էր, առբաժնի վարիչ, Ջերմուկ առողջարանի դիրեկտոր, 1962-ից այստեղ է:

1969-ին, Հայաստանի կառավարության հանձնարարությամբ, իբրև կուրորտաբան, «Հայպետնախագիծ» ինստիտուտի հատուկ խմբի կազմում մասնակցեց հանրապետության առողջարանների զարգացման ու օգտագործման հեռանկարային մեծ ծրագրի (մինչև 2000 թ.) մշակմանը, որը հաստատեց ՀՍՍՀ Մինիստրների խորհուրդը. այժմ այդ ծրագիրը շտկվում է, լրացվում, մշակվում ավելի մանրամասն ու հանգամանորեն:

— Արզնի—Բջնի—Արզական առողջական գոտու գաղափարը մեր ինստիտուտի մշակած նորույթն է: Հայաստանի խոշոր գործարանները այս գոտում արդեն կառուցել են իրենց պրոֆիլակտորիումները: Իսկ Ջերմուկի առընչությամբ դեռևս 25 տարի առաջ եկել էի մի եզրակացության, որը հիմա հաստատվում է...

Խոսքը սրտանոթային համակարգի վրա բարձրադիր գործոնի դրական ազդեցության մասին է: Օրինաչափությունն այն է, որ սրտի հազարավոր պսակաձև մազանոթները, ի ծնե անգործության մատնված, կարող են փոխարինել շարքից դուրս եկածներին: Մեջտեղ է գալիս սեպը սեպով հանելու գաղափարը... Մարդու օրգանիզմի հարմարողական-ադապտացիոն կարողությունները հրաշքներ են գործում: Միայն թե զգույշ պետք է լինել: Օրգանիզմը պետք է աստիճանաբար հասցնել այնպիսի վիճակի, որն ապահովի նրա կենսագործունեությունը թթվածնի նվազ պայմաններում:

Չէ՛, հաճնեցի մայրիկը չէր սխալվել: Կոչումը գուցե թե հետո է տղայի սիրտը մտել, պատերազմի թոհուբոհի ժամանակ, աննկատ...

Մինչև 1965 թ. Արզնին հակացուցված էր սրտի իշեմիկ հիվանդությամբ տառապողներին: Ինստիտուտի կլինիկական ու փորձարարական բաժինները ապացուցեցին հակառակը: Ինստիտուտը՝ իր պրոֆեսորի ղեկավարությամբ, վաստակել է երկու հեղինակային պատենտ այդ հիվանդության ինքնատիպ բուժման եղանակ մշակելու համար (այս անգամ՝ էլեկտրաքուժում, դեղորայքի նվազագույն քանակության մուծմամբ):

Քաղաքակրթության բերած նոր կենցաղը մարդուն դրեց կենսական այնպիսի խնդիրների առաջ, որոնց մարդը պիտի հարմարվեր ոչ թե մի քանի տասնամյակի, այլ տասնյակ դարերի ընթացքում...

— Ինչպե՞ս ապրել առողջ մնալու համար:

— Ժամանակին հայտնի պատմություն դարձավ,— ծիծաղեց պրոֆեսորը:— Երևանի քաղսովետի գործադիր կոմիտեի նախագահը դիմել էր բժշկի՝ խնդրելով օգնել ազատվելու ճարպակալումից... Բժիշկն էլ խորհուրդ էր տվել ամեն օր աշխատանքի գնալ ոտքով, սեփական աչքով տեսնել քաղաքի թերությունները...

Պրոֆեսորի համոզմամբ՝ սրտանոթային համակարգի հիվանդությունները բազմապատճառ են. դրանց բուժումն էլ պիտի բազմակերպ լինի՝ ֆիզիոթերապևտիկ, հանքաջրային՝ համակցված ֆիզիկական վարժությունների և դիետիկ սննդի համալիր բուժմամբ: Մեր օրերում առաջավոր բուժումը սահմանափակում է քիմիական դեղորայքի օգտագործումը: Առողջ ու երկար ապրելու գաղտնիքը չափավորությունն է...

Պրոֆեսոր Թոփչյանն արել է իր կարելին՝ գյուտեր, գրքեր, առտնին ու աշխատանք: Հիվանդություններից տառապող մարդկանց ցավատանջ հայացքները մի-մի հատիկ փուշ են թողել նրա մաքուրածիլված դեմքին և շարժուն կնճիռներ գոյացրել աչքերի անկյուններում՝ ավելի սրնդացնելով ներքին խստությունից առանց այդ էլ աչքերի մի քիչ չոր թվացող, բժշկի՛ աչքերի հայացքը:

### ԴԵՆ ՆԵՏՎԱԾ ՀԵՆԱԿՆԵՐԸ

Երևանցի փականագործ ու էլեկտրազոդող բանվոր Գառնիկ Ֆրանգյանը հիվանդանոց եկավ զույգ հենակներով, ոտքերն ու ձեռքերը կեռված և բուժման 15-րդ օրն իր սենյակից դուրս ելավ մի հենակով... Ընդարձակ ու ծաղկազարդ հանգստասրահում տամա ու շախմատ խաղացող մարդիկ ուրախ բացականչություններով դիմավորեցին նրան:

— Հինգ օրից էս մեկն էլ դեն կգցեմ,— բոլորովին կարմրած դեմքի վրա աչքերը շողացրեց Գառնիկը:

Հինգ թե վեց օրից հենակը փոխարինեց ձեռնափայտով:

— Բժիշկս չի թողնում, թե չէ...

Մարդն արդեն մոռացել էր, թե ինչ ձևով եկավ. իսկ բժիշկները չէին հիշեցնում, բայց և չէին շտապում: Կատակ բան չէ ոտքերի ու ձեռքերի պոլիարտրիտ բուժելը:

— Ի՞նչ բուժում ես ստանում, Գառնիկ:

— Էլեկտրական և ջրաբուժական:

Հենց այս միջադեպն էլ, որի ականատեսը եղա, առաջին անգամ դրդեց ինձ մտածելու, որ արժե մի բան գրել այս հաստատության մարդկանց մասին— թե՛ բժիշկների, թե՛ հիվանդների, թե՛ մի քիչ էլ երախտագիտական այն ապրումների մասին, որ, երևի ամենքի նման, ունենում էի նաև ես:

## ՀՈԴԱԲՈՒԺՈՒԹՅՈՒՆ

Հինգ-վեց տարի առաջ էր, բոլորովին երիտասարդ մի տղա՝ Զավեն Գրիգորյանը, կնոջ հետ հատում էր փողոցը... և հանկարծակի բախումից կնոջը օդ թռած տեսավ, ինքը գետին տապալվեց, կառչեց մոտոցիկլետի ինչ-որ մասից... Այն ժամանակ ո՛չ ինքը, ո՛չ կինը, կարծես թե, որևէ վնասվածք չստացան: Ա՛յն ժամանակ... Իսկ այժմ 30-ամյա ինժեները հայտնվել է ահա հիվանդանոցում՝ ձախ կոնքազդրային հոդի ձևափոխվող արթրոզի ախտորոշմամբ: Մեկ ամսվա բուժումից հետո նրան տրվեց հանգիստ՝ պարտադիր ընդհատումով, բայց 6—12 ամիս հետո ինստիտուտն անպայման կհրավիրի նրան՝ շարունակելու բուժումը:

Հոդային հիվանդությունները նենգ են: Հաճախ շատ արագ դառնում են խրոնիկ: Սովորաբար ախտահարվում են աշխատունակ մարդիկ: Պատճառները բազմազան են, բայց ելակետայինը հոդերի արյունատար անոթների խեղումներն են, որի հետևանքով խանգարվում է հոդերի սնուցումը: Հիվանդությանը նպաստող պայմաններից են նաև նույն դիրքով երկար մնալը, պրոֆեսիոնալ բնույթի գերբեռնվածությունը, ճարպակալումը, աշխատանքի հետ կապված փոքր, բայց կրկնվող վնասվածքները, խոնավությունը, ջերմաստիճանի կտրուկ փոփոխությունները, քիմիկատների և թունանյութերի ազդեցությունը:

Այս հիվանդության «պրոֆեսորը» Ալբերտ Սիմոնյանն է, առայժմ՝ բժշկական գիտությունների թեկնածու, բայց արդեն վարիչը մի բաժնի, որտեղ 70 մահճակալից 35-ը հոդային հիվանդներին է տրամադրված, 35-ը՝ սրտային: Բաժանմունքի հիմնական աշխատանքը բուժական մեթոդների մշակումն է: Միակ վայրն է հանրապետությունում, որտեղ զբաղվում են այս հիվանդությունների հետազոտմամբ և բուժմամբ:

— Ցավո՛ք,— շեշտեց բաժնի վարիչը և կրկնեց.— ցավո՛ք:

— Մի խոսքով,— ուզեցի եզրակացնել ես,— այս հիվանդությունը ևս մեր անփութության, մեր չգիտության արդյունքն է:

— Ա՛յլ կերպ կմեկնաբանեի,— առարկեց Սիմոնյանը:— Առկա է երկու ծայրահեղություն: Մի դեպքում՝ սեփական առողջությունը պահպանելու գիտելիքների պակասը, որ հատուկ է երիտասարդ տարիքի մարդկանց, մյուս դեպքում, և առավելապես, ցիվիլիզացիան, որը բերում է ապրելակերպի այնպիսի մի ձև, ինչպիսին է նստակյաց կյանքը: Ցիվիլիզացիան,— այս բառն այնպես է արտասանում՝ ասես հայհոյի,— բերում է ադինամիա, որի հետևանքով մարդու մկանային համակարգը գործում է թերբեռնված: Չաշխատող մկանները չեն ծախսում կուտակված էներգիան և օրգանիզմի կենսական ընթացքն ապահովող համապատասխան քանակի դրական ազդակներ չեն տալիս:

Մեր զրույցը երկարում է. հոդային հիվանդությունները ևս պահանջում են բուժման տարբեր եղանակներ, որոնց որոնումները շարունակվում են և այսօր: Բուժման արդյունավետ միջոցներից մեկը «Ջերմուկ» հանքաջուրն է, որն առողջավայրում օգտագործվում է լոգանքների, խմելու համար, իսկ արտաառողջարանային պայմաններում՝ էլեկտրաֆորեզի միջոցով:

— Բնակչության հարատև աճը պահանջում է ավելացնել մթերքների արտադրությունը. մեջտեղ է գալիս քիմիան՝ պարարտանյութի ձևով: Նոր պրոբլեմ. մարդու օրգանիզմը դառնում է նորորակ մի քիմիական լաբորատորիա: Ներթափանցված խորթ տարրերը օրգանիզմը շեղում են սովորական հունից... Ցիվիլիզացիան...

Ասում է՝ ոնց որ հայհոյի...

— Այսօրվա քաղաքակրթված մարդուն ամենից առաջ անհրաժեշտ է զուսպ կենցաղավարություն: Իսկ երբ մարդ դուրս է գալիս ինքնա- և վերահսկողությունից, երբ մոռանում է պահպանել անձնական հիգիենայի կանոնները, խախտում է աշխատանքի ու հանգստի ռեժիմը, արհամարհում չափավորությունը սննդի օգտագործման հարցում, երբ չարաշահում է ոգելից խմիչքները, նա խաթարում է իր առողջությունը:

Իրավացի են բժիշկները. ամենքն էլ նույնն են պնդում— չափավորություն: Մինչդեռ մարդն անվերջ շտապում է՝ այս էլ հասցնել, այս մի բանն էլ ունենալ, սրա համն էլ տեսնել, մի ուրիշ բանի էլ հասնել:

— Մանավանդ երիտասարդ տարիքում չենք գիտակցում առողջության նշանակությունը, կարծում ենք մեր ֆիզիկական կարողությունները անսպառ են: Այսօրվա մարդը որքան շուտ կարողանա որոշակի շրջանակների մեջ դնել իրեն, այնքան երկար կպահպանի առողջությունը:

Զարմանքով իմանում եմ, որ այս բարձրահասակ, ձիգ կեցվածքով, առատ և ուղիղ մազերը նոր միայն ճերմակին հանձնած, հիսունը նոր բոլորած երիտասարդը, որը տասը տարի վիրաբույժ է եղել Սիսիանում, որտեղ 2 հազարի չափ վիրահատություն է կատարել, ինքը նույնպես մի քանի անգամ ենթարկվել է վիրահատության:

Կարելի է ձևափոխել ռուսական ասացվածքը. նոր զգեստդ պահպանիր՝ քանի նոր է, առողջությունդ՝ քանի դեռ ջահել ես:

## ԱԶԳԻ ԴԵՄՔԸ

Երկրորդ հարկի մի թևը տրամադրված է երեխաներին...

Արդեն մի երկու տասնամյակ է, ինչ մեր սերնդակիցներին հիացմունք են պատճառում Երևանի փողոցներում ավելի ու ավելի հաճախ հանդիպող բարձրահասակ պատանիներն ու բարեկազմ աղջիկները, շենքերի ու դպրոցների բակերում վազվզող մանկտոց կայտառ ու ինքնամոռաց խմբերը: Հավանորեն կարելի է պնդել, թե ազգի, հասարակության դեմքը (իսկ եթե բժշկության տեսանկյունից դիտենք՝ նաև առողջական վիճակը) որոշողը միշտ էլ երեխաներն են եղել, աճող սերունդները:

Այն, որ այստեղ, այս հարկաբաժնում ընդամենը 80 մահճակալ է, վկայում է, որ եկող սերունդներն ավելի առողջ են աճում: Իսկ այն, որ բաժանմունքի վարիչ Էմմա Բաղդասարյանը պնդում է, թե այդքանը քիչ է, զարմանալի չէ. նա պիտի՛ պնդի, պիտի՛ պահանջի՝ ի պաշտոնե:

Այստեղ բուժվում են 7—14 տարեկան երեխաները: Հիմնական հիվանդությունները նյարդային համակարգի և աղեստամոքսային խանգարումներից են, 60 տոկոսը՝ լյարդի ցավերից, որ դեղնախտի հետևանք է, բայց համալիր բուժումից հետո հետք չի մնում:

Սրահում վազվզում, ճռվողում են տասնյակի չափ երեխաներ: Երեք աղջնակ գորգապատ հատակի մի անկյունում, երկարուկ տոտիկները ջրահարսերի պես ետ ծալած, պարաֆինից քարկտիկ են սարքել ու խաղում են: Այս պարաֆինը հուզեց ինձ.

— Որտեղի՞ց ձեզ...

— Պարաֆինի բուժում ենք ստանում:

Բժշկուհի Ռոզա Տեր-Բաղդասարյանն ասում է, որ սրանք ամեն ինչով ժամանակակից երեխաներ են. բուժական բոլոր տիպի գործողություններին հաճախում են պատրաստակամությամբ, սրսկումներից չեն վախենում: Ինչ-որ տխուր բան էլ կա այս անվախության մեջ. երեխաները արդեն զգացել են հիվանդության վնասն ու հասկացել բուժման օգուտը: Անկեղծ համակրանք է ներշնչում հնարավորին չափ քիչ դեղորայք կիրառելու ձգտումը: Կեսօրից առաջ ու իրիկնամուտին երեխաների խումբը՝ տաք հագնված, դաստիարակչուհու հսկողությամբ, հիվանդանոցի բակում շարժուն խաղեր է խաղում: Լավ է, երբ նույնիսկ հիվանդ երեխաները աղմկոտ են, կայտառ ու կենսուրախ:

## ՄԵՆԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԳԻՏԱՀԵՏԱԶՈՏԱԿԱՆ ԹԵՄԱՆԵՐԻ ՇՈՒՐՋ

Այս բնագավառի ղեկավարությունը մտնում է ինստիտուտի դիրեկտորի գիտական գծով տեղակալի պարտականությունների մեջ: Թամար Մովսիսյանը՝ եռանդուն ու արագախոս մի կին, իր գործին քաջատեղյակ ու նվիրված, այնպիսի առատ ինֆորմացիա տեղաց գլխիս, որ հիմա մտածում եմ՝ այդքանից ո՞րքա՛նը պիտի կարողանամ պեղել ծոցատետրումս հապշտապ արված գրառումներից:

— Մեր ինստիտուտը հանրապետության առողջապահության սիստեմում և մեր երկրի համանման ինստիտուտների թվում մասնագիտացված առաջատար գիտահետազոտական հաստատություններից է,— ասաց ընկեր Մովսիսյանը:— Միաժամանակ բուժական խոշոր կենտրոն է, որտեղ բուժվում են սրտանոթային ու նյարդային համակարգերի, աղեստամոքսային օրգանների, հենաշարժողական ապարատի և այլ հիվանդություններով տառապող մարդիկ:

Ինստիտուտն ունի 5 կլինիկական բաժանմունք, ինչպես և՝ փորձարարական, հանքաջրերի ու կլիմայի հիդրոքիմիայի հետազոտման և պոլիկլինիկական բաժանմունքներ: Ֆիզիոթերապևտիկ կոմպլեքսի մեջ են մտնում ջրային և էլեկտրալուսային բուժումը, բուժական մարմնամարզությունը և այլն:

Գիտական հետազոտությունները ինստիտուտը կատարում է այլ հաստատությունների համագործակցությամբ: Այդ աշխատանքներում կարևորը հանրապետության կուրորտային հարստությունների համալիր ուսումնասիրությունն է, դրանց գիտական հիմնավորումը, որոնց շնորհիվ ընդունվել են մի շարք կառավարական որոշումներ՝ կապված աշխատավորների մասսայական առողջացման խնդիրների հետ:

Տեսական ու գործնական առաջնահերթ նշանակություն ունեն այն հետազոտությունները, որոնք վերաբերում են սրտամկանի ինֆարկտի, ինչպես և իշեմիկ հիվանդության բուժման ու վերականգնանացման նոր եղանակների մշակմանը Արզնի և Ջերմուկ առողջարաններում:

ՀՍՍՀ ԳԱ նույբ օրգանական քիմիայի ինստիտուտի հետ մշակված էլեկտրաֆորեզային բուժման եղանակները գիտական նոր ուղղություն եղան ինստիտուտի համար: Հատուկ ուշադրություն է նվիրվում նոր ֆիզիոթերապևտիկ ապարատների ստեղծմանը, որով զբաղվում է ինստիտուտի ինժեներական խումբը:

Ինստիտուտի գիտահետազոտական աշխատանքի արդյունավետության վկայությունն է այն, որ վերջին տարիներս ինստիտուտի աշխատակիցները ստացել են 6 հեղինակային և 15 նորարարական առաջարկությունների վկայական, հրապարակված է 19 մեթոդական առաջարկություն: Իր գոյության տարիներին ինստիտուտը հրատարակել է 4 մենագրություն, գիտական աշխատանքների 16 ժողովածու, 30-ից ավելի մեթոդական ուղեցույց, 15 բրոշյուր, հանրապետության առողջարանների մի շարք պրոսպեկտներ, կուրորտոլոգիայի ու ֆիզիոթերապիայի տարբեր բնագավառներին վերաբերող 3 մատենագիտական ուղեցույց և այլն:

Ինստիտուտի աշխատակիցներից 8-ը պաշտպանել են դոկտորական, 41-ը՝ թեկնածուական դիսերտացիա:

Ինստիտուտը մշտական մեթոդական օգնություն է ցույց տալիս հանրապետության բուժական ու առողջարանային հաստատություններին, կազմակերպում ֆիզիոթերապևտիկ կաբինետներ, որի շնորհիվ ֆիզիկական մեթոդներով բուժումը դարձել է շատ հիվանդությունների համալիր բուժման անբաժան մասը:

Չէ, դժվարանում եմ վերծանել այն ամենը, ինչ գրի եմ առել գիտզծով տեղակալի մենախոսությունից...

## ԱՍԵՂՆԱԲՈՒՅԺ ԱՐՄԵՆ ՍԱՐԳՍՅԱՆԸ

Պատիվ ունեմ հավաստելու՝ իմ երիտասարդ բարեկամն է: Նրան գիտեմ վաղուց (արդի չափանիշներով). զուսպ է, բայց և նախաձեռնող, զգույշ է, բայց և հեռատես, չափավոր է, բայց և աշխատասեր: Մի խոսքով՝ ժամանակակից երիտասարդ մասնագետի (գույե և տարածված) մի տիպ: Սիրում է իր գործը՝ ասեղնաբուժությունը, որին նվիրված է հեռատեսորեն, բայց չի բավարարվում դրանով, հարակից ու ազգակից մի երկու ասպարեզ նույնպես կամաց-կամաց յուրացնում է: Դրանցից մեկը, թեպետ չի խոստովանում, ամենայն հավանականությամբ, հոգեբանությունն է (պսիխոթերապիան), քանզի հիվանդների հետ աշխատելիս (այո՛, ասեղնաբուժությունը նաև սովորական ֆիզիկական լարվածություն է պահանջում) մեջտեղ է բերում գրական հայերենի իր ողջ պաշարն ու ջանադիր եռանդով կատարում նաև հիվանդների ուղեղների բանավոր մերսում:

— Ասեղնաբուժությունն արթնացնում է օրգանիզմի քնած բջիջները: Դրանք քնած են մնացել կա՛մ ի ծնե, կա՛մ հետո են թմրել...

Պատմում է... ոչ թե բժիշկը, այլ բյուրականցի Արամայիս Բաղալյանը, որն ամբողջ կյանքում գրատախտակի առաջ կանգնած մաթեմատիկա է դասավանդել ու դասերին երբեք չի նստել: Բյուրականի Օրգով գյուղի այս լուսավորիչը 20—22 տարվա ցավ է բերել դրել բժիշկ Արմեն Սարգսյանի առջև՝ իր ոտքերը, որոնցից մեկը՝ անվերջ բուժումներից հոգնած, մի երեք տարի առաջ «ոտքադուլ» էր արել, այն է պիտի կտրեին, մի կերպ իրար հասկացել են՝ ոտք, ոտքի տեր գլուխ, բժիշկներ, սնխչիներ, ոտքը մնացել է իր տեղում և իր գործին ու կոչմանը, եկել հասել է ֆիզիոթերապևտիկ Արմենին, և ահա բուժման 18-րդ օրը.

— Որոշ փոփոխություն կա... դեպի լավը...

Վերջին երկու բառն այնպես արտասանեց, որ ես պատկերացրի, թե ինչ է եղել մինչև այդ...

— Երրորդ, չորրորդ օրը բարելավում զգացի,— խոսքի մեջ մտավ 72 թվականին Իրանից ներգաղթած, այժմ հոկտեմբերյանցի Աշոտ Տեր-Հակոբյանը, որ տառապում է վերջույթների սառեցումից:— Ի՞նչ տեսակ ցավ ասես, որ չի տանում մարդ-արարածը:— Տասը-տասնմեկ տարի ամեն տեսակ բուժում եմ ստացել, հիմա, առաջին անգամ, բարելավում եմ տեսնում:

Ուրիշներն էլ են խոսքի մեջ մտնում, և ամենքն էլ ուզում են նախ և առաջ ոչ այնքան բուժման եղանակը, որքան բժշկին գովաբանել— հոգատար է, ուշադիր... Պիտի հասկանալ հիվանդի հոգեբանությունն ու ներողամիտ լինել. միշտ ետին հույս ունի՝ գուցե և բժիշկը (էն էլ այդպիսի) ինչ-որ բան ավելի կամ պակաս կարող է անել... Խոսակցությունը եզրափակեց օրգովցի մանկավարժը.

— Բարեխի՛ղճ է,— և սա էր ճշմարիտը:— Իսկ դա բուժման հիսուն տոկոսն է...

Բժիշկ Արմեն Սարգսյանը, բնականաբար, դեռևս կոչումներ ու տիտղոսներ չունի, բայց արդեն ունի ոչ պակաս կարևորը՝ լավ համբավ և ղեկավարության վստահությունը: Քիչ բան չէ (մանավանդ՝ վերջինը). ապացույց՝ բոլորովին վերջերս ինստիտուտի դիրեկտոր Զավեն Սարգսյանի հրամանով բացվեց նոր բաժանմունք (ասեղնաբուժության), որի վարիչի պաշտոնը հանձնվեց նրան: Հազարամյակների պատմություն ունեցող բուժամիջոցը, որը նոր զարգացում է ապրում ամբողջ աշխարհում, վստահվեց երիտասարդ մասնագետին, որպիսիների թիվը, ի դեպ, մեր երկրում հետզհետե մեծանում է: Օրերս Մոսկվայից, ուր գնացել էին նոր մասնագիտությունը սովորելու, վերադարձան երեք երիտասարդ բժիշկ, որոնք դառնալու են ասեղնաբույժ Արմենի առաջին օգնականները:



## ԻՆՍՏԻՏՈՒՏԻ ՀՊԱՐՏՈՒԹՅՈՒՆԸ

— Դուք եղե՞լ եք մեր ինստիտուտի գրադարանում: Դա մեր № 1 հպարտությունն է,— հարցրեց ասեղնաբույժ Արմենը:

Եղել էի, ծանոթացել գրադարանավարներ Կարինեի ու Մարինեի հետ, որոնք բարեկիրթ ու նրբավարի էին ընդունել ինձ՝ չնայած գրադարանն սպասարկում է միայն ինստիտուտի աշխատողներին: Տեսել էի լուսառատ ընթերցասրահը, հարմարավետ գրապահոցը: Հետո արդեն Սեդա Առոյանից, որը 20 տարի այստեղ է (այժմ վարիչն է), իմացա, որ գրադարանն ստանում է 80 անուն մասնագիտական պարբերական, ունի մոտ 30 հազար կտոր գրականություն:

Գրադարանը հիմնականում ծառայեցվում է գիտաշխատողների պահանջների բավարարմանը: Դրա համար էլ այստեղ մի առանձին սենյակ է հատկացված թարգմանիչ Նելի Ակոպովային, որը թարգմանում է անգլերեն մասնագիտական նյութերը երեք ձևով՝ բանավոր, ձայնագրված, գրավոր. ըստ մասնագետի պահանջի: Ես լսեցի նրա ձայնագրած թարգմանության մի նմուշ... Բաքվում կրթություն ստացած այս բանասեր աղջիկը 6 տարում այնպես է հմտացել իր գործի մեջ, որ նրա կատարումը կարելի է ո՛չ միայն գերազանց համարել, այլև ուղղակի՝ արտիստիկ:

Այս ամենից բացի՝ գրադարանն ունի 15 միջգրադարանային աբոնենտ, որից 11-ը՝ այլ հանրապետություններում: Եթե պահանջվող գիրքը կամ հաղորդումը Սովետական Միությունում չի լինում, դուրս են գրում արտասահմանից: Գրադարանը երկու անգամ առաջին տեղն է գրավել միութենական մրցույթներում, երկու անգամ էլ հանրապետությունում՝ գիտատեխնիկական ինֆորմացիայի լավագույն կազմակերպման համար:

## ԱՎԱԳ ՄԵԹՈԴԻՍՏ ՄԻՀՐԱՆ ՆԱՀԱՊԵՏՅԱՆԸ

— Ես հիվանդների հոգիների վրա ազդելու գործոնն ավելի եմ կարևորում, քան ֆիզիկական գործոնը:— Եվ այս ասում էր ֆիզիկական կուլտուրայի բազմափորձ մասնագետը:— Այո՛, իմ կարծիքով, ոչ թե հիվանդությունը պիտի բուժել, այլ հիվանդին:

Միհրան Նահապետյանի մասին լսել էի իր սաներից, որոնց կարելի է հանդիպել հանրապետության առողջապահական այլևայլ հաստատություններում: Նահապետյանն ամեն օր ճիշտ ժամը 8-ին հիվանդների մի հոծ խմբի հետ սկսում է իր բուժական մարմնամարզությունը, որն ինքն էլ մշակել է՝ պրոֆեսոր Թոփչյանի հետ միասին: Ինչպես պարզվեց, նրա տնտեսությունն ինստիտուտում ամենահարուստն է: Բակում, առանձին մուտքով մարզասրահների հետ կապված, բոլորակ լողավազանն է՝ իր գմբեթաձև ապակեղեն ծածկով: Այստեղ էլ տեղադրված է ստորջրյա եղանակով ողնաշարի ձգման սարքը, որը բուժում է դիսկոգեն ռադիկուլիտը: Միհրան Նահապետյանի մտահղացմամբ ինստիտուտում ստեղծված այդ սարքը միակն է իր տեսակի մեջ և պաշտոնապես պատենտավորված: Պրոֆ. Թոփչյանի անմիջական ղեկավարությամբ նրանք մշակել են հիվանդների շարժողական ռեժիմը, որի հիման վրա էլ կատարվում է սրտանոթային հիվանդների բուժական մարմնամարզությունը ողջ հանրապետությունում:

Միհրան Նահապետյանի տնտեսության մեջ են մտնում նաև մերսումների խցիկները՝ 5 մերսողներով, շենքի հարմարավետ տանիքը, որն ամառները դառնում է արևի ու օդային լոգանքների հիանալի մի վայր:

Ինքը՝ Նահապետյանը, միջահասակ է, նիհար, ջլուտ: Շարժումները զուսպ են, խոսելու եղանակը՝ չնայած սիրում է կատակել, ձեռ առնել հատկապես որոշ հիվանդների ավելորդ եռանդը, նույնպես չափավոր է:

Համարվում է նաև հանրապետության ամենալավ մերսողներից մեկը:

Առհասարակ, շատ սկեպտիկական մարդ է, օգտակար զրուցակից: Հիշեցե՛ք նրա անունը:

## ԱՏԱՄՆԱԲՈՒՅԺՆ՝ ԳԻՏՈՒՆ ՈՒ ԺՐԱՋԱՆ

Նաև՝ հմայիչ: Թամար Հարությունյանը՝ բալզակյան տարիքից (արդի իմաստով) դեռևս շատ հեռու այդ կինը, հենց առաջին պահից վստահություն է ներշնչում: Կես օր է աշխատում, բայց հասցնում է միջանցքում իր դռան առաջ հերթի կանգնածներին ընդունել: Չի անապարում, բայց քանի որ լավ գիտե իր գործը, արագ է աշխատում:

Հաճախ եմ մտածել, որ ատամնաբույժի աշխատանքում ինչ-որ հակագեղագիտական բան կա, բայց այս անգամ նման բան չանցավ մտքովս, ընդհակառակը՝ վկա եղա, թե ինչպես կարելի է պրոզաիկ գործին գեղեցկություն հաղորդել: Ճիշտ է, շատ պարզ նրբագեղություն, բայց այնպիսին, որն արդյունք է շատ սովորական պրոֆեսիոնալիզմի:

Ամեն մի հերթական գործողություն, որ կա-

տարում էր, ուղեկցում էր հստակ ու մատչելի, բայց և հիմնավոր ու սպառիչ բացատրությամբ:

Հիանում էի, զարմանում, բայց ամեն ինչ հասկանալի դարձավ, երբ մի օր ամենավերջինը մտա իր մոտ (ներթը վաղուց հալվել էր) և մի քիչ զրուցեցինք: Թամարը բարեկիրթ է և բազմակողմանի զարգացած. իր սկզբունքներն ունի կյանքի, ընտանիքի մասին, հատկապես վճռական է երեխաների դաստիարակության շուրջ դատելիս: Երեխաներ, ընտանիք, աշխատանք— ահա երեք սրբություն, որոնց հավատարիմ է ու նվիրված Թամար Հարությունյանը, որոնցով և երջանիկ է:

## ՀԵՂՈՒՇԻ ՎԵՐԵԼԱԿԸ

Հեղուշն այս հաստատության հետաքրքրական մարդկանցից է: Ծանր հիվանդներ տեղափոխելու համար նախատեսված իր վերելակի սահմանները Հեղուշն ընդարձակել է միանգամայն ինքնատիպ ձևով: Չորս մերկ պատ՝ գումարած առաստաղը, և այդ ամբողջ տարածությունը նա զարդարել է իր ձեռքով արված տարբեր չափսի ու ձևի բազմաթիվ ասեղնագործ ժանյակներով: Առաստաղի կենտրոնը զարդարում է ամենամեծ ձեռագործը, ապա ավելի փոքրերը: Հետաքրքրական են հատկապես ժանեկագործ բաժակ-ծաղկամանները. դրանց մեջ դնում է անթառամ խոտիկներ, իսկ թարմ ծաղիկների համար ունի ապակյա բարալիկ սկահակներ՝ մեկ հատիկ մեխակի կամ վարդ ու կակաչի համար:

Վերելակը շատ չի ծանրաբեռնվում, երբեմն աշխատակիցներն են օգտվում, շտապ կարիքի դեպքում:

Այս ամենին նայելով՝ ես մտածում էի. այստեղ պակաս ուշադրավ չէ ինստիտուտի տնօրինության վերաբերմունքը. ամեն ոք չէ, որ կդրսևորի այդքան դեմոկրատիկ հանդուրժողություն: Մանավանդ Զավեն Սարգսյանի պես խստակյաց ու խստապահանջ մեկը:

## ԱՄԵՆԱՓՐԿԻՉ ԴԻԵՏԱՆ

Վերջին մեկ-երկու տասնամյակում սննդաբանության տեսության մեջ մի քանի հեղաշրջող ուղղություններ են առաջացել, բայց քանի որ ոչ մեկը մյուսին չի ժխտել, մարդկանց տարբեր խմբեր հետևում են այս կամ այն ուղղությանը (նայած թե որին են ծանոթ), իսկ մարդկության հոծ զանգվածներն անձնատուր են լինում շատակերությանը՝ աստիճանաբար ավելացնելով հիվանդների թիվը: Բոլոր տեսությունների հիմնադիրներն ու հետևորդները համամիտ են մի հարցում. շատակերությունը, այո՛, XX դարի մեծագույն պատուհասն է, ամեն տեսակ հիվանդությունների նախապատճառը...

Ես հավատացի բժշկուհի Օֆելյա Խաչատրյանի խորհուրդներին (նա ինձ տրամադրեց նաև համապատասխան գրականություն) և արդեն հիվանդանոցում՝ բնավորությանս ու հնարավորություններիս թույլատրելի սահմաններում, սկսեցի հետևել դրանց: Ամերիկացի նշանավոր սննդաբան Շելտոնը, որն ստեղծողն է ու տնօրենը Առողջության ինստիտուտի, և որի գրքերն իր հայրենիքում հրատարակվել են երկու տասնյակից ավելի անգամ, սովորեցնում է տարբերել իսկական քաղցը կեղծ քաղցից: Այս վերջինիս անունն է՝ ախորժակ: Մենք աստիճանաբար կորցրել ենք համի զգացողությունը և այժմ, որպեսզի ուտելիքից բավականություն ստանանք, հագեցնում ենք բազմատեսակ համեմունքներով, որ սուր համ զգանք: Պետք է պակասեցնել ընդունելիք սննդի տեսակները, այսինքն՝ կշտանալու, հագենալու համար ընդունել մեկ, ամենաշատը երկու տեսակ ուտելիք: Դրա շնորհիվ կհագենանք ավելի շուտ, և մեր բազմաչարչար ստամոքսը, որը չի հասցնում յուրացնել բազմատեսակ ուտելիքը, հանգիստ կառնի և ավելի լավ կմարսի սնունդը: Այս դիետան սննդի ոչ մի տեսակի վրա արգելք չի դնում. թերևս միայն աղի, համեմունքների ու դեսերտային ավելորդությունների. բայց խորհուրդ է տալիս տարբերել ուտելիքները. առավոտյան, ավելի շուտ 1-ին նախաճաշին (հնարավորին չափ ուշ) ածխաջրատներ (հյութեր, մրգեր և այլն), 2-րդ նախաճաշին՝ օսլայով հագեցած սնունդ, ճաշին՝ սպիտակուցներ: Բոլոր դեպքերում՝ առատ կանաչեղեն:

Ահա իմ փորձի արդյունքը. երկար տարիներ խրոնիկ դարձած իմ հիպերտոնիան, որն անսասան էր բոլոր տեսակի դեղորայքի ճնշման տակ, վերջապես տեղի տվեց, մոտեցավ ու մնաց նորմալ թվերի վրա:

Բժշկուհի Օֆելյա Խաչատրյանն ավելի հարուստ փորձ ունի. մի քանի հիվանդներ, որոնք դիմացել են նրա խորհուրդների ռեժիմին, հիվանդանոցից դուրս են գրվել անճանաչելիորեն կազդուրված, լիովին ապաքինված:

Հիվանդանոցի գլխավոր դիետոլոգ Էդուարդ Գրիգորյանը նույնպես մեր համախոհն է, ինչպես ինքն է ասում՝ պաշտպանը ամեն մի նորույթի: Իսկ «նորույթը» արժե, որ տարածվի, ավելի հանգամանորեն լուսաբանվի ու քննարկվի ռադիոյով, մամուլում, հեռուստատեսությամբ, քանզի, իրոք, մեր կյանքն աստիճանաբար բարեկեցիկ է դառնում, իսկ դա, ցավոք, հաճախ իր հետ բերում է այնպիսի մի աղետ ու պատուհաս, ինչպիսին է շատակերությունը...

## ՀՈԼԻՎՈ՞ՒԴ, ԹԵ...

Ես հիվանդանոց գնացի ցավերի կրկնվող նոպաներով: Հիվանդասենյակում շոգ էր, դուռս բաց թողեցի՝ ուղիղ դեպի Զանգվի ձորը, արթնացա կոկորդի ցավով, խզված ձայնով: Ինձ ուղարկեցին առաջին հարկ՝ բժշկուհի Նվարդի մոտ. քիթ-կոկորդի հիվանդի մասնագետ է, ասացին, կարող ես լիովին վստահել: Նայեց, ինհալացիոն բուժում նշանակեց: Այդպես էլ գիտեի: Ժպտացի: Նվարդն էլ ժպտաց: Կոկորդիս ցավը միանգամից մեղմացավ: Ուրիշ է բժշկուհի Լուիզա Ատոմյանը. արտակարգ կանոնիկ դիմագծերը և, հավանորեն, նույնքան կանոնիկ դաստիարակությունը իրավունք էին տալիս նրան՝ արժանապատվության սովոր հայացքով նայել դիմացինին ու աշխարհին... Բոլորովին երիտասարդ սրտաբան Սուսաննա Ծաքարյանը երազում է անմիջապես հիվանդների հետ գործ ունենալ, քան նրանց սրտագրերի: Միայն աչքերում այնքան հիացմունք ունի թաքցրած, իսկ հոնքերի տակ՝ այնքան զարմանք, որ արժե ընդառաջել նրա փափագին: Գիտաշխատող Էմմա Օգանովան՝ բնավինելու իր կրքով, դիմացինի մասին հնարավորին չափ շատ բան իմանալու ձգտումով, կարեկցանքի ու փոխըմբռնման անկեղծ պոռթկումներով, ավելի էր գեղեցկանում...

Մի խոսքով՝ ամենքին չես թվի: Բոլորի հետ չհասցրի ծանոթանալ. ես էլ իմ գործերն ունեի. բուժվում էի, հանգստանում, երբեմն կարդում, երբեմն նույնիսկ գրում, հիվանդանոցի բոլոր հարկերում դրված անվճար ավտոմատ հեռախոսներով երբեմն զանգահարում էի ծանոթ-բարեկամներիս...

— Դու, ի՞նչ է, գնացել ես հիվանդանո՞ց, թե Հոլիվուդ,— դիպուկ նկատեց հումորի ըզգացումը ոչ մի կերպ չկորցնող ընկերներիցս մեկը, որովհետև չդիմացա և սկսեցի նկարագրել հերթական գեղեցկուհուն, որն այդ գիշեր հերթապահել էր:

Հիմա մտածում եմ. Հոլիվուդ չէ, իհարկե, բայց, իսկապե՛ս, որքան լավ է, որ քեզ շրջապատող մարդիկ՝ հոգատար և ուշադիր լինելուց բացի, արտաքինով նույնպես գեղեցիկ են: Դա ևս հանգստացնում, անդորր է բերում հիվանդ մարդու հոգուն ու սրտին:

Գուցե հարկավոր է բժշկական ինստիտուտ ընդունելիս հաշվի առնել այս հանգամանքը, հը՞...

## ԻՄ ԲԺՇԿՈՒՀԻՆ

Չէ՛, սրանցից չէր: Գուցե ժամանակին կարողանա՞ր մրցել, բայց հիմա հեռու է նման հավակնություններից: Սոֆյա Արտեմևնան առհասարակ որևէ հավակնությունից հեռու մարդ է: Ամեն օր, առավոտյան նույն ժամին նա այցի է գնում իր հիվանդներին, որոնք, մյուս բժիշկների համեմատ, ամենքից շատ են լինում՝ 14—24 մարդ: Եթե հիվանդի վիճակի մեջ ինչ-որ բան դուր չի գալիս, այցելում է նաև երկրորդ անգամ:

Կարող է ժամով լսել քեզ, բայց, երկյուղելով հետաքրքրասեր երևալուց, ոչ մի հարց չի տա: Զուսպ է նաև խորհուրդներ տալիս. ամենաանհրաժեշտ ցուցումները, այն էլ գրեթե միշտ ինչ-որ վերապահումով, հիշեցման կարգով: Եվ լավագույն թերապևտներից մեկը լինելով՝ միշտ նրա խնամքին էին հանձնվում քիչ թե շատ ծանր հիվանդները:

Բարի էր, ուշադիր, բնական, քաղաքավարի: Անգամ բժշկի իր կամքը չէր պարտադրում, բայց հենց հիշածս բնականությունն անվիճելի ու անկասկած էր դարձնում նրա ցուցումները կատարելու անհրաժեշտությունը:

Ահա թե ինչու՝ բնական է թվում նաև երախտագիտության այն զգացումը, որ համակում է ինձ բժշկուհի Սոֆյա Գրիգորյանին հիշելիս, և նույնքան ավելորդ՝ շռայլ խոսքերը: Ուստի միայն այսքանը. շնորհակալություն, Սոֆյա Արտեմևնա՛, իմ և ձեր բոլոր մյուս հիվանդների անունից:

## ՊՈԼԻԿԼԻՆԻԿԱՅԻ ՎԱՐԻՉԻ ՄՈՏ

Որոշել էի հանգամանորեն ծանոթանալ այս ասպարեզին, բայց գործը մի քիչ այլ ընթացք ստացավ: Պարզվեց, որ վարիչը ինստիտուտի կուսակցական բյուրոյի քարտուղարն է: Մասնագիտությամբ գաստրոէնտերոլոգ Մարգարիտ Աթաբեկյանը սիրով է կատարում այս պարտականությունը: Որքան հասկացա (ավելի շուտ՝ զգացի), այդ աշխատանքը երկրորդ երիտասարդություն է պարգևել պոլիկլինիկայի վարիչին: Նա առանձին հաճույքով է շեշտում այն իրողությունը, որ կազմակերպության անդամները հիմնականում երիտասարդներ են: Որպես ապացույց՝ դուռը բացվեց և ներս մտավ մեր բարեկամ ասեղնաքույժ Արմենը՝ մի կապուտաչ ջահել աղջկա հետ: Արմեն Սարգսյանը բյուրոյի 2-րդ քարտուղարն է, ունի մի քանի հասարակական պարտականություն, ինստիտուտի գեղարվեստական ձևավորման խորհրդի նախագահն է նաև:

— Մի քիչ շատ չէ՞ մեկ մարդու համար,— հարցրի:

Մինչ Արմենը կփորձեր արդարանալ (կամ՝ գուցե մեղադրել), միջամտեց նրա հետ ներս մտած ընկերուհին, որը, ինչպես պարզվեց, ինստիտուտի կոմերիտական լիդերն է:

— Մեր կոմերիտականները, քանհինգն էլ,

հասարակական պարտականություններ ունեն, — հպարտությամբ տեղեկացրեց նա:— Բոլորն էլ աղջիկներ, միջին բուժանձնակազմից են և աշխատում են մեծ պատրաստակամությամբ:

— Իսկ ձեր դիրեկտո՞րը... Մի՞թե Զավեն Արմենակիչին ազատ եք թողել...

— Երբե՛ք,— ոգևորվեց ընկեր Աթաբեկյանը,— նա մեր քաղուսուցման ղեկավարն է:

— Սեմինար պարապմունքները բժիշկների ու գիտաշխատողների համար են, ուսումնասիրում ենք «Փիլիսոփայական պրոբլեմները բժշկագիտության մեջ»:

— Կուսակցական կազմակերպությունը առանձնապես կարևորում է բժշկագիտության նորագույն նվաճումները առողջապահական պրակտիկայի մեջ ներդնելուն...

— Մեր ինստիտուտը հեղինակային գյուտերի քանակությամբ հանրապետության բուժհիմնարկների մեջ լավագույնն է...

Այս ամենը ստուգելու ժամանակ չունեցա, բայց որքա՜ն բնորոշ է, որ կուսակցական ու կոմերիտական կազմակերպիչները նույն ոգևորությամբ են խոսում իրենց հաստատության, իրենց գործի ու աշխատանքի մասին: Նշանակում է նրանք հավասարապես նվիրված են թե՛ աշխատանքային և թե հասարակական պարտականություններին:

## ԵՎ ԻՆՍՏԻՏՈՒՏԻ ՏՆՕՐԵՆԸ

Բժշկական գիտությունների թեկնածու Զավեն Արմենակի Սարգսյան: Կարդում ենք միջնահարկի ընդունարանի պատին:

Նոր-Նախիջևանցի հին բոլշևիկի (1920 թ.) որդի է: Հինգ տարի շրջաններում աշխատելուց հետո 22 տարի տարբեր պաշտոններ է վարել ՀՍՍՀ ժողովրդական վերահսկողության կոմիտեում: Ինստիտուտի տնօրինությունն ընտանձնել է 1979 թ. հուլիսից: Այդ կարճ ժամանակամիջոցում, նախապատրաստվելով ինստիտուտի 50-ամյա հոբելյանին, սկզբունքային լուրջ նորոգումներ է կատարել: Այժմ ինստիտուտ-հիվանդանոցի թվացույ ց ա յ ի ն պատկերն այսպիսին է.

Ինստիտուտում աշխատում են 500-ից ավելի մարդ. 65 բժիշկ, 60 գիտաշխատող, 120 վարչական, 130 միջին, 127 կրտսեր բուժանձնակազմ: Ինստիտուտն ունի բժշկական գիտությունների 5 դոկտոր և 21 թեկնածու: Դիրեկտորն այժմ ինստիտուտի գործունեությունն այնպես է վարում, որ միութենական 3-րդ կարգից բարձրանա 2-րդի, մի բան, որը հնարավորություն կընձեռի ներգրավելու ավելի բարձր մակարդակի մասնագետների:

Զավեն Սարգսյանը, չնայած արտաքին հանդարտ ու նույնիսկ մի փոքր դանդաղկոտ շարժումներին, եռանդուն մարդ է, կորովապինդ, բամբ ձայնի մեջ հրամայական շեշտերը լավում են նույնիսկ այն ժամանակ, երբ լուռ է: Ասում են՝ խիստ է, բայց հույժ գործնական. հայացքի մեջ ջերմություն կա, բայց և համառ մի շեշտ: Պրոֆ. Թոփչյանն ու մյուսները հավատում են, որ նոր տնօրենի ղեկավարությամբ ինստիտուտը դեռ շատ հաջողություններ կունենա: Արդյունքներն ակնառու են. ահա մի քանի փաստ:

Ինստիտուտի տնօրինությունն ստանձնելու օրից ՀՍՍՀ առողջապահության մինիստրության օգնությամբ վերանայվել է գիտական կադրերի տեղաբաշխումը, ճշտվել ինստիտուտի կառուցվածքն ու թեքումը, հրավիրվել են նոր բարձրորակ մասնագետներ, ձեռք է բերվել նոր բուժսարքավորում, որը դյուրացնում է հատկապես ախտորոշման գործը, լիովին վերակառուցվել է հանքաջրերի բուժարանը, ստացիոնարին կից ստեղծվել է պոլիկլինիկական բաժանմունք (16 բարձրակարգ մասնագետով և օրական 500 մարդու ամենաբազմազան բուժսպասարկումն ապահովելու կարողությամբ), ավարտվել է ջրավազանի վերանորոգումը՝ իր բուժհամալիրով հանդերձ, ինստիտուտի բոլոր գիտաշխատողներն ունեն առանձին աշխատասենյակ և այլն, և այլն:

Դիրեկտոր Զավեն Սարգսյանը խստադեմ է, բայց հայացքը բարի է, թաքնված ժպիտով (ուրեմն՝ զուրկ չէ հումորի զգացումից). և երբ ժպտում է, բոլորովին ուրիշ մարդ է դառնում: Զավեն Սարգսյանի հետ զրուցողը շուտով զգում է, որ տնօրենը ներքին անբավարարություն ունի: Ինչպես պարզվում է՝ դա քաղաքացիական մտահոգությունից է, անհանգիստ բնավորությունից:

— Բանն այն է,— ասում է նա,— որ ինստիտուտը միակն է հանրապետությունում... Մեր ստացիոնարն ունի ընդամենը 255 մահճակալ (25-ը՝ Ջերմուկի մասնաճյուղում), որից 70 տեղ սրտանոթային ու հոդային, 70 տեղ աղեստամոքսային, 60 նյարդային և 30 տեղ մանկական բաժանմունքներում: Տարվա ընթացքում բուժում է ստանում 3 հազար մարդ, ընդամե՛նը: Քի՛չ է... Պահանջն ավելին է: Բուժական կենտրոնը մեծացնելու խնդիրը հրատապ է: Չունենք կարգին զբոսուղի, մարդիկ ստիպված են զբոսանքները կատարել շենքի շուրջը ասֆալտի վրա... Երևանի քաղսովետի գործկոմի որոշմամբ ինստիտուտին է տրամադրվել մոտ 4 հեկտար տարածություն... Կարելի է ունենալ լավ զբոսուղի, բացօթյա բուժական մարմնամարզության հրապարակներ, վերջապես՝ կառուցել նոր մասնաշենքեր...

Երկար տարիների ղեկավար աշխատանքը մարդուն նախ և առաջ խիստ ռեալիստ է դարձնում, և Զավեն Սարգսյանը նույնպես ռեալ է իր ծրագրերում, բայց այստեղ չի դիմանում, և մենք սկսում ենք միասին երազել, թե ուրիշ ինչե՞ր կարելի է անել այդ չորս հեկտարի՝ Հրազդանի կիրճի ամենագեղատեսիլ հատվածներից մեկի վրա, որը ձգվում է մինչև մեծ կամուրջը: Մենք արդեն տեսնում ենք ոլորապտույտ զբոսուղիները, որ փոքր թեքությամբ իջնում են մինչև խճուղին ու գետը. որոշ առողջացող հիվանդների կարելի է թույլ տալ, որ իջնեն գետափ՝ ձուկ բռնելու, իսկ ետ վերադառնալու համար, խնդրեմ, կարող են օգտվել վերելակից, մտիր խուցն ու սեղմիր կոճակը, կամ կարելի է և ծածկի տակ առնված շարժասանդուղք կառուցել...

— Ժամանակի հարց է, միջոցներ միշտ էլ կարելի է գտնել,— լրջացավ տնօրեն Սարգսյանը:

— Մի փոքր էլ էնտուզիազմ է պետք,— ավելացրի ես, և մենք «անցանք առաջ»:

Ինստիտուտը սերտ կապերի մեջ է մոսկովյան կենտրոնի և կուրորտաբանության միջազգային ընկերության հետ: Իբրև դրա ապացույց՝ տնօրենը նշում է, որ 1980 թ. Վիեննայում տեղի ունեցած կուրորտաբանների առաջին միջազգային կոնգրեսի աշխատանքներին գիտական համագործակցության համար ինստիտուտը պարգևատրվել է պատվավոր դիպլոմով: Երիտասարդ գիտնականների հետ տարվող լավագույն աշխատանքի համար 1980 թ. ինստիտուտն արժանացել է ՍՍՀՄ ժողտընտեսության ցուցահանդեսի բրոնզե մեդալին: Բոլորովին վերջերս ինստիտուտի երիտասարդ գիտաշխատող Կարեն Բախշինյանը սրտամկանի ինֆարկտ տարած հիվանդների արագ բուժման ինքնատիպ եղանակ մշակելու համար դարձել է երիտասարդության գիտատեխնիկական ստեղծագործության 1980 թվականի համամիութենական ստուգատեսի դափնեկիր, նրան հանձնվել է ՀամԼԿԵՄ Կենտկոմի, ՍՍՀՄ գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեի, գյուտարարների ու նորարարների, ինչպես և գիտատեխնիկական համամիութենական ընկերությունների կենտրոնական խորհուրդների դիպլոմ ու բրոնզե մեդալ: Հոբելյանի առիթով հունիսի 3—5-ը հրավիրվեց համամիութենական պրոբլեմային համաժողով, որը մշակեց ֆիզիոթերապևտիկ ինստիտուտների բժշկական ու գիտահետազոտական աշխատանքների հեռանկարները և այլ հարցեր:

Մեր զրույցի միջոցին տնօրենի մոտ էին գալիս աշխատակիցներ, այցելուներ... Մեկերկու բառ, հստակ հրահանգ, հակիրճ մակագրություն ներկայացվող փաստաթղթի վրա... Սա նշանակում է՝ ինստիտուտում գործն այնպես է «դրված», որ այստեղ խոսքի գերածախս ու աշխատանքի վատնում չի կատարվում, որ կա փոխըմբռնում ու փոխադարձ հարգանք:

## ՎԵՐՋԱԲԱՆԻ ՓՈԽԱՐԵՆ

Օրբելի եղբայրների փողոցով ետուառաջ են սլանում քաղաքային տրանսպորտի գրեթե բոլոր տեսակները (տրամվայից բացի), և փողոցը ոչ մի բանով չի տարբերվում մյուսներից: Նույն աղմուկը, նույն օդը: Բայց № 41 բազմահարկի մյուս ճակատի կողմում ամեն ինչ այլ է՝ հաճելի մի վայր, որը խնամքոտ, տընտեսավար ձեռքերի մեջ կարող է վերածվել առողջարար ձեռնարկության (արդի հասկացողությամբ): Մեր ճարտարապետների ա՜չքը լույս. իրենց տարածական երևակայությանն ազատություն տալու 4 հեկտարանոց ինքնատիպ ռելիեֆի թափարձակ ասպարեզ: Այս հեքիաթային լանջը՝ իր ամայությամբ, ասես հանդիմանում է երկրի տերերին, որ մեծ ու կարևոր այլ գործերով զբաղված, դանդաղում են դրախտավայր դարձնել Զանգվի այդ հատվածը, որ ձգվում է մինչև Հրազդանի մեծ կամուրջը, և որպիսին չկա կիրճի ողջ երկարությամբ՝ մինչև Արզնի ու դենը:

Դա կլինի մի առողջարար գոտի Երևանի կենտրոնում, որպիսիք, ցանկության դեպքում, ի՜նչ խոսք, կարելի է հայտնաբերել Երևանի միջով ձգվող Հրազդանի կիրճի այլ հատվածներում ևս՝ մինչև Կարմիր բլուր ու դենը:

ֆերմայի ողջ կոլեկտիվի, որն ամեն ինչ արեց տարին հաջողությամբ փակելու համար:

Լավ մեկնարկ է վերցրել Շենավանը նաև նոր հնգամյակում: Արդեն հունվարի 8-ին տնտեսությունը կատարեց պետությանը միս վաճառելու առաջին եռամսյակի պլանը՝ 140-ի դիմաց մթերակայան հանձնելով 151 ցենտներ բարձրորակ միս: Դրանով իսկ լուրջ հայտ ներկայացվեց ՍՄԿԿ XXVI համագումարի բացման օրը՝ փետրվարի 23-ին, կիսամյակի առաջադրանքը կատարելու վերաբերյալ սոցիալիստական պարտավորության իրականացման համար: Նախորդ տարվա համեմատությամբ հունվարին օրական ավելի է արտադրվել 100—110 կիլոգրամ կաթ: Կարճ ժամկետում ավարտվեց գյուղատնտեսական ողջ տեխնիկայի նախապատրաստությունը գարնան դաշտային աշխատանքներին: Արդեն հունվարի երկրորդ տասնօրյակում պատրաստության տողանի կանգնեցվեցին տրակտորները, գութանները, շարքացանները, վար ու ցանքի բոլոր սարքավորումները:

— Նոր հնգամյակում գյուղը առաջընթացի մեծ թռիչք կգործի,— շարունակում է Սարգըսյանը: Կլուծվի խմելու ջրի հարցը, կկառուցվի 400 տեղանոց մշակույթի պալատ, 20 ընտանիքների հողամաս կտրամադրվի՝ նոր տներ կառուցելու համար:

Աննախադեպ կերպով կզարգանա հատկապես տնտեսության առաջատար ճյուղը՝ անասնապահությունը, որը ՍՄԿԿ XXVI համագումարը համարեց հարվածային ճակատ գյուղում: Շահագործման կհանձնվի 600 գլուխ կովի համար կաթնային նոր համալիրը, որի շնորհիվ խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը կհասնի հազարի, ցեղի բարելավման միջոցով մեկ կովի կաթնատվությունը առաջիկայում կանցնի 3000 կիլոգրամից: Կընդարձակվեն կերային կուլտուրաների ցանքատարածությունները, տարեկան կարտադրվեն շուրջ 5 հազար տոննա կոշտ և հյութալի կեր, արմատապտուղ:

Նոր ծրագրերի իրականացումը իր հետ կբերի նաև բարեկեցության ընդհանուր մակարդակի աճ, թեև այն այժմ էլ արդեն զգալի է. մտիր ցանկացած շենավանցու տուն և կտեսնես լիություն, առատություն, նախանձելի կենցաղավարություն: Այս գյուղը, հիրավի, գյուղ է ոչ միայն աքլորականչով ու կովերի բառաչով, այլև նեոնային լույսերով, ուղղաձիգ ու ծառազարդ փողոցներով, տուֆակերտ, երկհարկանի մենատներով: Եվ արդեն շատ բնական է թվում, երբ, մեկ էլ տեսար, որտեղից որտեղ հայտնվում են երբեմնի տնատերերի թոռ ու ծոռները՝ քաղաքահոտ հարս ու տղայով, գյուղի ու հողի հանդեպ չմարող սիրով, գալիս, նորից հաստատում են իրենց տեղը համագյուղացիների շարքում, կրկին ծըլխացնում հին օջախը... Ապ ու պապերի մոռացված հիշատակները նորանում, դառնում են թանկ ու սիրելի, և գերդաստանը վերստին գոյատևում է: Ինձ ցույց տվեցին վերջին տարիներին սնկի նման արևերես ելած նոր տներ՝ ավերակների տեղում, ծաղկուն պարտեզներ, նորատունկ այգիներ:

Այդ բոլորի տողատակը հեշտ է կարդալ. Շենավանը երջանիկ այսօրվա և պայծառ ապագայի գյուղ է, ու նրա զավակները պատվախնդրորեն կրում են այդ ապագան կերտողի հաճելի պարտականությունը: Նրա զավակները՝ ավագագույն մեխանիզատոր Հենրիկ Գրիգորյանը, հովիվ Ադիբեկ Հակոբյանը, կթվորուհի, ՀԼԿԵՄ Կենտկոմի և կուսշրջկոմի բյուրոյի անդամ Անահիտ Ստեփանյանը, կոլտնտեսության վարչության շնորհաշատ ղեկավար Սուրեն Սարգսյանը, կուսկազմակերպության քարտուղար, կաթնապրանքային ֆերմայի վարիչ Լիպարիտ Հարությունյանը, գյուղական սովետի գործկոմի նախագահ Խաչիկ Հակոբյանը: Մարդիկ, որոնք ղեկավարում են տնտեսությունը, միաժամանակ հոգում բնակավայրի բազում պահանջներն ու կարիքները:

Արդ, գյուղի մասին հաջորդ ասելիքս հենց այստեղից էլ ուզում եմ շարունակել, որովհետև գյուղը շեն է առաջին հերթին իր մարդկանցով: Հիշում եմ զրույցը շենավանցի կթվորուհի Անահիտ Ստեփանյանի հետ, որին հանդիպեցի իրիկնամուտին, ֆերմայի ճանապարհին: Շտապում էր. կթի ժամն էր, և ուշանալ չէր կարելի: Կցկտուր բառերի, ժլատ պատասխանների մեջ զգացվում էր նրա անհանգըստությունը: Մի բան, այնուամենայնիվ, կարողացա պարզել, որ ամեն մի կովից երկու հազար կիլոգրամ կաթ ստանալը, որին հասել են համառ ջանքերով, վերջնական արդյունք չեն համարում ոչ ինքը, ոչ էլ ընկերուհիները: Ուզում են և կարող են հասնել առաջավոր անասնապահական տնտեսությունների մակարդակին:

Հետո ես էլի մարդկանց հանդիպեցի՝ հողագործների, մեխանիզատորների, ուսուցիչների... Եվ իմ տպավորությունն այսպիսին է. անհանգիստ ու որոնող, ձեռք բերվածով չգոհացող բնավորությունն այս գյուղում հատկանշական է բոլորին:

Չգիտեմ, որչափ տեղին հնչեց, գրասենյակում զրուցելու ժամանակ ես հարցրի հավաքվածներին, թե գյուղում վերջին անգամ երբ է հանցագործություն կատարվել: Մարդիկ նայեցին միմյանց ու չկարողացան հիշել, հետո տնտեսության նախկին նախագահ Բենիկ Ղազարյանն ասաց, որ 1946-ին դատի նման մի բան է եղել՝ հողի շուրջ անհամաձայնության պատճառով: Դրանից այս կողմ ինչ վիճելի հարց էլ որ եղել է, լուծվել է խաղաղ ճանապարհով, իսկ հանցագործության մասին խոսք անգամ լինել չի կարող:

Տնտեսության բոլոր հաջողություններում խիստ կերպով նկատելի է կուսակցական կազմակերպության հսկայական բարերար ազդեցությունը: Նա խրախուսում, դրվատում է լավն ու ուսանելին, անաչառություն և հետևողականություն հանդես բերում թերությունները բացահայտելու, շտկելու, վերացնելու հարցերում: Կազմակերպության 50 անդամներից 32-ն անմիջականորեն աշխատում են հանրային արտադրության ոլորտում: Անասնապահությունում նրանք 14-ն են, և թող բոլորովին էլ կողմնակալ չհնչի, եթե ասեմ, որ ֆերմաների կոմունիստների արտադրական ցուցանիշները, առանց բացառության, անհամեմատ բարձր են: Առաջավոր լինելը նրանց համար բարոյական պարտք է, կոմունիստի էության իսկական դրըսևորում: Կուսակցական կազմակերպությունը ամեն կերպ նպաստում է արտադրության մեջ կոմունիստների ավանգարդային դերի ապահովմանը, անում այնպես, որ նրանք բոլորն ունենան մշտական ու ժամանակավոր հանձնարարություններ և կատարեն դրանք, որ արտադրության բոլոր օղակներում բարձրանան կուսկազմակերպության անդամների ակտիվությունն ու հանձնարարված գործի նկատմամբ պատասխանատվությունը: Կոմունիստներն օժտված են բնավորության լավագույն հատկանիշներով. փոխադարձաբար օգնում են միմյանց, նեղ պահին ընկերոջը զորավիգ լինում, նրան հաղորդակից դարձնում աշխատանքային փորձին և հմտություններին: Այդ առումով գյուղում բարի համբավ են վայելում վարպետ-դաստիարակներ, կոմունիստներ Հենրիկ Գրիգորյանը, Սամվել Կարապետյանը, Հովհաննես Ղազարյանը, Պավել Հովհաննիսյանը և շատ ուրիշներ:

Ահա ընդամենը երկու օրինակ, որոնք հենց այդ են վկայում: Տակավին մեկ-երկու տարի առաջ տնտեսության ֆերմայում բավարար էր համարվում մեկ կովից 1600—1700 կիլոգրամ կաթ ստանալը: Սակայն երիտասարդ կթվորուհիներ, կուսկազմակերպության անդամներ Անահիտ Ստեփանյանը, Վարդուհի Գալստյանը, Լյուբա Հակոբյանը և Սիրուն Գրիգորյանը կուսակցական ժողովում հարց բարձրացրին առաջ անցնել նորմայի զորություն ստացած այդ ցուցանիշից: Եվ իրենք էլ, կիրառելով հանրապետության առաջավոր տնտեսությունների փորձը, շուտով նվաճեցին երկու հազարի բընագիծը: Հաղթանակը՝ հաղթանակ, սակայն այն չէր կարող դեռևս լիարժեք լինել, քանի որ կողքին կթվորներ կային, որոնք համառորեն կառչած էին մնում «բարի միջակությանը»: Աղջիկները ներքին համաձայնությամբ «մշակեցին» նրանց օգնելու ծրագիր: Արագ վերջացնում էին կիթը, կովերին կեր տալիս և անմիջապես վազում ընկերուհիների մոտ: Շատ հաճախ, ասես ի միջի այլոց, գործի արանքում պատմում էին լավագույն անասնապահների աշխատանքի փորձի, ներքին հնարավորությունները ամբողջությամբ օգտագործելու, անասունների խնամքը գիտական եղանակով կազմակերպելու դրական արդյունքների մասին: Դրանք հնարավոր է կիրառել նաև իրենց մոտ, միայն թե մի քիչ ավելի սրտացավություն է անհրաժեշտ հանդես բերել, մի քիչ ավելի համառություն, հավատ... Ի վերջո, ֆերման դուրս եկավ քարացած վիճակից, և, ինչպես ասվեց, 2120 կիլոգրամ ցուցանիշով շրջանում գրավում է առաջատար տեղերից մեկը:

Ճիշտ այդպիսի բեկում եղավ նաև ոչխարաբուծության մեջ: Անվանի հովիվ, կոմունիստ Ադիբեկ Հակոբյանն իր օղակով առաջինն ըստանձնեց մեկ ոչխարից 3,2 կիլոգրամ բուրդ և 100 մաքիից 95 գառ ստանալու սոցիալիստական պարտավորությունը՝ մրցության հրավիրելով հարևան օղակի հովիվներին: Պարտավորությունն ստանձնողները շուտով նվաճեցին այդ բնագիծը, բայց մյուս կողմն էլ չպարտվեց, որովհետև մրցությունն ընդհանրապես խթանեց նոր, է՛լ ավելի բարձր արդյունքների ձեռքբերմանը, աշխատանքային ընդհանուր հաջողություններին:

Ասում են, թե մարդիկ ամենից լավ ստուգվում են պայքարի, դժվարությունների հաղթահարման ժամանակ: Անցյալ գարնանը այդպիսի մի դժվարին պահ ստեղծվեց, սակայն ինչպես ամենուր, Շենավանում ևս կարողացան պահպանել սառնասրտությունը, ցուցաբերել կամք և համառություն ու հաղթանակ տանել: 1980-ին շրջանում մթերվեց հինգ հազար տոննայից ավելի հացահատիկ, և ընդհանուր հաջողության մեջ քիչ չէր նաև շենավանցու ավանդը: Հեկտարի բերքատվությունը տնտեսությունում կազմեց 20,7 ցենտներ, որը բնավ էլ վատ ցուցանիշ չէ նման դժվարին տարում:

Բերքը փրկելու, այն պահպանելու, ապա և մինչև վերջին հատիկն ամբարելու համար պայքարը գլխավորում էին կոմունիստ մեխանիզատորներն ու հողագործները, որոնք անձնական օրինակով ոգևորում էին մարդկանց: Իրեն գերազանց դրսևորեց հատկապես կոմու-

նիստ, տրակտորիստ-մեքենավար, վարպետ-դաստիարակ Հենրիկ Գրիգորյանը, որն այն օրերին աշխատանքն սկսում էր վաղ ծեգին և տուն վերադառնում ուշ գիշերին միայն: Նրա կողքին ճակատների զուլալ քրտինքը հողին էին խառնում իր աշակերտ-գործընկերները, նրանք, ովքեր տրակտորի հետ առաջին ծանոթությունն իր շնորհիվ են ձեռք բերել:

Մարդկային կամքն այդպես հաղթահարեց տարերքը:

— Բանից դուրս եկավ, որ այս ձմեռն էլ պակաս վտանգավոր չէ, քան անցած գարունը,— բնության մասին խոսելիս ասաց Հենրիկ Գրիգորյանը:— Հոգսեր շատ եղան, բայց, կարծում եմ, որ դարձյալ հաղթեցինք: Նայեք, ի՜նչ տղաներ են, սրանց ինչո՞վ կվախեցնես...

Ընկերների հանդեպ հարգանքն ու հավատը, հաստատակամությունը, սկզբունքայնությունն ու օբյեկտիվությունը այս կազմակերպության անդամների համար պարտադիր կանոն են ոչ միայն զուտ կանոնադրական պարտականությունների ճշգրիտ կատարման, այլև արտադրական-տնտեսական խնդիրներ լուծելու առումով: Յուրաքանչյուր կոմունիստ անձնուրաց աշխատանքով հաստատում է իր տեղը կոլեկտիվում, իր արժանի ավանդը ամբողջովին ներդնում ընդհանուր հաջողություններում:

Բոլոր կարևոր հարցերի, իրենց մտահոգությունների մասին նրանք խոսում են կուսակցական ժողովում, ուր հանդես են գալիս ինքնահաշվետվություններով, ընկերների հետ կիսում աշխատանքային հոգսերն ու ուրախությունները: Ժողովներն ու բյուրոյի նիստերը սովորաբար անցնում են աշխույժ, գործարար մթնոլորտում: Քննարկվում են գալիք սեզոնի նախապատրաստության, արտադրության արդյունավետության բարձրացման, կուսակցության և կառավարության առաջադրած կարևոր, հրատապ խնդիրների անթերի լուծման, ստանձնած պարտավորությունների իրականացման, գաղափարաքաղաքական դաստիարակության և այլ հարցեր: Ընդ որում, կոմունիստների շուրջ 80 տոկոսը նախորդ ընտրաշրջանում ելույթ է ունեցել, արել անհրաժեշտ դիտողություններ և գործնական առաջարկություններ:

Կուսակցական ժողովների օրակարգում տիրապետողը հողի արդյունավետ օգտագործման հարցն է: Արձանագրություններում ես հաճախ էի հանդիպում այն «զգուշացմանը», թե այսօրվա Շենավանը գրեթե անօգտագործելի հող չունի: Ուստի, գիտական հիմունքներով հողը մշակելը բոլորի համար պետք է դառնա սկզբունք: Դրան հետևելով՝ ամեն տարի տասնյակ տոննաներով հանքային և օրգանական պարարտանյութեր են հողին տրվում, խստագույնս կիրառվում է հողի մշակության ագրոկոմպլեքսը, հաճախ սեմինար պարապմունքներ, խորհրդակցություններ, զրույցներ են անցկացնում հողը մշակողների համար:

Շենավանում արտհունձ են կատարում հաշված օրերում: Ընդամենը 10—15 օրում հնձվում, կալսվում, պահեստավորվում է 800 հեկտար դաշտերի հացահատիկը, հակավորվում, տեղափոխվում ու դիզվում ծղոտը: Դրան անմիջապես հետևում են ցրտահերկն ու աշնանացանը: Քմահաճ բնությունը մարդկանց սովորեցնում է ժամանակը չափել նրա հարյուրերորդական մասերով: Տասներորդ հնգամյակում չի եղել մի տարի, որ Շենավանը չշահի միութենական, հանրապետական կամ շրջանային դրոշներ և այլ պարգևներ: Գյուղի մարդկանցից շատերի կուրծքը զարդարում են շքանշաններն ու մեդալները:

Ոչ մի հարց ուշադրությունից դուրս. կուսկազմակերպության աշխատանքի սկզբունքն այս է: Մարդկանց մտահոգում են ոչ միայն արտադրական հարցեր: Հավասար նշանակություն ունեն և՛ մասնագիտացումը, և՛ անձնական կարիքների բավարարումը: Դրանք շրջանցել չես կարող: Այդ պատճառով էլ սկզբնական կուսկազմակերպությունը գյուղական սովետի գործկոմի հետ լուրջ աշխատանք է տանում գյուղատնտեսական արտադրությունը երիտասարդ մասնագետներով համալրելու, նրանց հայրենի հող ու ջրին կապելու համար: Մասնագիտական կրթություն ստանալով (ընդ որում՝ հիմնականում «գյուղական»), շենավանցի երիտասարդը կրկին վերադառնում է հայրենի գյուղ, ակտիվորեն մասնակցում նրա առջև ծառացած տնտեսական-արտադրական և սոցիալ-կուլտուրական խնդիրների լուծմանը: Եվ հոգատարություն է ցուցաբերվում նրանց նկատմամբ, ժամանակի ընթացքում երիտասարդ մասնագետները ապահովվում են տնամերձ հողամասով, նյութական ու տրանսպորտի միջոցներով՝ նոր տուն կառուցելու, այգի և ծառ հիմնելու համար: Վերջին երեք տարում երկուական գյուղատնտես և անասնաբույժ են աշխատանքի անցել տնտեսությունում: Այդ նույն ընթացքում երիտասարդ զույգերի միությամբ հիսուն նոր տնտեսություն է ավելացել գյուղում, և բնականն է, որ գյուղի այսօրվա երիտասարդությունը ոչ թե ձևականորեն, այլ ջիղ ու ավյունով կապված է իր բնակավայրին, սիրում է այն:

Արտադրության բոլոր հիմնական տեղամասերը ղեկավարում են բարձրագույն կրթությամբ կոմունիստ մասնագետներ: Միջին օղակների կազմակերպիչներն ունեն միջնակարգ մասնագիտական կրթություն, իսկ անասնապահների, մեխանիզատորների, վարորդների շարքում մեծ թիվ են կազմում միջնակարգ դպրոցից գյուղատնտեսական արտադրություն մեկնած պատանիներն ու աղջիկները: Եվ նրանց համար պրոբլեմ չէ նաև ձմռան երկարաշունչ սեզոնում զբաղվածության հարցը. այդ ընթացքում մեծամասնությունն աշխատում է Երևանի տրիկոտաժե ձեռնոցների ֆաբրիկայի Շենավանի մասնաճյուղում:

Իր զավակների տքնաջան աշխատանքով Շենավանն այսօր դարձել է նյութապես ամուր մի տնտեսություն, որի ուժերից վեր չէ նոր, ավելի բարդ խնդիրների լուծումը: Կուսակցության XXVI համագումարը նոր լիցք է հաղորդել շենավանցիներին: Համագումարի փաստաթղթերում արտացոլված ընդհանրացումներն ու դրույթները, նոր պահանջներն ու հոյակապ կանխագծումներն իրականացնելու նպատակով կանխորոշված ուղիները փարոսի պես ուղեցույց ու մարտական ծրագիր են նրանց համար: Համագումարի կանխագծումներում շենավանցիները տեսնում են իրենց պայծառ ու գեղեցիկ վաղը: Եվ ջանում են արժանի ներդրում անել դրանց իրականացման գործում: Այո՛, շենավանցիները ավելի բարդ ու պատասխանատու խնդիրներ լուծելու հաստատակամությամբ են տոգորված: Եվ հավատում եմ, որ նոր հնգամյակում կանեն ավելին:

Գյուղի ճակատագիրը մարդու ճակատագրի նման է: Սկզբում լինում են դժվարություններ, ամեն տեսակի անհանգստություններ, և բոլոր քայլերը կատարվում են ճանապարհը հարթելու համար: Հետո հողը ծաղկում է, գյուղի հայացքում իշխում է ժպիտը, և կամաց-կամաց ամրանում է հավատն այն բանի, որ լինելու է հաղթանակը: Մի օր էլ ծաղկառատ արոտների մեջ խլվլում են ճերմակաբուրդ գառները, ծըփացող խոտհարքներում զրնգում է խոտհընձիչների ու գերանդիների երգը, ամբարները բերնեբերան լցվում են կարմրահատիկ ցորենով:

Եվ գյուղն իրեն լիովին վարձատրված է զգում տագնապների ու սպասումների համար, այն բանի համար, որ կա ոչ միայն հացը, այլև ապագայի հանդեպ վստահ հայացքը:

Ես այսպիսին տեսա Շենավանը ու այսպես ընկալեցի նրան՝ քարաշեն տներով, առատ դաշտերով, անսպառ եռանդով ու անկեղծ սըրտով մարդկանց գյուղը:

# ՍՊՈՐՏԱՅԻՆ ՓԱՌՔԻ ԱՍՏԻՃԱՆՆԵՐՈՎ

**Գ. Մ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ**

Ծանրամարտի Եվրոպայի ֆեդերացիայի առաջին փոխպրեզիդենտ, միջազգային բարձր կարգի մրցավար

**ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ** կուսակցությունը մշտապես հոգում է սովետական մարդկանց հոգևոր ու ֆիզիկական զարգացման համար: Կուսակցության XXVI համագումարի ընդունած «Հիմնական ուղղությունները» փաստաթղթում հատուկ շեշտվում է մասսայական ֆիզիկական կուլտուրայի ու սպորտի զարգացման, այն լայն մասսաների սեփականությունը դարձնելու անհրաժեշտությունը:

Այժմ մեր երկիրն ունի ավելի քան 80 միլիոն ֆիզկուլտուրնիկներ: Արտադրական կոլեկտիվները, հասարակական կազմակերպությունները զգալի հաջողությունների են հասել սպորտի մասսայականացման ասպարեզում: ՊԱՊ-ի կրծքանշանից՝ աշխատանքի բարձր արտադրողականություն և գերազանց որակ. այս երկու մոտեցումը մասսայական ֆիզկուլտուրային շարժման նշանաբանը, որի արդյունքներն ակնբախ են տասներորդ հնգամյակի ժողովրդատնտեսական պլանների հաջող իրականացման ասպարեզում:



Անցած հնգամյակում ֆիզիկական կուլտուրայի մասսայականացման գործում նկատելի աշխատանք է կատարված և մեր հանրապետությունում: Ֆիզկուլտուրային կազմակերպությունները կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների օգնությամբ հասել են որոշակի հաջողությունների: Այդ ամենի արգասիքն է այն, որ հանրապետության մարզիկները, մասնակցելով աշխարհի, Եվրոպայի, Սովետական Միության չեմպիոնատներին, օլիմպիական խաղերին՝ սահմանեցին 39 ռեկորդ, դրանցից 35-ը գերազանցում էր նաև համաշխարհային նվաճումները: Այդ մրցումներում Հայաստանի պատվիրակները արժանացան 495 մեդալի— 189 ոսկե, 143 արծաթե, 163 բրոնզե:

Վերջին տարիներին Հայաստանում արմատավորվեցին սպորտի տարբեր ձևեր, բուռն զարգացավ հատկապես ծանրամարտը: Հիշենք, որ դեռևս ՍՍՀՄ ժողովուրդների հինգերորդ սպարտակիադայում հանրապետության հավաքականը գրավեց տասներորդ տեղը, տուն բերելով ընդամենը մեկ արծաթե մեդալ:

Սպարտակիադայից հետո կայացած ծանրամարտի ֆեդերացիայի արտահերթ նիստում խնդիր դրվեց մինչև հաջորդ սպարտակիադան ընկած ժամանակահատվածում արմատապես վերանայել ծանրամարտի դրվածքը հանրապետությունում, վերականգնել վաղեմի մարզական փառքը: Խոսքը վերաբերում էր 30—40-ական թվականներին, երբ համամիութենական մրցահարթակ ելան մեր դյուցազունները՝ Սերգո Համբարձումյանը և Ռուբեն Մանուկյանը:

Սերգո Համբարձումյանը մեր երկրում առաջինն էր, որ եռամարտում բարձրացրեց 400 կիլոգրամ, և եթե այն ժամանակ սովետական



ծանրորդները միջազգային ֆեդերացիայի անդամ լինեին, ապա այսօր Համբարձումյանի կուրծքը կզարդարեին աշխարհի չեմպիոնի առնվազն երկու բարձրագույն պարգևներ: Չընայած դրան, Եվրոպան, այնուամենայնիվ, կարողացավ ըստ արժանվույն գնահատել սովետական մարզիկի նվաճումները, նրան կոչելով հողագնդի ուժեղագույն մարդ: Այսպիսով, մարզաշխարհն ի վերջո ընդունեց սովետական ծանրորդների նվաճումները:

Սերգո Համբարձումյանի և Ռուբեն Մանուկյանի արժանավոր ժառանգորդը դարձավ ալավերդցի Իվան Ազդարովը— առաջինը սովետական ծանրորդներից, որ 1947 թվականին նվաճեց թեթևագույն քաշային կարգի Եվրոպայի չեմպիոնի տիտղոսը:

Եվ ահա հանրապետությունում ծանրամարտի վերելքի մեկնարկը եղավ ՍՍՀՄ ժողովուրդների 6-րդ սպարտակիադան, որտեղից երկամարտի բրոնզե պարգևներով տուն վերադարձան Վարդան Միլիտոսյանն ու Գագիկ Հարությունյանը, իսկ առանձին վարժություններում արծաթե և բրոնզե մեդալներ նվաճեցին Հենրիկ Գրիգորյանը, Աշոտ Մելքոնյանը, Հրանտ Թորոսյանը և Ռոբերտ Հովհաննիսյանը: Մեդալների նման առատ հունձ երկաթախաղի հայ վարպետները չէին բերել ո՛չ միայն նախորդ որևէ առաջնությունից, այլև ամբողջ 28 տարվա բոլոր առաջնություններից՝ միասին վերցրած: Ինչ վերաբերում է ընդհանուր թիմային հաշվարկին, ապա մեր մարզիկները, առաջ անցնելով բազմաթիվ հանրապետություններից, գրավեցին պատվավոր 5-րդ տեղը: Սպարտակիադայում մեր հավաքականին բոլորից շատ հաշվարկային միավոր բերեց Յուրի Վարդանյանը՝ այդ օրերին նա հանդես էր եկել Մարսել քաղաքում անցկացված երիտասարդների աշխարհի առաջնությունում, և միջազգային կարգի սպորտի վարպետի արդյունքով նվաճեց աշխարհի ու Եվրոպայի չեմպիոնի տիտղոսը:

1976 թվականին Բեռլինում կայացած միջազգային խոշոր մրցաշարում Վարդան Միլիտոսյանը, առաջ անցնելով մրցակիցներից, նվաճեց կիսամիջին քաշային կարգի հաղթողի կոչումը, միաժամանակ սահմանելով հրում վարժության աշխարհի ռեկորդ: Դա տեղի ունեցավ տարեսկզբին, իսկ մի քանի ամիս անց, կրկին Բեռլինում, լենինականցի ծանրորդը, իրենից ետ թողնելով այնպիսի ահեղ մրցակիցների, ինչպիսիք էին 1975 թվականի աշխարհի չեմպիոն, ԳԴՀ-ի ներկայացուցիչ Պետեր Վենցելը և արծաթե մեդալակիր, բուլղարացի Յորդան Միտկովը, նվաճեց Եվրոպայի չեմպիոնի կոչումը, իր ելույթները կրկին զարդարելով աշխարհի ռեկորդով: Ահա հենց այդ հաջողությունն էլ նրա առջև բացեց մոնրեալյան օլիմպիադայի «դռները», որտեղ հայկական ծանրամարտի առաջին «ծիծեռնակը» արժանացավ արծաթե պարգևի...

Հայկական մարմնամարզության, բռնցքամարտի, հնգամարտի, ըմբշամարտի, ջրացատկի հաջողությունները վկայում են, որ դժվարը «դպրոց» ստեղծելն է, իսկ հաջողությունը երկար սպասեցնել չի տա: Հայկական ծանրամարտի նորօրյա «դպրոցի» հիմնադիրը հանդիսացավ Վարդան Միլիտոսյանը: Այդ նա էր, որ ընդօրինակելով աշխարհի ուժեղագույն ծանրորդների փորձը, առաջին անգամ մարզումային ծանրաբեռնվածությունը հասցրեց առավելագույնի:

Մինչև 1976 թվականի ավարտը հաշված օրեր էին մնացել, երբ Սվերդլովսկում անցկացված Սովետական Միության գավաթի խաղարկությունում և առանձին վարժությունների երկրի առաջնությունում մարզասերներին հաճելի անակնկալ մատուցեց երիտասարդների աշխարհի ու Եվրոպայի կրկնակի չեմպիոն և ռեկորդակիր Յուրի Վարդանյանը:

Նույն թվականին, լեհական Գդանսկ քաղաքում անցկացված երիտասարդների աշխարհի առաջնությունում նրա տարած համոզիչ հաղթանակից հետո, պարգևատրության ժամանակ, ծանրամարտի միջազգային ֆեդերացիայի պրեզիդենտ, ավստրիացի Գոտֆրիդ Շյոլդը, հանձնելով հատուկ մրցանակը, հույս հայտնեց, որ մեկ տարի հետո նրան արդեն կտեսնի մեծահասակների աշխարհի չեմպիոնի պատվո պատվանդանին: Բայց որ երիտասարդական տարիքին դեռևս հրաժեշտ չտված պիտի գրոհեր մեծահասակների համաշխարհային ռեկորդների վրա և իր կամքին ենթարկեր պոկում վարժության բարձրագույն նվաճումը, վեր էր երևակայությունից: Սվերդլովսկում Յուրին ուղղակի հոյակապ «մենահամերգ» տվեց՝ նվաճելով բոլոր ոսկե պարգևները:

Հետո միմյանց հաջորդեցին Ռոստովում անցկացված Սովետական Միության, Շտուտգարդում, Գեթիսբերգում ու Սալոնիկում անցկացված աշխարհի և Հավիրժովում ու Բելգրադում անցկացված Եվրոպայի առաջնությունները: Այսօր, իհարկե, ավելորդ է վերստին անդրադառնալ ուժի ու գեղեցկության այդ անկրկնելի տոնահանդեսների մանրամասներին: Ասեմ միայն, որ իբրև այդ բոլոր առաջնությունների մասնակից-մրցավար և ժյուրիի անդամ, միշտ էլ զգացել եմ այն արտակարգ սերն ու

համակրանքը, որ տածել են մարզասերները մեր մարզիկի նկատմամբ: Այդ անսովոր, երեք տարվա անընդմեջ ռեկորդների շնորհիվ Յուրի Վարդանյանը ճանաչվեց աշխարհի լավագույն ծանրորդը:

Կրկնակի ցնծություն պատճառեց Հավիրժովում անցկացված Եվրոպայի 37-րդ առաջնությունը, որտեղից հինգ ոսկե և մեկ արծաթե պարգևով տուն վերադարձան Յուրին ու Վարդանը: Դա 1978 թվականին էր:

Այն ժամանակ իր մասին խոսել տվեց նաև 17-ամյա Յուրի Սարգսյանը, հունական Սալոնիկ քաղաքում անցկացված երիտասարդների աշխարհի ու Եվրոպայի առաջնությունից նա տուն վերադարձավ արծաթե պարգևով: Սկըսում էր ստվարանալ հանրապետության ծանրամարտի բանակը, ընդգրկելով ոչ թե բուն մայրաքաղաքը, որտեղ, ցավոք, առայժմ չկա և ոչ մի համաշխարհային կարգի ծանրորդ, այլ շրջաններն ու գյուղերը:

Այս առումով հիշարժան էր 1979 թվականին Լենինականում անցկացված Սովետական Միության առաջնությունը, որտեղ չեմպիոնի կոչումները նվաճեցին թեթևագույն քաշային, արարատցի Սամվել Մուրադյանը և կիսաթեթև քաշային, հոկտեմբերյանցի Անդրանիկ Պապիկյանը. իսկ Էջմիածնի շրջանի Գեղակերտ գյուղի ներկայացուցիչ Յուրի Սարգսյանը, որ ամենաթեթևագույն քաշային կարգից անցել էր թեթևագույն քաշային կարգի, արժանացավ արծաթե պարգևի: Ահա հենց Սամվելն ու Յուրին էլ իրավունք նվաճեցին մասնակցելու Դեբրեցենում անցկացվող երիտասարդների աշխարհի առաջնությանը, որտեղ չեմպիոնի տիտղոսը նվաճեց Յուրին, իսկ Սամվելը միայն իր քաշով ետ մնալով նրանից, կանգնեց պատվո պատվանդանի երկրորդ աստիճանին:

Նախաօլիմպիական տարվա առաջին հատվածում մասնագետների վրա հիանալի տպավորություն թողեց նաև 1978 թվականի Սովետական Միության առաջնության բրոնզե մեդալակիր և երկրի գավաթակիր, երևանցի Ռոբերտ Հովհաննիսյանը, որը Լենինգրադում անցկացված «Բարեկամություն» գավաթի միջազգային ավանդական մրցաշարում, իրենից ետ թողնելով աշխարհի բազմաթիվ ուժեղագույն ծանրորդների, նվաճեց առաջին ծանր քաշային կարգի հաղթողի կոչումը, առաջին անգամ լրացնելով միջազգային կարգի սպորտի վարպետի նորման: Ցավոք, հետագայում Ռոբերտը չկարողացավ նույն ծանրաբեռնվածությամբ շարունակել մարզումները և մնաց հավաքականից դուրս...

1979 թվականին լրացավ ծանրամարտի Եվրոպական ֆեդերացիայի տասնամյակը, և տոնակատարության օրը ֆեդերացիայի պրեզիդենտ, լեհ Յանուշ Պշեդպելսկին իր ելույթում ջերմորեն արտահայտվեց նաև Հայաստանի ծանրորդների մասին, նշելով, որ երկաթախաղի հայ վարպետները վերջին չորս տարում զգալի ավանդ են ներդրել համաշխարհային ծանրամարտի զարգացման գործում, հույս հայտնեց, որ շատ մոտ ժամանակում Վարդան Միլիտոսյանի և Յուրի Վարդանյանի կողքին կտեսնի նոր, առաջին մեծության աստղերի:

ՍՍՀՄ ժողովուրդների VII սպարտակիադայում նոր աստղեր երևան չեկան, սակայն Յուրի Վարդանյանի սահմանած համաշխարհային հինգ ռեկորդները և երկու ոսկե մեդալները, Վարդան Միլիտոսյանի և Սամվել Մուրադյանի արծաթե պարգևներն ու հանրապետության հավաքականի մյուս անդամների համանման ելույթները հնարավորություն ընձեռեցին թիմային հաշվարկում առաջին անգամ գրավելու երկրորդ տեղը, իրենից առաջ թողնելով միայն Ռուսաստանյան Ֆեդերացիայի հավաքականին: Այս անգամ արդեն մասնագետներն ու մարզական լրագրողները գտնում էին, որ լենինգրադյան ստուգատեսում Հայաստանը բոլոր հնարավորություններն ուներ նվաճելու հաղթողի կոչումը, եթե Վարդան Միլիտոսյանը չսայթաքեր պոկում վարժությունում, իսկ Յուրի Սարգսյանը անսպասելիորեն չհայտնվեր 7-րդ հորիզոնականում...

Ամենքին քաջ հայտնի է, որ և ոչ մի բնագավառում չկա այնպիսի պատրաստի դեղատոմս, որով, ասենք, չեմպիոն պատրաստեն: Գեղակերտ գյուղի խղճուկ մարզադահլիճում մարզումներ է անցկացնում Ֆելիքս Ալիևը: Երիտասարդ, իր գործին նվիրված մարզիչը կարողացավ ոչնչից ստեղծել ծանրամարտի դպրոց, որտեղ մարզվել են ցանկանում գյուղի բոլոր պատանիները, թեև նույն շենքի մյուս երկու սենյակներում, որոնք ավելի հրապուրիչ տեսք ունեն, տեղադրված են ըմբշամարտի գորգն ու հեծանվային սպորտի հարմարանքները: Ցավոք, որոշ շրջաններում հաշվի են առնվում ոչ թե մարզիկների հետաքրքրասիրությունները, այլ մարզիչների ու տեղական մարզական ղեկավարության նախասիրությունները: Գեղակերտի ծանրամարտի դահլիճում, նույնիսկ ամենաբծախնդիր տնտեսվարի հայեցակետով պիտանի ոչ մի գույք չկա: Հոկտեմբերյանում ծանրամարտ են պարապում դպրոցի միջանցքում: Սակայն այդ դպրոցի սաներից է միջազգային կարգի սպորտի վարպետ, Սովետական Միության չեմպիոն, երիտասարդների աշխարհի անցյալ տարվա առաջնության արծաթե մեդալակիր և աշխարհի ռեկորդակիր Անդրանիկ Պապիկյանը...

Ժամանակն է, որ գյուղական կամավոր մարզական ընկերության շրջանային խորհուրդների ղեկավարները, որոնք մեծ մասամբ ըմբշամարտի մասնագետներ են, ողջ ուշադրությունը չբևեռեն միայն ըմբշամարտի վրա: Չէ՛ որ թեկուզ անցած տասնամյակն ապացուցեց, որ շրջաններում ու գյուղերում ավելի շատ բարձր կարգի ծանրորդներ են պատրաստվել, քան ասենք ըմբիշներ և կամ... հեծանվորդներ:

Ժամանակակից սպորտի բուռն վերելքը պետք է որ «Սևան» գյուղական կամավոր մարզական ընկերության ղեկավարներին մղի արագ կողմնորոշվելու մարզաձևերի ընտրության և մասսայականության խնդրում և լուրջ ուշադրություն նվիրի ծանրամարտի զարգացմանը շրջաններում ու գյուղերում:

Երևանում վաղուց գործում են սպորտային մարմնամարզության, բռնցքամարտի, ժամանակակից հնգամարտի, ըմբշամարտի, ֆուտբոլի մասնագիտացված մարզադպրոցներ: Իսկ ծանրամարտը... Ցավոք, տասը տարուց ավելի է, ինչ առաջ է քաշվում ծանրամարտի մասնագիտացված մարզադպրոց ստեղծելու հարցը, սակայն մինչև օրս այն դրականորեն չի լուծվել: Այսօր, ինչպես երբեք, հրատապ է դարձել նման դպրոցի ստեղծման հարցը: Ճիշտ է, Երևանում կան հարմարավետ մարզադահլիճներ (խոսքը վերաբերում է «Աշխատանք» կամավոր մարզական ընկերությանն ու մարզական թեքումով № 10 գիշերօթիկ դպրոցին), բայց ինչ վերաբերում է ընդհանրապես հանրապետությունում ծանրամարտի մասսայականացմանը, ապա այն այնքան էլ ուղիղ համեմատական չէ վարպետությանը: Ճիշտ է, 1979 թվականի տվյալներով՝ հանրապետությունում գործող 209 խմբերում ընդգրկված են 5552 մարզիկներ, որոնցից 2126-ը դպրոցականներ են, 2710-ը՝ կարգայիններ, իսկ 84-ը՝ սպորտի վարպետներ և միջազգային կարգի սպորտի վարպետներ: Հարկ է նշել, որ Լենինականն էլ առայժմ չի կարող հպարտանալ հարմարավետ ու ընդարձակ մարզադահլիճներով, իսկ տեղական կազմակերպությունները պետք է հաշվի առնեն մի շատ կարևոր հանգամանք: Այսօր, երբ համաշխարհային ծանրամարտի քարտեզի վրա իր ինքնուրույն տեղն է գրավել հանրապետության 2-րդ քաղաքը, անհրաժեշտ է Լենինականին տալ ծանրամարտի թեքում, ստեղծել այստեղ հարմարավետ մարզադահլիճներ, մասնագիտացված մարզադպրոց:

Այժմ մի քանի խոսք XXII օլիմպիադայի մասին: Ամենքին հայտնի է, որ ԱՄՆ-ի նախկին պրեզիդենտ Քարտերը և նրա վարչակազմը խայտառակ կամպանիա ձեռնարկեցին, ցանկանալով տապալել մոսկովյան օլիմպիադան: Ցավով նշում ենք, որ ամերիկյան բոյկոտի զոհ դարձան միայն քաղաքականության հետ ոչ մի կապ չունեցող ԱՄՆ-ի, Կանադայի, ԳՖՀ-ի, Ճապոնիայի և այլ մարզական երկրների լավագույն մարզիկ-մարզուհիները, որոնք ամբողջ չորս տարի հուզմունքով սպասել էին 1980-ի հուլիսի 19-ին: Օլիմպիադան տեղի ունեցավ Մոսկվայում և գերազանցեց բոլոր սպասելիքները: Նմանը չունեցող գերժամանակակից մարզադահլիճներ, մարզական համալիրներ, խաղաղության, բարեկամության, մարդասիրության ջերմ մթնոլորտ...

Իմ կարծիքով, օլիմպիադան յուրօրինակ ջերմաչափ է, որով յուրաքանչյուրն ստուգում է իր երկրի սպորտի առողջական վիճակը: Այս առումով գերազանց առողջություն դրսևորեցին հատկապես սոցիալիստական երկրները, որոնց պատվիրակները, ինչպես և չորս տարի առաջ, նվաճեցին խաղարկված պարգևների առյուծի բաժինը: Սովետական Միության և Գերմանական Դեմոկրատական Հանրապետության պատվիրակները համապատասխանաբար նվաճեցին 80 ոսկե, 69 արծաթե և 46 բրոնզե, 47 ոսկե, 37 արծաթե և 42 բրոնզե մեդալներ: 16-օրյա լարված և անզիջում մարզամարտի արդյունքն էին հազարից ավելի ազգային ռեկորդները, այդ թվում՝ 36 աշխարհի, 74 օլիմպիական, 39 եվրոպական... Այդ 36 համաշխարհայինից 6-ի ռեկորդակիրները մեր հանրապետության պատվիրակներն էին, սպորտի վաստակավոր վարպետ Յուրի Վարդանյանը և միջազգային կարգի սպորտի վարպետ Յուրի Սարգսյանը: Վերջինիս ազգանունը մեծ սպորտում առաջին անգամ հնչեց 1979 թվականին մեծահասակների աշխարհի առաջնության նախօրյակին: Հոկտեմբերյանում անցկացված «Սևան» գյուղական կամավոր մարզական ընկերության կենտրոնական խորհրդի առաջնությունում Սարգսյանը սահմանեց հրում վարժության և երկամարտի մեծահասակների աշխարհի ռեկորդներ:

Ճատերը փորձեցին նվաճել հաղթության նրա դափնին, սակայն ապարդյուն: Եվ ահա, Հոկտեմբերյանում, Էջմիածնի շրջանի Գեղակերտ գյուղի 19-ամյա բնակիչը ամբողջ 1,5 կիլոգրամով ավելացրեց այս քաշային կարգի համար սահմանված բարձրագույն աստիճանը:

Ինչ վերաբերում է երկամարտին, ապա այստեղ սովետական թեթևագույն քաշայիններից և ոչ մեկին չէր հաջողվել դառնալ աշխարհի ռեկորդակիր. առաջինը Յուրին էր, որ 2,5 կիլոգրամով բարելավեց օլիմպիական խաղերի կրկնակի չեմպիոն, Բուլղարիայի Ժողովրդական Հանրապետության սոցիալիստական աշխատանքի հերոս Նորայր Նուրիկյանի նախկին ռեկորդը:

Այնուհետև Յուրի Սարգսյանը գերազանց հանդես եկավ Սովետական Միության գավաթի խաղարկությունում, որտեղ նվաճեց պատ-

վավոր մրցանակը, իսկ առանձին վարժությունների երկրի առաջնությունում արժանացավ ոսկե և արծաթե մեդալների: Հանրապետության վաստակավոր մարզիչ Ֆելիքս Ալինի սանը հատկապես գերազանց հանդես եկավ 1980 թվականի գարնանը մերձմոսկովյան Պոդոլսկ քաղաքում անցկացված համամիութենական ընտրական մրցաշարում, որտեղ 4 անգամ փոփոխություն մտցրեց հրում վարժության (155 կգ) և երկամարտի (270 կգ) համաշխարհային ռեկորդների աղյուսակում՝ դրանով իսկ իրավունք նվաճելով մասնակցելու Բելգրադում կայանալիք Եվրոպայի 39-րդ առաջնությանը:

Հիշենք, սակայն, որ այն ժամանակ ցավալիորեն վրիպեցին երկրի հավաքականի մարզիչները, որոշելով Յուրիին հանդես բերել ոչ թե իր՝ 56, այլ 60 կգ քաշային կարգում: Թե նման «կլիմայափոխությունը» ինչ ճակատագրական նշանակություն ունեցավ Յուրիի և ընդհանրապես երկրի հավաքականի համար, պարզ դարձավ միայն օլիմպիական Մոսկվայում, որտեղ նրան բաժին ընկավ արծաթե մեդալը: Առաջնության դափնին հասավ կուբացի Դանիել Նունյեսին: Չնայած Յուրիի պարտությանը, մարզական լրագրողները գովեստով խոսեցին նրա մասին, երբ նա գլխավերևում պահեց այս քաշային կարգի համար 157,5 կիլոգրամանոց ծանրությունը, որն ամբողջ 2,5 կիլոգրամով ավելի էր իր իսկ սահմանած նախկին ռեկորդից: Դրանով իսկ 19-ամյա մարզիկն ապացուցեց, որ ինքն արժանի է կրելու երկրի հավաքականի մարզազգեստը, քանի որ ամենավճռական պահերին կարողանում է «լուծել» մրցակիցներին առաջադրված ամենաբարդ խնդիրները:

Մարզական լրագրողներն այնքան շատ բան են գրել աշխարհի եռակի չեմպիոն Յուրի Վարդանյանի մասին, որ թվում է դժվար է նոր խոսք ասել: «Մարդ, որն առաջ է անցնում ժամանակից», «Ռեկորդներ, որ ցնցեցին աշխարհը», «Դարի ռեկորդը»... Այսպես կարելի է անվերջ թվարկել այն էպիտետները, որ օլիմպիադայից հետո տվեցին հանրապետության Գերագույն սովետի դեպուտատ Յուրի Վարդանյանին: «Համաշխարհային ծանրամարտի ապարանջանի ամենաթանկագին ալմաստ» կոչեց նրան ծանրամարտի միջազգային ֆեդերացիայի պրեզիդենտ, ավստրիացի Գոտֆրիդ Շյոդլը:

Դժվար է հավատալ, որ 1973 թվականից մինչև 1977 թվականի մարտ ամիսը միջին քաշային կարգի համաշխարհային ռեկորդների աղյուսակում տեղի էր ունեցել ընդամենը 20 շտկում, իսկ 1977 թվականի գարնանն անցկացված «Բարեկամություն» գավաթի միջազգային մրցաշարից մինչև այսօր նույնքան շտկում՝ միայն Յուրի Վարդանյանի կողմից, երեք տարում երկամարտի համաշխարհային ռեկորդը՝ 367,5 կիլոգրամից հասցնելով 400-ի: Մինչդեռ 1968—76 թվականներին երկամարտի բարձրագույն նվաճումը բարելավվել է ընդամենը 12,5 կիլոգրամով: Իրոք, աներևակայելի է մարզական այն սխրանքը, որ գործեց Յուրին 1980 թվականի հունիսի 26-ին, Մոսկվայի «Իզմայլովո» սպորտի պալատում: Անշուշտ ժամանակի ընթացքում ի հայտ կգան մարզական նոր «աստղեր», որոնք կբարելավեն պոկում (177,5) կամ հրում վարժության (222,5) աշխարհի ռեկորդները, սակայն գալիք երկու տասնամյակում դժվար թե հաջողվի գերազանցել երկամարտի այս ռեկորդը: Ռեկորդ, որը բոլոր ականատեսներին հիացրեց ճիշտ այնպես, ինչպես ամերիկացի հեռացատկորդ Բոբի Բիմոնի «լուսնային ցատկը»...

Հանձինս աշխարհի քառակի չեմպիոն Յուրի Վարդանյանի (նա 4-րդ անգամ այդ տիտղոսին արժանացավ օլիմպիական Մոսկվայում, միաժամանակ նվաճելով «Ոսկե կիլոգրամներ» անվանումը կրող հատուկ մրցանակը, որը տրվում է այն մարզիկին, ով անձնական քաշի համեմատությամբ ավելի շատ կիլոգրամներ է բարձրացնում), XXII օլիմպիական խաղերի ու Եվրոպայի առաջնության արծաթե մեդալակիր Յուրի Սարգսյանի, 1980 թ. երիտասարդների աշխարհի առաջնության արծաթե մեդալակիրներ՝ Օգսեն Միրզոյանի, Անդրանիկ Պապիկյանի (նրանք միաժամանակ կրում են մեծահասակների Սովետական Միության չեմպիոնի կոչումը) և այլ շնորհալի երիտասարդների, ուրվագծվում է երկաթախաղի մեր ապագան:

Հանրապետությունում ծանրամարտի մեծ բեկման համար էական նշանակություն ունեցավ 1974 թվականին Երևանում անցկացված «Բարեկամություն» գավաթի միջազգային ավանդական մրցաշարը, որտեղ սահմանվեցին մեկ տասնյակից ավելի համաշխարհային և բազմաթիվ ազգային ռեկորդներ: Մեր մարզիչները և մարզիկները սեփական հարկի տակ տեսան աշխարհի ուժեղագույն ծանրորդների մարզումներն ու ելույթները, նրանք վերանայեցին իրենց հայացքները ժամանակակից ծանրամարտի նկատմամբ, և սկսվեց նախանձելի գրոհ, որը հանրապետությանը բերեց 38 համաշխարհային և 6 օլիմպիական ռեկորդ, երիտասարդների և մեծահասակների աշխարհի ու Եվրոպայի առաջնությունների մոտ 40 ոսկե, 30 արծաթե և 1 բրոնզե, ինչպես և օլիմպիական խաղերի 1 ոսկե և 2 արծաթե դափնի: Դրանում մեծ է ՍՍՀՄ վաստակավոր մարզիչների՝ Սարգիս Վարդանյանի և Հակոբ Ֆարաջյանի, հանրապետության վաստակավոր մարզիչներ Սպարտակ Հարությունյանի, Արսեն Գալոյանի, Ռաֆայել Հարությունյանի, Ավետիք Դանիելյանի, Ֆելիքս Ալինի, Երվանդ Ջեյրանյանի, երիտասարդ մարզիչ Աշոտ Վիլայանի և շատ-շատերի ավանդը:

Ուրախալի մի նորություն. բոլորովին վերջերս Նովոսիբիրսկի «Սիբիր» մարզապալատում տեղի ունեցավ ծանրամարտի ՍՍՀՄ 56-րդ առաջնությունը: Այստեղ իրենց ուժերն էին չափում միութենական հանրապետությունների, ինչպես նաև Մոսկվա ու Լենինգրադ քաղաքների շուրջ 170 ծանրորդներ:

Ինչպես միշտ, այս անգամ ևս, որոտընդոստ ծափողջույններով դիմավորեցին լենինականցի դյուցազն Յուրի Վարդանյանին: 24-ամյա մարզիկը, որը հանդես եկավ մինչև 90 կգ քաշում, վստահորեն նվաճեց երկրի չեմպիոնի կոչումը և սահմանեց համաշխարհային երեք նոր ռեկորդ:

Մոսկովյան օլիմպիադայի օրերին ծանրամարտի միջազգային ֆեդերացիայի հերթական կոնգրեսում որոշվեց Երևանում անցկացնել 1983 թվականի աշխարհի և Եվրոպայի առաջնությունները: Հաշվի առնելով այն հանգամանքը, որ Հայաստանը ճանաչվել է որպես ծանրամարտի միջազգային կենտրոններից մեկը, եվրոպական ֆեդերացիայի գործկոմը ընթացիկ տարվա մարտին իր հերթական նիստն անցկացրեց Երևանում: Ֆեդերացիայի անդամները, որ ժամանել էին Լեհաստանից, Չեխոսլովակիայից, Մեծ Բրիտանիայից, Հունգարիայից, Ավստրիայից, Բուլղարիայից, լայնորեն քննարկեցին ծանրամարտի հետագա զարգացման առաջիկա մրցումների կազմակերպման հարցեր: Հյուրերը եղան հանրապետության տեսարժան վայրերում, ծանոթացան մարզահամերգային պալատի շինարարության ընթացքին, պալատ, որտեղ 1983 թվականին նախատեսված է անցկացնել աշխարհի և Եվրոպայի առաջնությունը:

Պետք է խոստովանել, որ հսկայածավալ աշխատանք է սպասվում մեզ: Հարկ կլինի կառուցել միջազգային ստանդարտին համապատասխան ծանրամարտի դահլիճ, որտեղ իրենց մարզումները կանցկացնեն առաջնության մասնակիցները, վերանորոգել եղածները, ձեռք բերել նոր մրցահարթակներ, ծանրաձողեր և այլ օժանդակ գործիքներ:

Հիրավի, մեր հանրապետությունը ֆիզիկական կուլտուրայի և սպորտի ասպարեզում վերջին տարիներին հասել է որոշակի հաջողությունների: Մոսկվայի օլիմպիական խաղերին մասնակցած մեր մարզիկներն իրենց ավանդը ներդրին երկրի հավաքական թիմի հաղթանակում: Սակայն, ինչպես նշվեց ՀԿԿ XXVII համագումարում, ֆիզկուլտուրայի ընդհանուր վիճակը, հատկապես աշխատավորների ու երիտասարդության մասսայական ընդգրկման առումով, մնում է անմխիթար: Մարդկանց մեծամասնության համար, ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXVI համագումարում, սպորտը դեռևս մնում է սոսկ հանդիսախաղ: Նման վիճակը պետք է շտկել: Ֆիզիկական կուլտուրան պետք է մարմնավորվի բնակչության լայն խավերի և հատկապես երեխաների առօրյա կյանքում:



## Ինչ կարդալ

**Коммунистическая партия Советского Союза.** Наглядное пособие по партийному строительству. Издательство «Плакат», Москва, 1980 г., 247 стр.

Դիտողական այս ձեռնարկը պարունակում է տեղեկատու հարուստ նյութեր Կուսակցական շինարարության դասընթացի բոլոր հիմնական հարցերի վերաբերյալ: Այդ նյութերը մատուցված են դիագրամների, սխեմաների և աղյուսակների ձևով, հարակցված մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատություններից, ՍՄԿԿ XXV համագումարի նյութերից, կուսակցության ծրագրից ու կանոնադրությունից և այլ փաստաթղթերից քաղված մեջբերումներով:

Ձեռնարկի առաջին բաժինը նվիրված է ՍՄԿԿ կազմակերպական կառուցվածքին, այն ներկայացված է ըստ կուսակցության համագումարների ու կոնֆերանսների կողմից ընդունված որոշումների, ցուցադրված է ՍՄԿԿ կենտրոնական և տեղական մարմինների կառուցվածքը ըստ կուսակցության առանձին համագումարների: Մյուս բաժիններում զետեղված են նյութեր դեմոկրատական ցենտրալիզմի, ՍՄԿԿ անդամության, սկզբնական կազմակերպությունների, կուսակցության գաղափարախոսական աշխատանքի վերաբերյալ, արտացոլված է ՍՄԿԿ-ի դերը՝ որպես սովետական հասարակության միջուկի և միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման բաղկացուցիչ մասի:

Գիրքը նախատեսված է կուսակցական ու-

սուցման ցանցի ունկնդիրների և պրոպագանդիստների, կուսակցական աշխատողների լայն ակտիվի համար:

**Коммунистическая партия Армении в цифрах и документах. 1920 — 1980.** Издательство «Айастан», Ереван, 1980 г. Редакционная коллегия (руководитель Арзуманян М. Б.), 332 стр.

Վերջերս լրացավ ՍՄԿԿ մարտական ջոկատներից մեկի՝ Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորման 60-ամյակը:

ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական մասնաճյուղի կազմած վիճակագրական ու փաստաթղթային նյութերի այս ժողովածուն տալիս է Հայաստանի կոմկուսի կազմի և նրա շարքերի աճի առավել լրիվ ու համակողմանի պատկերը՝ սկսած կուսակցության կազմավորումից մինչև մեր օրերը:

Ժողովածուն բաղկացած է երկու մասից: Առաջինում զետեղված վիճակագրական աղյուսակները, փաստաթղթային նյութերը և դրանց համառոտ մեկնաբանությունները պատկերում են անցած 60 տարում Հայաստանի կոմկուսի քանակական աճը, նրա զարգացման պրոցեսը: Երկրորդ մասում հրապարակված են կուսակցության համագումարների, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումների ու բյուրոների այն փաստաթղթերը, որոնք վերաբերում են կուսակցության աճի ու կազմի կարգավորման հարցերին:

Ժողովածուում լայնորեն օգտագործված են ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր ՄԼԻ-ի հայկական մասնաճյուղի կուսարխիվի ֆոնդերը, ինչպես և ՀԿԿ Կենտկոմի ընթացիկ արխիվը:

Գիրքը նախատեսված է կուսակցական ու սովետական ակտիվի, գիտաշխատողների և պրոպագանդիստների համար:

**«Справочник пропагандиста».** Издательство политической литературы. Авторский коллектив, Москва, 1980 г. 190 стр.

Ամենամյա այս տեղեկագրում լուսաբանված են սովետական ապրելակերպի պրոբլեմները, աշխատավորների կոմունիստական դաստիարակության պրակտիկայի հրատապ հարցերը. այն բովանդակում է թվական ու փաստական բազմապիսի նյութեր մեր երկրի հասումների վերաբերյալ:

Ընդարձակ է Ինֆորմացիա, թվեր, փաստեր բաժինը, ուր հրապարակված են համառոտ հաղորդումներ ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների, կուսակցության ու կառավարության կարևորագույն որոշումների, ՏՓԽ-ի անդամ երկրների տնտեսական ինտեգրացման մասին: Հետաքրքրական նյութեր կան Երկրի աշխատանքային ժամը ենթաբաժնում: Վերջում ներկայացված են սովետական և միջազգային տոները, 1981 թվականի հիշարժան տարեթվերը:

Գիրքը նախատեսված է ագիտատորների ու պրոպագանդիստների, ընթերցող լայն հասարակայնության համար:

---


**ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ**

**ԱԴՈՅԱՆ Ա. Գ.** (գլխավոր խմբագիր), **ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ Մ. Բ., ԽՈՋԱԲԵԿՅԱՆ Վ. Ե., ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ռ. Բ.** (պատասխանատու քարտուղար), **ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ս. Կ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ս. Գ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԵԼԻՔՅԱՆ Մ. Ա., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Մ. Դ., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս.** (գլխավոր խմբագրի տեղակալ), **ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ.**

Վերստուգող սրբագրիչ՝ Մ. Բ. ՑԱՅԼՈՅԱՆ
Թողարկիչ՝ Մ. Պ. ԲՈՅՆԻԿՅԱՆ

Адрес редакции: 375033, Ереван-33, ул. Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ **375033, Երևան—33, Բարեկամության 59 գ:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*Հանձնված է շարվածքի՝ 14.5.81—25.5.81: Ստորագրված է տպագրության 2.6.81: ՎՖ 04586: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրությունը՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ.: 9,4 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 16132: Պատվեր 1120:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2:*

Типография издательства ЦК КП Армении, Ереван-23, пр. Орджоникидзе, 2.

Գինը՝ 20 կ.
Индекс 77783

ISSN 0130—8114

# Գիտության և տեխնիկայի նորություններ

## ԲԱՑԱՌԻԿ ՀՆԱՐԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ ՈՒՆԵՑՈՂ ՆՈՐ ՄԱՆՐԱԴԻՏԱԿ

*«Լիցենզինտորգ»-ը ներդրման է առաջարկում Սովետական Միությունում մըշակված նոր ունիվերսալ ռենտգենահեռացուցային չափիչ մանրադիտակը, որը հագեցված է էլեկտրոնային, օպտիկական և մեխանիկական հատուկ կոմպլեքսային սարքերով։ Այդ մանրադիտակն ընձեռում է բացառիկ հնարավորություններ ծավալների, հեռավորությունների, անկյունների չափումների և դետալների տարածական դիրքն ու անթափանց օբյեկտների մեջ դրանց տեղը մինչև 0,001 միլիմետր ճըշտությամբ որոշելու համար։*

*Մանրադիտակն օգնում է հետևելու անթափանց օբյեկտների ներքին կառուցվածքում կատարվող բոլոր պրոցեսներին։*

## ՈՒԼՏՐԱՁԱՅՆԸ ԿԱՌԱՎԱՐՈՒՄ Է ՀԵՌԱՑՈՒՅՑԸ

*Մինսկի «Հորիզոն» արտադրամիավորումը ՍՍՀՄ ԺՏՆՑ-ում ցուցադրել է տարածության վրա հեռացույցի անթել կառավարման սերիական սիստեմը։ Կառավարակետը նման է միկրոհաշվարկիչի։ Դրա վրա կան ութ կոճակներ՝ հրամանների թվին համեմատ։ Հեռացույցից մինչև վեց մետր հեռավորության վրա սեղմելով համապատասխան կոճակը՝ կարելի է միացնել ծրագիրը, փոխել պատկերի պայծառությունն ու կոնտրաստը, ինչպես և ձայնը։*

## ԷԼԵԿՏՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ՄԱՔՐՈՒՄ Է ՋՈՒՐԸ

*Տրանսպորտային տարբեր ձեռնարկություններում գոյանում են շատ նավթանյութեր պարունակող աղտաջրեր։ Նման ջրերի մաքրման առկա եղանակը չի ապահովում բավարար մակարդակ։*

*Խարկովի երկաթուղային տրանսպորտի ինժեներների ինստիտուտում հայտնագործվել է աղտաջրերի մաքրման էլեկտրակայծային եղանակ։ Նավթակորզումից հետո ջուրը լցվում է խառնիչը, ուր և մղվում է խտացրած օդը, որն ստեղծում է ջրի և սարքում գտնվող էլեկտրահաղորդիչ նյութի մասնիկների եռացող շերտ։ Քանի որ սարքի էլեկտրոդներին հաղորդվում է հոսանք, մասնիկների միջև առաջանում է էլեկտրական լիցքավորում։ Այդ լիցքերի և ջրում լուծված թթվածնի ազդեցությամբ տարբեր խառնուրդներ օքսիդանում և այրվում են։ Նման եղանակով մաքրված ջուրը կարելի է կրկին օգտագործել արտադրության մեջ։*

*Ինչպես ցույց է տալիս պրակտիկան, առաջարկված եղանակը հնարավորություն է ընձեռում 90—98 տոկոսով մաքրելու աղտաջրերը։*

## ՇԻՆԱՆՅՈՒԹ ԾԽԻՑ

*ԼԺՀ-ի Կրակովի վոյևվոդության Բելսկո-Բյալա «Պրեֆարետ» ձեռնարկությունն սկսել է շինարարական սալիկների փորձնական արտադրությունը, որի համար հիմնական նյութ են ծառայում օդի մաքրման սարքերում հակածխային ֆիլտրացումից մնացած մանր մասնիկները։ Ծխի այդ մասնիկներին խառնում են տասը տոկոս գիպս, կիր, ալյումինի փոշի, իսկ ավելացված փայտի թեփը բարձրացնում է նյութի ջերմա և ձայնամեկուսիչ հատկանիշները։ Նոր նյութը դիմանում է մեկ քառակուսի սանտիմետրին մինչև 110 կիլոգրամ հարվածող ծանրության։ Աղյուսի համեմատությամբ այն ավելի խոնավակայուն է և ամուր։ Այն կարելի է օգտագործել մայթերը ծածկելու նպատակով՝ համեմատաբար թանկ և ոչ ամուր ասֆալտի փոխարեն։*

## ՀԵՌԱՏԻՊԸ ՏՆՏԵՍՈՒՄ Է ԹՈՒՂԹԸ

*Այլ քաղաքներից հաղորդվող ինֆորմացիան՝ սովորաբար մեքենագրվում է ամբողջությամբ, որից հետո ընտրվում է անհրաժեշտ մասը։ «Սիմենս» ֆիրմայի «T—1000—C» մակնիշի հեռատիպը բանում է այլ կերպ։ Տեքստն սկզբում պատկերվում է դիսպլեյի էկրանի վրա։ Օպերատորը կարդում է և սպասում անհրաժեշտ տվյալներին։ Երբ սկսվում է դրանց հաղորդումը, նա սեղմում է կոճակը (եթե հետո զգացվում է նախկին ինֆորմացիայի կարիքը, այն հանվում է հիշողության բլոկից)։*

*Ինֆորմացիայի հաղորդման ժամանակ դիսպլեյի միջոցով նաև խմբագրվում է տեքստը։ Դրանում տեղադրված մինի-ԷՀՄ-ն հետևում է բոլոր գործողությունների միաժամանակությանը։ Նոր հեռատիպը բանում է անաղմուկ, տպագրում է արագ։*